ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ ● 1966

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

10 ՀՈԿՏԵՄԲԵՐ · 1966
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание







# ՔԱՂՈՒՍՈՒՑՈՒՄԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**Կ**ՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցության պատմական հաղթանակների կարևոր նախապայմաններից մեկը— նրա միլիոնավոր անդամների բարձր գաղափարայնությունն է, գաղափարական պինվածությունն ու քաղաքական կոփվածությունը:

Կոմունիստների քաղաքական ուսուցումը ինքնանպատակ չէ: Առաջնահերթ նշանակություն տալով այդ գործին, կուսակցությունը ելնում է կյանքի և կոմունիստական շինարարության կենսական պահանջներից: Քաղաքական կյանքի բարդ իրողության մեջ ճիշտ կողմնորոշվելու, անսասան գաղափարական համոզվածության համար կոմունիստի հոգեկան աշխարհը պետք է անդադար հարստանա, մշտապես սնվի մարքսիզմ-լենինիզմի կենարար ավիշով:

Վ. Ի. Լենինի աշխատությունները մարքսիզմ-լենինիզմի ոգով են դաստիարակել կոմունիստների մի քանի սերունդներ մեր երկրում և նրա սահմաններից դուրս: Դրանք հիմա էլ սիրելի դասագրքեր են, քաղաքական գիտելիքների անգնահատելի հանրագիտարան— յուրաքանչյուր կոմունիստի ու կոմերիտականի, բոլոր աշխատավորների համար:

Կուսակցության XXIII համագումարը կրկին անգամ բոլոր կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների քաղաքական ուսուցման կազմակերպման հարցերի վրա:

Անցյալ ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմում ներգրավված էին 13 միլիոն 860 հազար կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ: Մեր հանրապետությունում ուսուցման սիստեմում ընդգրկված էին 115.600 հոգի, որոնցից 103 հազարը կոմունիստներ:

Ինչպես հայտնի է, անցած ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմը արմատականորեն վերակառուցվեց: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշմամբ սահմանվեց ուսուցման հաջորդականության միասնական կարգ, որը պայմաններ է ստեղծում կոմունիստների և ակտիվիստների համար՝ ստանալու սիստեմատիկ քաղաքական կրթություն, ուսուցման մեջ է մտցնում աստիճանական անցումների և հետևողականության սկզբունքը:

Անցյալ ուսումնական տարվա կարևոր առանձնահատկություններից մեկը լայն շրջադարձն էր դեպի աշխարհայացքային առարկաները: Բանն այն է, որ նախորդ մի քանի տարիների ընթացքում քաղաքական լուսավորության սիստեմում հիմնական ուշադրությունը նվիրվում էր կոնկրետ էկոնոմիկայի, գյուղական վայրերում՝ ագրոտեխնիկայի ու ագրոքիմիայի հիմունքների ուսումնասիրու-

թյանը:: Չթերագնահատելով կադրերի տնտեսագիտական գիտելիքների հարըստացման նշանակությունը, կուսակցության կենտրոնական կոմիտեն խնդիր դրեց կուսակցական ուսուցման սիստեմում առաջնակարգ նշանակություն տալ ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, գիտական կոմունիզմի հիմունքների ուսումնասիրությանը, միաժամանակ կազմակերպելով կոնկրետ էկոնոմիկայի պրոբլեմների ուսուցումը՝ հիմնականում կուսակցական ուսուցման սիստեմից դուրս օգտագործելով պրոպագանդիստական աշխատանքի բազմաթիվ ձևերն ու հարուստ հնարավորությունները:

Եթե նախորդ տարիներում կուսակցական լուսավորության սիստեմում ընդգրկվածների միայն մեկ երրորդն էր ուսումնասիրում աշխարհայացքային առարկաներ, ապա անցյալ ուսումնական տարում ներգրավվածների ճնշող մեծամասնությունը ուսումնասիրում էին ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության և կոմունիզմի հիմունքները: Սովետական Հայաստանում կուսակցական ուսուցման սիստեմում ընդգրկվածների ավելի քան 95 տոկոսը ուսումնասիրում էր աշխարհայացքային առարկաներ:

Այս շրջադարձը լիովին համապատասխանում է կուսակցական ուսուցման սիստեմին ներկայացվող պահանջներին: Կոմունիստների քաղաքական ուսուցման հիմնական նպատակն է կուսակցության յուրաքանչյուր անդամի իրոք դաստիարակել կոմունիստական համոզվածության, գաղափարական սկզբունքայնության, կուսակցական մարտնչողականության և բարձր ակտիվության բոլշևիկյան ոգով:

Անցյալ ուսումնական տարում, չնայած վերակառուցման հետ կապված էական դժվարություններին, հնարավոր եղավ զգալիորեն բարելավել կոմունիստների քաղաքական ուսուցման գործը: Փորձը ցույց տվեց, որ կուսակցական ուսուցման սիստեմի վերակառուցումը դարձել էր անհրաժեշտություն և կուսակցության Կենտրոնական կոմիտեի այդ ուղղությամբ ձեռնարկված միջոցառումները լիովին համապատասխանում էին կոմունիստների քաղաքական ուսուցման սիստեմին առաջադրվող պահանջներին:

Հոկտեմբերի 1-ից քաղաքում առաջին պարապմունքներն ունեցան քաղխմբակների ու սեմինարների ունկնդիրները: Հոկտեմբերի 15-ից գյուղական կոմունիստները կմասնակցեն առաջին պարապմունքին:

Վերանայվում են պրոպագանդիստական կադրերը, ուսուցման առանձին օղակներում ճշգրտվել է ունկնդիրների կազմը, որոշ տեղերում ստեղծվել են նոր խմբակներ, դպրոցներ, սեմինարներ: Ամենուրեք կրկին ու կրկին անգամ անդրադառնում են անցյալ ուսումնական տարվա փորձին, վերլուծում են կատարած աշխատանքները, հաջողությունների ու թերությունների պատճառները: Այդ բոլորը անհրաժեշտ է նոր ուսումնական տարին ավելի կազմակերպված սկսելու և ուսուցման գործում նկատված թերություններն ու սխալները կանխելու համար:

Նախորդ ուսումնական տարում ձեռք բերած որոշակի հաջողությունների հիմնական պատճառներից կարևորն այն է, որ ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ, կուսակցական կազմակերպությունները քաղաքական ուսուցման սիստեմի կոմպլեկտավորման ժամանակ ավելի լրիվ հաշվի առան կոմունիստների ցանկություններն ու պատրաստականության մակարդակը, ուժեղացրին վերահսկողությունը և պահանջկոտությունը ուսուցման սիստեմում ներգրավված կոմունիստների նկատմամբ:



Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ կուսակցական կազմակերպությունները պատշաճ նշանակություն են տալիս կոմունիստների քաղաքական ուսուցման կազմակերպմանը, հանդես են բերում անհրաժեշտ պատասխանատվություն և ձեռներեցություն, ճիշտ են ընտրում պրոպագանդիստական կադրերը, այդտեղ, որպես կանոն, պարապմունքներն անցնում են կոմունիստների բարձր ակտիվության պայմաններում, հետաքրքիր ու բովանդակալից:

Երևանի կարի № 1 ֆաբրիկայում գործում է տարրական տիպի քաղխմբակ, որի պրոպագանդիստն է ընկեր Վարդիթեր Դովլաթյանը: Այդ խմբակի լավ աշխատանքի մասին նշվել է խորհրդակցություններում, գրվել է մամուլում: Հիրավի, նշված վայրում պարապմունքները, որոնք հրավիրվում են նախատեսված օրերին ու ժամերին, անցնում են հետաքրքիր, ակտիվ քննարկման պայմաններում: Ունկնդիրները բարեխղճորեն նախապատրաստվում են դրանց, որոնց համար պարապմունքի գնալը դարձել է յուրատեսակ պահանջ, կենսական անհրաժեշտություն:

Բոլորովին չփորձելով թերագնահատել պրոպագանդիստի հիանալի կարողություններն ու հմտությունը, պետք է նշել, որ այդ, ինչպես նաև ֆաբրիկայում կազմակերպված մյուս խմբակների հաջողությունը հիմնականում պայմանավորված է սկզբնական կուսակցական կազմակերպության և նրա բյուրոյի՝ այդ գործի նկատմամբ ունեցած ամենօրյա ուշադրությամբ ու հոգատարությամբ:

Մի օրինակ ևս: Կիրովականում անցյալ ուսումնական տարում լավ գործեցին երկաթուղային հանգույցի կուսակցական կազմակերպությանը կից ստեղծված քաղխմբակներն ու քաղդպրոցները, մինչդեռ նույն բանն ասել չի կարելի, ասենք, քիմիական կոմբինատում գործող խմբակների ու քաղդպրոցների մասին: Եթե առաջինում պարապմունքները, որպես կանոն, անցնում էին ունկընդիրների բարձր ակտիվության պայմաններում, ապա կոմբինատում արձանագրվել են պարապմունքների ձախողման, մեծաթիվ բացակայությունների ոչ եզակի փաստեր: Պատճառն ինքնըստինքյան հասկանալի է: Տարբեր է կուսակցական կազմակերպությունների ու նրանց կոմիտեների վերաբերմունքը կոմունիստների քաղաքական ուսուցման կազմակերպման և ղեկավարման գործի նկատմամբ:

Կուսակցական ուսուցման սիստեմի արդյունավետության միակ ցուցանիշը պրոպագանդվող գիտելիքների ուսումնասիրության և յուրացման աստիճանն է:

Ստեղծելով ուսուցման լայն և կուռ սիստեմ, կուսակցությունը խնդիր է դրել քաղաքական կյանքի օրավուր աճող պահանջների մակարդակին բարձրացնել կոմունիստների գաղափարական պինդվածությունը, հասնել այն բանին, որպեսզի կուսակցության բոլոր անդամները կարողանան ոչ միայն ճիշտ կողմնորոշվել կոմունիստական շինարարության և միջազգային կյանքի բարդ հարցերում, այլև աշխատավորության շրջանում հաջողությամբ պրոպագանդեն կուսակցության և սովետական կառավարության քաղաքականությունը:

Անցյալ ուսումնական տարում կատարված աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ դժբախտաբար, հանրապետության ոչ բոլոր կուսակցական կազմակերպություններում է անհրաժեշտ նշանակություն տրվել պրոպագանդայի արդյունավետության և ներգործունության ապահովմանը. առանձին սկզբնական կուսկազմակերպություններում քաղաքական ուսուցումը դիտվում էր որպես աշխատանքի ինքնանպատակ բնագավառ, ուր գլխավորը պարապմունքների ժամանակին հրավիրումը և ունկնդիրների մասնակցության ապա-

հովումն է: Ավելորդ է նշել, որ նման մոտեցումը ոչինչ ընդհանուր չունի ներկայացվող պահանջների հետ և պետք է մերժվի: Հարկ է նշել, որ կուսակցության մի շարք քաղկոմներ և շրջկոմներ նույնպես երբեմն պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերում պարապմունքների որակի, գաղափարական բովանդակության հարցերում, քիչ են մտահոգվում կուսակցական ուսուցման սիստեմի անմիջական նպատակներով: Պատահում է և այսպես, որ երբ որևէ կազմակերպությունում այս կամ այն պատճառով ձախողվում է մեկ-երկու պարապմունք, շրջկոմը կամ քաղկոմը դա դիտում է որպես արտակարգ երևույթ, հարցը դարձնում է քննարկման առարկա, դիմում է ներգործության խիստ միջոցների, մինչդեռ նույն շրջկոմը կամ քաղկոմը լռությամբ անցնում է այն փաստի կողքով, երբ առանձին քաղխմբակներում պարապմունքները որպես կանոն անցնում են անհետաքրքիր, և համարյա ոչինչ չեն տալիս ունկնդիրներին:

Այստեղ պետք է նշել համարյա ընդհանուր բնույթ ստացած մի այլ թերության մասին ևս: Պրոպագանդիստների կգալի մասը, շատ սկզբնական կուսկազմակերպություններ անբավարար պահանջկոտություն են ցուցաբերում այն կոմունիստների նկատմամբ, ովքեր բարեխղճորեն չեն ուսումնասիրում ու մշակում հանձնարարված գրականությունը:

Խոսքը վերաբերում է առաջին հերթին ուսուցման սեմինարային ձևերում ընդգրկվածներին: Հիմնականում պահանջկոտության բացակայությամբ պետք է բացատրել այն, որ շատ սեմինարներ և նույնիսկ կուսակցական տնտեսական ակտիվի շրջանային դպրոցներ, փաստորեն վեր են ածվում սովորական լեկտորիումների, ուր կոմունիստները հանդես են գալիս լոկ ունկնդիրների դերում, մինչդեռ հայտնի է, որ կոմունիստների քաղաքական ուսուցման հիմնական մեթոդը գրքի վրա տարվող ինքնուրույն աշխատանքն է:

Սկզբնական կուսկազմակերպությունները, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են նոր ուսումնական տարվա շեմին հաշվի առնել անցյալ տարվա դասերը և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել առաջիկայում կոմունիստների քաղաքական ուսուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պահանջներին համապատասխան կազմակերպելու համար:

Ո՞րն է գլխավորը աշխատանքի այս կարևոր բնագավառում.

Գլխավորն է,— ասված է «Պրավդա» թերթի խմբագրական հոդվածում,— ամրապնդել կուսակցական ուսուցման նոր սիստեմը, նրա հնարավորությունները լիովին օգտագործել, որպեսզի բոլոր կոմունիստները խորապես տիրապետեն մարքս-լենինյան տեսությանը, սերտորեն առնչված արդիականության և կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ:

Մարքսիզմ-լենինիզմի ուսումնասիրությունը պետք է յուրաքանչյուր կոմունիստի մոտ պատվաստի ներքին պահանջ՝ ակտիվորեն պայքարել կուսակցության քաղաքականության իրականացման համար, անհաշտ կռիվ մղել այն բոլոր բացասական երևույթների դեմ, որոնք խանգարում են մեր ժողովրդի կոմունիստական առաջընթացին, հաստատակամորեն հանդես գալ նորի, առաջավորի պաշտպանությամբ: Քաղաքական ուսուցումը պետք է հանդիսանա կուսակցական սկզբունքայնության և ճշմարտացիության, բոլշևիկյան կամքի և հետևողականության դաստիարակչական միջոց, դպրոց, որտեղ կոմունիստները ստանալով անհրաժեշտ տեսական գիտելիքներ, բազմակողմանիորեն նախապատրաստվում են կոմունիստական շինարարության առաջամարտիկի պատվավոր, սակայն ոչ հեշտ պարտականությունների կատարմանը:



Մի շարք քաղդպրոցներ, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներ, սեմինարներ նախորդ ուսումնական տարում տարբեր պատճառներով չկարողացան ուսումնասիրել ծրագրով նախատեսված բոլոր թեմաները: Անհրաժեշտ է, որպեսզի նոր ուսումնական տարվա առաջին օրերից պրոպագանդիստները նախատեսեն բաց թողած թեմաների ուսուցումը, չվտանգելով ընթացիկ տարվա ուսումնական ծրագրի կատարումը:

Ինչպես հայտնի է, տարրական քաղդպրոցների ծրագրերը կազմված են ուսուցման երկու տարիների համար: Սակայն բացառված չէ, որ կուսակցական օրգանների որոշմամբ ուսուցման այս օղակում ուսման տևողությունը որոշ չափով երկարաձգվի: Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում ուսուցման տևողությունը մնում է չորս տարի: Կուսակցական-տնտեսական ակտիվի քաղաքային և շրջանային դպրոցներում ուսուցման ժամկետները դիֆերենցված են. բարձրագույն կրթություն ունեցող կոմունիստների համար նախատեսված է երկու, միջնակարգ կրթություն ունեցողների համար՝ չորս տարի:

ՍՄԿԿ Կենտկոմը, հաշվի առնելով անցյալ տարվա փորձը, ուսումնական ծրագրերում մի շարք փոփոխություններ է կատարել: Ընթացիկ տարում տարրական քաղդպրոցները կուսումնասիրեն երկու առարկա՝ քաղաքական գիտելիքների հիմունքները և Վ. Ի. Լենինի կենսագրությունը: Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում ուսումնական պլանով նախատեսված է ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության և մարքս-լենինյան փիլիսոփայության հաջորդական ուսումնասիրությունը: Փոխվում է ուսուցման այս օղակի ուսումնական պլանի ներքին կառուցվածքը. ավելանում են կուսակցության պատմության և քաղաքատնտեսության առարկաներին, ինչպես նաև պարապմունքների հերթական թեմաների շուրջ կրույցների համար հատկացվող ուսումնաժամերը:

Կուսակցական տնտեսական ակտիվի քաղաքային-շրջանային դպրոցներում ուսուցման պրոցեսի դիֆերենցման կապակցությամբ հաստատված է երկու ուսումնական պլան: Բարձրագույն կրթություն ունեցող կոմունիստների համար ստեղծված դպրոցները ղեկավարվելու են մարքսիզմ-լենինիզմի համալսարանների կուսակցական-տնտեսական ակտիվի ֆակուլտետների պլաններով ու ծրագրերով, միջնակարգ կրթություն ունեցողներով կոմպլեկտավորված դպրոցներ՝ ՍՄԿԿ Կենտկոմին կից հեռակա բարձրագույն կուսակցական դպրոցի պլաններով ու ծրագրերով:

Ուսումնական ծրագրերը թարգմանված և հրատարակված են առանձին բրոշյուրներով: Առաջիկայում պրոպագանդիստների և ունկնդիրների սեղանին կդրվեն տարրական քաղդպրոցների և մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դըպրոցների դասագրքերը՝ հայերեն:

Այս ուսումնական տարում ևս առանձին ուշադրություն է նվիրվելու բարձրագույն օղակի ինքնուրույն ուսուցման այնպիսի ձևերին, ինչպիսիք են տեսական, պրոբլեմային և մեթոդոլոգիական սեմինարները: Խնդիր է դրվում, որպեսզի առավել պատրաստված կոմունիստները ներգրավվեն կուսակցության պատմության, քաղաքատնտեսության, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման հարցերի ուսումնասիրության նպատակով ստեղծված սեմինարներում: Սեմինարները պետք է դառնան քաղաքական ինքնակրթության իսկական օջախներ, որոնցում ամրապնդվում, հարստանում են մարքսիզմի կլասիկների աշխատություններից ստացած գիտելիքները:

Կուսակցական կազմակերպությունների գործունեության կարևոր բնագավառներից է երիտասարդության քաղաքական-գաղափարական դաստիարակությունը: Կոմերիտական ակտիվիստները պետք է լայնորեն ներգրավվեն կուսակցական ուսուցման սիստեմում: Անհրաժեշտ է արմատապես բարելավել կոմերիտական ուսուցման սիստեմին ցույց տրվող օգնությունը և ղեկավարությունը:

Անցյալ տարվա փորձն ասում է այն մասին, որ մեր առանձին կուսակցական կազմակերպություններ հաճախ երիտասարդության քաղաքական ուսուցման կազմակերպումը համարում են միայն կոմերիտական կազմակերպությունների գործը, այդ հարցերով զբաղվում են հարևանցիորեն, ի միջի այլոց: Մինչդեռ հայտնի է, որ մեր կուսակցությունը իր կարևոր խնդիրներից մեկը միշտ էլ համարել է երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը:

Կոմունիստների և կոմերիտականների քաղաքական ուսուցման հաջողությունը հիմնականում պայմանավորված է պրոպագանդիստների ունակություններով և հմտությամբ: Մեր հանրապետությունում վերջին տարիներին աճել են պրոպագանդիստական հիանալի կադրեր: Դրանք հիմնականում ժողովրդական տնտեսության մասնագետներն են՝ ինժեներներ, տնտեսագետներ, գյուղատնտեսներ, կոոտեխնիկներ, ուսուցիչներ, բժիշկներ և այլն: Պրոպագանդիստական ակտիվ աշխատանք են տանում կուսակցական, սովետական շատ աշխատողներ, տնտեսության կազմակերպիչներ ու ղեկավարներ:

Պրոպագանդիստները կուսակցության ոսկե ֆոնդ են: Ընթացիկ ուսումնական տարում հին, փորձված պրոպագանդիստների կողքին մենք տեսնում ենք երիտասարդ մարդկանց, որոնք անհրաժեշտ գիտելիքներ ունենալով հանդերձ, կարիք են զգում ամենօրյա օգնության ու ուշադրության:

Անհրաժեշտ է ուսումնական տարվա հենց առաջին օրերից պլանավորված աշխատանք տանել պրոպագանդիստների հետ, տեսական ու մեթոդական օգնություն ցույց տալ նրանց, ամեն կերպ խրախուսել պրոպագանդիստի շնորհակալ և հայրենանվեր աշխատանքը: Պրոպագանդիստի բարձրացրած հարցերը, խնդրանքները և երաշխավորությունները պետք է արժանանան սկզբնական կուսկազմակերպությունների ու կուսակցական օրգանների ուշադրությանը, քննարկվեն ամենայն լրջությամբ ու օպերատիվ լուծում ստանան:

Սկսվեց նոր ուսումնական տարին կուսակցական ուսուցման սիստեմում:

Կուսակցական ուսուցման ուսումնական տարվա սկիզբը կարևոր իրադարձություն է կուսակցական կազմակերպությունների կյանքում: Առաջին օրերի կազմակերպական աշխատանքը շատ բանով կանխորոշելու է ուսումնական տարվա հաջողությունը:

Այժմ ամբողջ խնդիրն այն է, որպեսզի ըստ ամենայնի բարձրացվի կոմիտեների և սկզբնական կազմակերպությունների կողմից կոմունիստների քաղաքական ուսուցման ղեկավարման մակարդակը:





Ն. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ

# ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻՆ՝ ԼԱՅՆ ԼԻԱԶՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Ամեն անգամ, երբ մեր երկիրը թևակոխում է իր զարգացման մի նոր էտապ, կոմունիստական կուսակցությունը տեղական իշխանության մարմինների առջև դնում է նոր և ավելի բարդ խնդիրներ, որոնք նախատեսում են սովետների իրավունքների հետագա ընդլայնում, նրանց դերի ու պատասխանատվության բարձրացում տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման գործում:

Հայտնի է, որ մեր երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման տարիներին առաջ եկած ու զարգացող նոր արտադրահարաբերությունները կյանքի թելադրանքով հաճախ ընդունում էին հասարակական, կազմակերպական ու իրավական հաստատությունների տարբեր ձևեր: Մեծ տեղաշարժերի հետևանքով կուսակցությունը որոնում և կիրառում էր այնպիսի կազմակերպական ու տնտեսական եղանակներ-ձեռնարկումներ, որոնք կոչված էին դյուրացնելու սոցիալիստական արտադրահարաբերությունների արմատավորումը մեր կյանքի զանազան ոլորտներում:

Կոմունիստական շինարարության արդի էտապում սովետների դերի բարձրացման գաղափարը բխում է մեր երկրի կառավարման սիստեմում կուսակցության քաղաքականության ղեկավարման հիմնական սկզբունքից, այն սկզբունքից, որ սովետները, ինչպես ասված է ՍՄԿԿ ծրագրում, «հանդիսանում են ժողովրդի համապարփակ կազմակերպությունը, նրա միասնության մարմնավորումը»:

Այսպիսով, սովետները այն հիմնական օղակներն են, աշխատավոր զանգվածների այն կազմակերպությունները, որոնց միջոցով մեր կուսակցությունը, սովետական սահմանադրության շրջանակներում, իրականացնում է իր հիմնական գիծը, կենսագործում իր որոշումները: Հիրավի, դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը նշում էր, որ սովետները պետք է վերածվեն երկրի ամբողջ արտադրությունը կարգավորող օղակների: Դա մեկ անգամ ևս ընդգծվեց Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարում, որտեղ նշվեց, որ ներկայումս

«առանձնահատուկ նշանակություն է ստանում աշխատավորների դեպուտատների սովետների դերի բարձրացումը, որպեսզի նրանք լրիվ չափով օգտագործեն իրենց լիազորությունները տնտեսական ու կուլտուրական շինարարության խնդիրների իրականացման և կատարման ստուգման գործում, ավելի մեծ նախաձեռնություն ցուցաբերեն պլանային, ֆինանսական, հողային հարցերը լուծելու, տեղական արդյունաբերության ձեռնարկությունները, բնակչության կենցաղային ու սոցիալ-կուլտուրական սպասարկումը ղեկավարելու գործում»:

Մեր կուսակցությունը ղեկավարում է սովետների գործունեությունը, բայց չի փոխարինում նրանց, ինչպես այդ մի անգամ ևս ընդգծվեց Պոլտավայի մարզի տեղական սովետների աշխատանքի մասին Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի վերջերս ընդունած որոշման մեջ:

Եվ քանի որ սովետները հանդիսանում են ժողովրդի համապարփակ կազմակերպությունը, նրա միասնության մարմնավորումը, ապա մեր կուսակցությունն առաջնահերթ նշանակություն է տալիս սովետների իրավունքների հետագա ընդլայնմանը, սովետների գործունեությունը տանելով բոլոր աշխատավորներին պետության կառավարմանը մասնակից դարձնելու, սովետական դեմոկրատիայի սկզբունքներն առավել զարգացնելու ուղիով:

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) և հաջորդ պլենումների որոշումներից հետո մեր երկրում պետական իշխանության տեղական մարմինների առջև մեծ հնարավորություններ են բացվել էապես բարելավելու իրենց գործունեությունը, առավել լայն ծավալելու աշխատանքի այնպիսի դեմոկրատական ձևեր, ինչպիսիք են սովետների, նրանց գործադիր կոմիտեների և դեպուտատների հաշվետվությունները, պետական կառավարման, տնտեսական ու կուլտուրական շինարարության տեղական բոլոր կարևոր հարցերի հրապարակային քննարկումը:

Եվ իրոք, հենց մեր հանրապետության տեղական սովետների գործադիր կոմիտեները, նրանց բաժինները, վարչություններն ու սովետներին ենթակա տարբեր կազմակերպություններ ավելի հաճախ են իրենց աշխատանքի կարևոր հարցերը դնում քաղաքների ու գյուղերի բնակչության քննարկմանը: Ավելի պարբերական բնույթ են կրում գործկոմների, մշտական հանձնաժողովների հաշվետվությունները սովետների առջև: Դեպուտատների մեծամասնությունը սերտ կապ է հաստատել ընտրողների հետ և կազմակերպական նույնպես զգալի աշխատանք է տանում ընտրական օկրուգներում: Մշտական հանձնաժողովները ակտիվացրել են իրենց գործունեությունը և սկսել են ավելի հետևողականորեն իրականացնել վերահսկողության իրենց ֆունկցիան տնտեսական ու կուլտուրական շինարարության տեղական հարցերի լուծման գործում:

Այժմ ավելի, քան երբևէ ստեղծվել են այնպիսի պայմաններ, երբ բոլոր քաղաքացիները հնարավորություն ունեն ակտիվորեն մասնակցելու թե՛ պետական օրենքների ու կառավարման հարցերի քննարկմանը և թե՛ դրանց կենսագործմանը:

***

Կուսակցական և սովետական միասնական մարմինները վերականգնելուց հետո, ինչպես ամբողջ Միության, այնպես էլ մեր հանրապետության վարչա-



տերիտորիալ բաժանման մեջ պարզեցվեց շրջանացումը, վերացվեց էկոնոմիկայի ղեկավարման և բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման գերատեսչական անջատվածությունը: Դրա շնորհիվ զգալիորեն բարձրացել է շրջանային օղակների, այդ թվում նաև սովետների դերը, որոնք սկսել են ավելի մոտիկից զբաղվել տնտեսական կազմակերպությունների, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ղեկավարման հարցերով:

Այլ կերպ չէր էլ կարող լինել: Չէ՛ որ տեղական սովետները պետական իշխանության այնպիսի մարմիններ են, որոնց կազմում անմիջականորեն ընդգրկված են բանվորներն ու կոլտնտեսականները, ինժեներներն ու տեխնիկները, ձեռնարկությունների դիրեկտորներն ու գիտնականները, այսինքն՝ հենց այն մարդիկ, որոնք լավ գիտեն արտադրությունը, իրենց ձեռնարկությունների կարիքները և հնարավորությունները:

Սակայն պետք է ընդգծել, որ սովետների աշխատանքներում դեռ այսօր էլ կան լուծման կարոտ և հրատապ հարցեր, որոնց դրական վճռումով է պայմանավորված սովետների արգասաբեր գործունեությունը, մեր սահմանադրությամբ նրանց տրված համապատասխան իրավունքների լրիվ օգտագործումը՝ տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր տեղական հարցերը քննարկելու և լուծելու համար:

Վերցնենք, թեկուզ, այն հարցը, թե արդի պայմաններում շրջանային սովետը, նրա գործկոմը ինչպե՞ս պետք է ղեկավարեն գյուղատնտեսության բնագավառը, ինչպե՞ս պետք է իրագործեն պետական վերահսկողությունը դրա նկատմամբ: Արդյոք շրջանային սովետը պե՞տք է հանդես գա որպես բոլոր գործերը, այդ թվում նաև գյուղատնտեսությունը ղեկավարող միասնական մարմին, թե՞ միայն որպես խորհրդատու և աջակցող մարմին: Ավելի ճիշտ՝ ի՞նչ փոխհարաբերությունների մեջ պետք է լինի շրջանային սովետը գյուղատնտեսական արտադրական վարչության հետ: Խոսքն այստեղ այդ պրոբլեմի իրավա-պետական լուծման մասին է, այն մասին, որ սովետները ոչ միայն «սկզբունքով», այլև գործնականում կարողանան կատարել իրենց հիմնական ֆունկցիաները, իսկ դրա համար պետք է մշակվի ու կոնկրետացվի վարչա-իրավական հարաբերությունների այն բարդ սիստեմը, որը գոյություն ունի մասնավորապես տեղական սովետների շրջանային օղակում:

Ասենք ավելի պարզ. մեր զարգացման նոր շրջանի խնդիրների արագ և ճիշտ լուծմանը զգալիորեն խոչընդոտում է այն իրողությունը, որ առ այսօր իրավական որոշակի պարզություն չի մտցված տեղական սովետների և գյուղատնտեսական մարմինների փոխհարաբերությունների մեջ, հստակորեն չեն ճշտված նրանց անելիքների եզրերն ու սահմանները և չի վճռված այն պրոբլեմը, թե շրջանային օղակում ինչպե՞ս իրականացնել գյուղատնտեսության սովետական միասնական ղեկավարումը: Այդ հարցերի մասին ես առիթ եմ ունեցել արտահայտելու իմ կարծիքը («Իզվեստիա», 5 օգոստոսի 1965 թ.): Այստեղ ուզում եմ փոքր ինչ զարգացնել այն:

Երբ նայում ենք պրակտիկային, ապա պարզ երևում է, որ գյուղատնտեսական արտադրության կազմակերպման ու ղեկավարման գործով զբաղվում են իրարից գրեթե անկախ, ինքնուրույն գործող շրջանային մի քանի մարմիններ, որոնց գործունեությունը պետական կառավարման որևէ մարմնի կողմից չի կոորդինացվում: Մի կողմից, հանդես են գալիս շրջանային սովետ-

ների ու նրանց գործկոմները, որոնք գործող օրենսդրությամբ և մեր կուսակցության մի շարք որոշումների համաձայն, պարտավոր են ակտիվորեն մասնակցել գյուղատնտեսության զարգացման ընթացիկ ու հեռանկարային պլանները կազմելուն, խորամուխ լինել կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական-տնտեսական գործունեության մեջ, ապահովել հողային ու աշխատանքային ռեսուրսների ճիշտ օգտագործումը, կարգավորել հողօգտագործման և հողային հարաբերությունների հարցերը, ամրապնդել արտադրության ղեկավարման դեմոկրատական սկզբունքները և այլն, իսկ, մյուս կողմից՝ ինքնուրույն գործող գյուղատնտեսական արտադրական վարչությունները, որոնք նույնպես հանդես են գալիս համարյա այդ նույն պարտականություններով: Իսկ եթե դրան ավելացնենք նաև «Գյուղտնտեխնիկայի» շրջանային բաժանմունքները, որոնք զբաղվում են կոլտնտեսությունների ու սովխոզների նյութատեխնիկական մատակարարման, տեխնիկայի վերանորոգման և շահագործման կարևոր հարցերով և նույնպես գործում են ինքնուրույնաբար, ապա միանգամայն ակներև կդառնա գյուղատնտեսության միասնական ղեկավարման ոչ լիակատարությունը շրջանային օղակում:

Փաստորեն այժմ սովետները չունեն կազմակերպական պատշաճ հնարավորություններ, համապատասխան ապարատ և անհրաժեշտության դեպքում օրենքի ուժով պարտադրելու իրավունք, իսկ գյուղատնտեսական արտադրական վարչությունները և «Գյուղտնտեխնիկայի» շրջանային բաժանմունքները գործում են անջատ-անջատ, օժտված չեն պետական իշխանության մարմիններին վերապահված հատուկ իրավունքներով և, հետևաբար, նրանցից ո՛չ մեկը, ո՛չ էլ մյուսը ի վիճակի չէ լիարժեք կատարելու իր ֆունկցիաները:

Ահա նման պայմաններում կուսակցության շրջանային կոմիտեները որոշ դեպքերում իրենք են ստիպված լինում միջամտելու սովետական և տնտեսական մարմիններին վերաբերող հարցերի լուծմանը, այդպիսով իսկ տուրք տալով մանր խնամակալության հիվանդագին պրակտիկային՝ ավելորդ անգամ և անտեղի միջամտելով տնտեսավարման բոլոր մանրուքներին: Ահա թե ինչու որոշ տեղերում սովետական մարմինները հետզհետե դառնում են նվազ պատասխանատու իրենց գլխավոր ֆունկցիայի կատարման ոլորտում:

Մեզ թվում է, որ հասել է ժամանակը, երբ պետք է կա՛մ հստակ կերպով որոշել շրջանային սովետների՝ որպես իշխանության մարմինների, իրավունքներն ու ֆունկցիաները գյուղատնտեսության ղեկավարման գործում և վերանայել սովետների կանոնադրությունը, համապատասխան փոփոխություններ մտցնել մեր օրենսդրության մեջ, կա՛մ էլ շրջանային գյուղատնտեսական արտադրական վարչությունները և «Գյուղտնտեխնիկայի» բաժանմունքները ենթարկել շրջանային սովետներին և դրանով իսկ վերջիններիս իսկապես օժտել տնտեսական ու կուլտուրական շինարարության, ինչպես և վարչա-պետական բոլոր գործերը կուսակցական օրգանների ղեկավարությամբ վարելու իրավունքներով ու լիազորությամբ:

Մեր կարծիքով, միայն վերջին դեպքում տեղական սովետներն իրոք կդառնան շրջանային նշանակություն ունեցող բոլոր ձեռնարկությունները, կազմակերպությունները և հիմնարկները կառավարող միասնական դեմոկրատական մարմիններ, ինչպես այդ նշված է մեր կուսակցության ծրագրում:

Ես արդեն լսում եմ իմ ընդդիմախոսների ձայնը՝ թե գյուղատնտեսական արտադրական վարչությունները և «Գյուղտնտեխնիկայի» շրջանային բա-



ժանմունքները շրջանային սովետներին ենթակա դարձնելու դեպքում նրանք կունենան երկակի ենթակայություն և դա իբր կթուլացնի գյուղատնտեսական արտադրության կազմակերպման վրա նրանց ներգործության ուժը և կհանգեցնի վարչարարական գործելակերպի՝ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարման գործում:

Սակայն, հարցի էության մեջ խորամուխ լինելու դեպքում, դժվար չէ նկատել, որ նման առարկությունը բավարար հիմքեր չունի: Հիրավի, ինչպես հայտնի է, շրջսովետների գործկոմների հիմնական ճյուղային բաժինները (ֆինանսական, ժողովրդական կրթության, սոցիալական ապահովության և այլն), ինչպես նաև հանրապետական շատ մինիստրություններ ունեն երկակի ենթակայություն և, ինչպես ցույց է տալիս տարիների փորձը, հաջողությամբ կատարում են կուսակցության կողմից իրենց առաջադրված խնդիրները: Չէ՛ որ ժողովրդական տնտեսության ղեկավարումը կատարելագործելու վերաբերյալ մեր կուսակցության վերջին միջոցառումների կարևոր կողմերից մեկը հենց դեմոկրատական ցենտրալիզմի արտահայտությունը հանդիսացող երկակի ղեկավարության սկզբունքի ամրապնդումն է: Երկակի ղեկավարությունը ո՛չ թե կթուլացնի, այլ, ընդհակառակը, կամրապնդի շրջանային գյուղատնտեսական մարմինների գործունեությունը, որովհետև այդ դեպքում գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ նրանց առավել կարևոր ձեռնարկումներն ու միջոցառումները կամրապնդվեն պետական իշխանության շրջանային մարմնի որոշումներով, նրա հեղինակությամբ:

Իրականում արտադրական վարչությունները և «Գյուղտնտեխնիկայի» շրջանային բաժանմունքները հենց այժմ էլ լիակատար իրավունքներով օժտված չեն գյուղատնտեսության հետ սերտորեն կապված մթերող, մատակարարող, առևտրական, ֆինանսական կազմակերպությունների և գյուղատնտեսական մթերքներ վերամշակող արտադրական ձեռնարկությունների հետ առնչվող հարցերը լուծելիս և ստիպված հաճախ դիմում են պետական իշխանության մարմինների օգնությանը, կամ որոշ դեպքերում հարցերը լուծում են շրջանցելով այդ մարմիններին ու խախտելով գործող օրենքները:

Միաժամանակ այստեղ կարևոր է ընդգծել, որ կան իրավունքներ ու պարտականություններ, որոնք օրենքով լիովին վերապահված են տեղական սովետներին և չնայած դրանք որևէ սահմանափակման ենթակա չեն, բայց վատ են օգտագործվում մեր հանրապետության սովետների կողմից:

Միայն սրանով կարելի է բացատրել այն լուրջ թերությունները, որ կան Արտաշատի, Աշտարակի, Թալինի, Անիի, Իջևանի և մի շարք այլ շրջանների տեղական սովետների ու նրանց գործկոմների գործունեության մեջ՝ ջրի և հողի օգտագործման, ճանապարհաշինարարության, գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու մոլախոտերի դեմ մղվող պայքարի, ցանքերի պահպանության վերաբերյալ օրենքների կատարման գործում:

Դժբախտաբար հանրապետության մի շարք շրջաններում, որտեղ տեղական սովետների գործկոմները լիովին չեն օգտագործում իրենց տրված իրավունքները, նրանք հաշտվել են կոլտնտեսային կյանքի դեմոկրատական սկզբունքների խախտման շատ երևույթների հետ: Այսպես, օրինակ, Արտաշատի, Մարտունու, Հոկտեմբերյանի, Կամոյի շրջանների առանձին կոլտնտեսություններում արտադրական-ֆինանսական պլանները, աշխատանքի գնահատման նորմաները, վարչա-կառավարչական կազմի վարձատրությունը և կոլ-

տնտեսականների արմատական շահերը շոշափող ուրիշ շատ կարևոր հարցեր քննության չեն առնվել իրենց՝ կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում: Աբովյանի, Թալինի և այլ շրջանների մի շարք կոլտնտեսությունների վարչություններ իրենք են որոշել կոլտնտեսությունում նոր անդամներ ընդունելու, կամ կոլտնտեսությունից անդամներ հեռացնելու հարցերը, մինչդեռ դա կարող էր անել միայն կոլտնտեսականների ընդհանուր ժողովը: Արտաշատի շրջանի Աղամզալու գյուղի կոլտնտեսությունում, հակառակ գործող օրենքների, որոշում է ընդունվել աշխատանքից ազատել այն մեխանիզատորներին, որոնց կանայք չեն աշխատում կոլտնտեսությունում: Արթիկի շրջանի Հայրենյաց և Սևանի շրջանի Լճաշեն գյուղերի կոլտնտեսությունների վարչությունների որոշումների համաձայն, կոլտնտեսականները զրկվում են իրենց հասանելիք բերքի 25—30 տոկոսից, եթե նրանք պահեստից ժամանակին չեն ստանում այն և այլն:

Այս հարցերը վերջերս հանգամանորեն քննության առնվեցին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունում, որն իր ընդունած որոշմամբ պարտավորեցրեց տեղական սովետներին ու նրանց գործկոմներին՝ մշտապես հոգ տանել կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարման դեմոկրատական սկզբունքների պահպանման և հետագա զարգացման մասին, վճռականորեն պայքարել գյուղատնտեսական արտելի կանոնադրության և սովետական օրինականության խախտումների դեմ:

***

Գյուղական շրջանների տնտեսական ու կուլտուրական շինարարության բազմաբնույթ բնագավառը հաջողությամբ ղեկավարելու համար պետական իշխանության շրջանային մարմինները՝ սովետների գործադիր կոմիտեները, պետք է ունենան նաև համապատասխան բաժիններ: Անհրաժեշտ է վերականգնել այն բաժինները, որոնք մի ժամանակ անհիմն կերպով վերացվել են, իսկ այսօր կենսական նշանակություն ունեն մեր պետական իշխանության մարմինների արդյունավետ և լիիրավ գործունեության, տնտեսական ու կուլտուրական շինարարության տեղական բոլոր հարցերի քննարկման և լուծման համար:

Հանրահայտ է, որ շրջանը ոչ միայն սոսկ վարչական միավոր է, այլև տնտեսական միասնական օրգանիզմ, նյութական արտադրության և հոգևոր կյանքի տարբեր ոլորտների մի ներդաշնակ ամբողջություն: Հետևապես, այն պետք է ունենա իր զարգացման միասնական պլանը, որի մեջ ճիշտ կերպով զուգակցված լինեն շրջանի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման ցուցանիշները, նրանց ճյուղային համամասնությունները, աշխատանքային ռեսուրսների և բնական հարստությունների արդյունավետ օգտագործման հարցերը:

ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում որոշակիորեն նշված է, որ աշխատավորների դեպուտատների սովետները պետք է մեծ նախաձեռնություն ցուցաբերեն շրջանի էկոնոմիկայի զարգացումն ապահովելու, պլանային, ֆինանսական, հողային հարցերը լուծելու բնագավառում: Գործող օրենսդրության համաձայն նրանք են կոչված պլանավորելու շրջանի էկոնոմիկայի զարգացումը և ապահովելու այդ պլանների կատարումը: Իշխանության շրջանային մարմիններն են պարտավոր հոգ տանել, որպեսզի շրջանի տնտեսական ու



կուլտուրական կյանքի բոլոր բնագավառների համամասնական զարգացումը ամբողջացվի միասնական մեկ պլանի մեջ, որպեսզի այդ կոմպլեքսի բոլոր օղակներում ճիշտ կերպով զուգակցվեն ինչպես ամբողջ պետության, այնպես էլ շրջանի և յուրաքանչյուր տնտեսության շահերը:

Հարց է ծագում՝ մեր հանրապետության պետական իշխանության շրջանային մարմինները կարո՞ղ են արդյոք պատշաճ արդյունավետությամբ իրագործել իրենց տրված լիազորությունները, եթե չունեն պլանային բաժին: Չէ՞ որ էկոնոմիկայի նկատմամբ շրջանային սովետների պլանային ղեկավարման իրավունքը պլանների ձևական հաստատումը չէ, այլ մեր կուսակցության տնտեսական քաղաքականության անշեղ կենսագործման և սոցիալիստական տնտեսության պլանային-համամասնական զարգացման օրենքի պահանջները ճիշտ կատարելու ֆունկցիա: Իսկ կատարման անշեղությունը և ճշտությունը, հատկապես պլանային գործում ապահովելու համար անհրաժեշտ է ունենալ համապատասխան ապարատ:

Շրջսովետների գործկոմների պլանային հանձնաժողովները վերացնելուց ի վեր, հանրապետության մասշտաբով ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման միասնական սիստեմը փաստորեն խախտվել, անէացել է շրջանային օղակում: Շրջանային սովետներն ու նրանց գործկոմները, չունենալով պլանավորող ապարատ, համապատասխան մասնագետներ, գործնականում ի վիճակի չեն կոորդինացնելու տեղական տնտեսության տարբեր ճյուղերի զարգացման տարեկան և հեռանկարային պլանները, չեն կարող պատշաճ նախաձեռնություն ցուցաբերել գյուղատնտեսության պլանավորման հարցերը լուծելիս: Տարօրինակ է, բայց փաստ է, որ վերջին տարիներին իշխանության տեղական մարմինները երբեմն նույնիսկ չեն էլ հաստատում գյուղատնտեսության զարգացման պլանները: Դրա հետևանքով գյուղական ու շրջանային սովետները, որոնք գրեթե ամբողջապես կազմված են կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական կյանքը լավ գիտցող՝ գյուղատնտեսության բնագավառի աշխատողներից ու մասնագետներից, փաստորեն չեն կարողանում հարկ եղած ձևով իրականացնել իրենց իրավունքները և քննարկել ու որոշել, թե այդ պլաններում որչափ ճիշտ են հաշվի առնված յուրաքանչյուր տնտեսության առանձնահատկությունները, պայմաններն ու հնարավորությունները: Մինչդեռ դա, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, բացասաբար է անդրադառնում պլանավորման գործի որակի վրա:

Կասկածից վեր է, որ եթե իշխանության շրջանային մարմիններն ունենային համապատասխան պլանային բաժին, նրա միջոցով օգնություն ցույց տային կոլտնտեսություններին ու սովխոզներին պլանները մշակելու գործում, սովետները սեսիաներում ըստ էության քննեին ու հաստատեին այդ պլանները, ապա դրանք կլինեին ավելի հիմնավոր, ավելի կատարյալ ու լիարժեք և համեմատաբար ավելի քիչ թերություններ ու սխալներ կլինեին այդ պլաններում: Օրինակ, Կրասնոսելսկի շրջանի տնտեսություններում նախատեսված է 1970 թ. 1965 թ. համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացնել 25,4, կաթինը՝ 26,6, բրդինը՝ 24,5, մինչդեռ խոտի արտադրությունը պակաս է պլանավորված 9,4 հազար ցենտներով և սիլոսինը՝ 16,6 հազարով, այսինքն՝ խախտված է գյուղատնտեսության առանձին ճյուղերի պլանավորման համամասնությունը:

Այստեղ անհրաժեշտ է շեշտել, որ գյուղատնտեսության նկատմամբ իշ-

խանության տեղական մարմինների ղեկավարության նկատելի թուլացումն իր ժամանակին ամենից առաջ արտահայտվեց հենց պլանավորման գործում։ Եվ դա, հաճախ, արդարացնում էին նրանով, որ իբր տեղական սովետների ակտիվ մասնակցությունը գյուղատնտեսության պլանավորման հարցերին կարող է կաշկանդել կոլտնտեսությունների և սովխոզների նախաձեռնությունը, որոնց պատկանում է հանրային արտադրության պլանավորման գլխավոր դերը։ Անշուշտ, այստեղ ոչ միայն նախաձեռնությունը, այլև հիմնական ու վերջնական խոսքը պատկանում է հենց իրենց՝ տնտեսություններին։ Բայց դրանից հետևո՞ւմ է արդյոք, որ սովետները պետք է հրաժարվեն այդ գործում իրենց կազմակերպող և ուղղություն տվող դերից։ Չէ՛ որ ինչպես գյուղատնտեսության պլանավորման, այնպես էլ կոլտնտեսությունների ու սովխոզների գործունեության մյուս հարցերում հիմնական սկզբունքը մնում է պետական ղեկավարության զուգակցումը կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների նախաձեռնության և ինքնուրույնության զարգացման հետ։ Կյանքի փորձով իրեն արդարացրած այդ սկզբունքի հիման վրա պետական իշխանության շրջանային մարմինները գյուղատնտեսության զարգացման պլանները քննարկելիս և հաստատելիս պարտավոր են խորհուրդներ տալ կոլտնտեսություններին ու սովխոզներին վերանայելու և ուղղելու պլանային այն ցուցանիշները, որոնք տնտեսական ճիշտ հաշվարկումներով չեն հիմնավորված և չեն կարող նպաստել հողային ու աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը, այդ տնտեսությունների էկոնոմիկայի արագ զարգացմանը։

Այժմ, երբ ամենուրեք ժողովրդական տնտեսության մեջ ներդրվում են պլանավորման գիտականորեն հիմնավորված մեթոդներ, շրջանային սովետները չեն կարող դրանք արդյունավետ կերպով կիրառել առանց միասնական պլանավորումն ապահովող ապարատի։

Հայտնի է, որ Միության մյուս բոլոր հանրապետություններում «վերակառուցումների» ժամանակ շրջսովետների գործկոմների պլանային հանձնաժողովները հիմնականում չվերացվեցին, իսկ վերացվածներն էլ շուտով վերականգնվեցին։ Այդ տեսակետից մինչև այժմ բացառություն է կազմում միայն մեր հանրապետությունը։

Այսպիսով, արդեն խիստ հրատապ և առաջնահերթ խնդիր է դարձել մեր հանրապետությունում նույնպես շրջսովետների գործկոմներին ներքակա պլանային բաժիններ ստեղծելը։

Պլանային նոր մարմինները չպետք է նախկին պլանային հանձնաժողովների միօրինակ կրկնությունը լինեն։ Նոր պայմաններն ու խնդիրները պահանջում են, որ դրանք շրջաններում կոմպլեկտավորված լինեն էկոնոմիկայի գլխավոր ճյուղերի որակյալ մասնագետներով և շրջանի մասշտաբով մշակեն ու լուծեն այն խնդիրները, որոնք նրանց առջև դրված են մեր կուսակցության XXIII համագումարի որոշումներով և հնգամյա պլանի դիրեկտիվներով։

Այս առնչությամբ անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ մի ուշագրավ իրողության։ Սրանից դեռ երեք տարի առաջ մեր հանրապետության քաղաքային ու շրջանային կոմունալ էլեկտրացանցի սպասարկման ողջ տնտեսության վարումը տեղական սովետների գործկոմների ֆունկցիան էր։ Այդ ժամանակ նշված ցանցը շահութաբեր էր, որի մի մասը լրացնում էր տեղական բյուջեի եկամուտների բաժինը։ 1963 թվականից տեղական սովետների



տնօրինությունից հանվեց այդ ցանցը։ Սակայն վերջին տարիների պրակտիկան ցույց տվեց նման կենտրոնացման ոչ արդյունավետությունը։

Ուստի ՀՍՍՀ Մինիստրների սովետի որոշումը՝ այդ ցանցը կրկին սովետների գործկոմների իրավասությանը հանձնելու վերաբերյալ տեղին է ու ժամանակին։

Հիրավի, այժմ հասունացած հարց է տեղական սովետների գործկոմների լիակատար մասնակցությունը տեղական տնտեսական հարցերի գործնական լուծմանը։ Օրինակ, գազի շահագործման, ինչպես և տեղական նշանակություն ունեցող արտադրական և տրանսպորտային որոշ կազմակերպություններ ու ձեռնարկություններ կարելի է հանձնել տեղական սովետների տնօրինմանը՝ կրկնակի ենթակայության սկզբունքի պահպանմամբ։ Սրանով ոչ միայն տեղական բյուջեները աղբյուրներով կհարստանան, այլև տեղական սովետների գործկոմներն իրոք կզբաղվեն աշխատավորության կուլտուր-կենցաղային սպասարկման այնքան կարևոր հոգսերի լուծմամբ, հոգսեր, որոնք գնալով դառնում են բազմազան և պահանջում պետական վերաբերմունք քաղաքացիների կենսավիճակի նկատմամբ։

Ինչպես հայտնի է, հողային ֆոնդի ճիշտ օգտագործումը, հողերի շրայլման, էրոզիայի, ճահճակալման դեմ տարվող պայքարը, ինչպես նաև հողային հաշվեկշռի հաստատումը, հողային հարաբերությունների և հողաշինարարության հարցերը գտնվում են տեղական սովետների իրավասության ներքո։ Հասկանալի է, որ այդ հարցերը լուծելու համար իրենց խոսքը պետք է ասեն որակյալ մասնագետները։ Մինչդեռ շրջանային սովետների գործկոմներն իրենց հաստիքներում չունեն նույնիսկ շրջանային հողաշինարարներ։

***

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվները, որոնք ընդունվեցին ՍՄԿԿ XXIII համագումարում, բացում են մեր հանրապետության տնտեսական ու հոգևոր կյանքի հետագա զարգացման հոյակապ հեռանկարներ։

Նախատեսված ծրագրի իրականացման գործում, ինչպես ասված է հնգամյա պլանի դիրեկտիվներում, պետական կառավարման մյուս մարմինների հետ մեկտեղ մեծ ու պատասխանատու դեր է պատկանում նաև աշխատավորների դեպուտատների սովետներին, որոնք ընդգրկում են կազմակերպական ներգործության հզոր ուժեր՝ հանձինս մշտական հանձնաժողովների և ժողովրդի ընտրյալների բազմահազարանոց բանակի։ Միայն մեր հանրապետության տեղական սովետների մոտավորապես 25 հազար դեպուտատներից ավելի քան 19 հազարն աշխատում է գործարաններում, ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և կառույցներում։ Եթե դրան ավելացնենք, որ սովետների շուրջը համախմբված են արտադրության մոտ 100 հազար առաջավորներ, ապա միանգամայն պարզ կդառնա, թե ինչպիսի վիթխարի ուժ են ներկայացնում տեղական սովետները։

Կասկած չկա, որ որքան բարձր լինի տեղական սովետների դերը, որքան լայն լինեն նրանց իրավունքները, որքան լավ և արդյունավետ օգտագործեն նրանք այդ իրավունքները, այնքան ավելի մեծ հաջողությամբ նրանք կլուծեն մեր կուսակցության կողմից առաջադրված կարևորագույն խնդիրները։



# ՍՈՒԲՅԵԿՏԻՎ ԳՈՐԾՈՆԻ ՆՈՐ ԴԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

Մ. ԱՆՏՈՆՅԱՆ

ՍՈՒԲՅԵԿՏԻՎ գործոնի որակապես նոր դերի պրոբլեմը չափազանց բարդ է սոցիալիստական հասարակարգում։ Այդ պատճառով էլ տվյալ հոդվածում մենք կքննարկենք թեմայի հատկապես այն մի քանի հարցերը, որոնք առաջ են քաշվել կոմունիստական շինարարության պրակտիկայով և որոնց առթիվ մեր սոցիոլոգիական գրականության մեջ դեռևս քիչ տեսական ընդհանրացումներ կան։ Հատկապես թույլ են մշակված կոմունիզմի կառուցման սուբյեկտիվ գործոնի դերի աճման օրինաչափությունները, օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների դիալեկտիկան և այլն։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ հասարակական յուրաքանչյուր պրոցես, երևույթ ունի իր սուբյեկտիվ գործոնը։ Օրինակ, պատմությունն՝ իր զարգացման փուլերով ու էտապներով, նյութական արտադրությունը, հեղափոխությունը, պատերազմը։

Մենք նպատակ չունենք բնորոշելու յուրաքանչյուր հասարակական պրոցեսի սուբյեկտիվ գործոնի առանձնահատկություններն ու բնորոշ կողմերը։ Այստեղ մեզ հետաքրքրում է միայն պատմության սուբյեկտիվ գործոնը, որը, ինչպես և ամեն մի հասարակական երևույթի սուբյեկտիվ գործոն, պայմանավորված է տվյալ կոնկրետ օբյեկտիվ հանգամանքներով և որոշվում է դրանցով։ Օբյեկտիվ գործոնը որոշիչ դեր է խաղում մարդկային ամեն կարգի գործունեության մեջ։ Միաժամանակ յուրաքանչյուր սուբյեկտիվ գործոն հետադարձ ակտիվ ներգործություն է ունենում իրեն ծնող օբյեկտիվ պայմանների վրա, արագացնում կամ դանդաղեցնում դրանց զարգացումը։

Պատմության սուբյեկտիվ գործոնը՝ դասակարգերի, քաղաքական կուսակցությունների, անհատների գործունեության ու գիտակցության այն կողմն է, որն ուղղված է հասարակության զարգացման օբյեկտիվ պայմանների, կյանքի օրինաչափությունների ճանաչմանը և գիտակցաբար, նպատակասլաց ներգործել այդ պայմանների ու օրինաչափությունների վրա՝ հանուն որոշ հասարակական նպատակների իրագործման։ Սուբյեկտիվ գործոն հասկացողությունն արտացոլում է մասսաների, դասակարգերի, կուսակցությունների ու առանձին անհատների ներգործությունը պատմության ընթացքի վրա։ Այդ ներգործության բնույթը կախված է մարդկանց գիտակցության և կազմակերպվածության բնույթից։



Պատմական փորձը ցույց է տվել, որ հասարակական մի ֆորմացիայից մյուսին անցնելով, ավելի է աճում պատմության սուբյեկտիվ գործոնի դերը։ Սակայն մինչսոցիալիստական հասարակարգում, երբ զարգացման օրինաչափությունները գործում էին տարերայնորեն, գիտակցականորեն չէին ճանաչվում և օգտագործվում, սուբյեկտիվ գործոնի ազդեցությունը հասարակական երևույթների վրա միշտ էլ սահմանափակ էր ու կաշկանդված։ Այդ հանգամանքն առավել ևս պետք է ընդգծել, քանի որ անտագոնիստական հասարակարգում պատմության սուբյեկտիվ գործոնը բաժանված է երկու միմյանց հակադիր մասերի. մեկը (պրոգրեսիվ մասը) ուղղված է շահագործող կարգերի դեմ, իսկ մյուսը (ռեակցիոն մասը) կոչված է հավերժացնելու տվյալ կարգերի տիրապետությունը։

Անտագոնիստական ֆորմացիաների պատմությունը միաժամանակ վկայում է, որ աստիճանաբար աճում, ուժեղանում, հզորանում է պրոգրեսիվ սուբյեկտիվ գործոնը, նրա ներգործությունը հասարակական օբյեկտիվ պրոցեսների վրա։

Վերջին անտագոնիստական ֆորմացիայից՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը նշանակում է հասարակական կյանքի բոլոր կողմերի՝ էկոնոմիկայի, քաղաքականության, հոգեկան կյանքի որակական փոփոխություն։ Մարքսը շեշտում էր, որ քաղաքական իշխանությունը պրոլետարիատի կողմից նվաճելու օրից մարդկային հասարակության նախապատմությունը կփոխարինվի նրա իսկական պատմությամբ։

Քանի որ պատմության սուբյեկտիվ գործոնը պայմանավորված է օբյեկտիվ պայմաններով ու դրանց զարգացման օրինաչափություններով, ապա օբյեկտիվ պայմանների փոփոխման հետ միասին, փոխվում է նաև սուբյեկտիվ գործոնը, նրա դերն ու նշանակությունը պատմության մեջ։

Սոցիալիստական հասարակարգի առաջացման հետ մեկտեղ երևան են գալիս նոր սուբյեկտիվ գործոն, հասարակության նոր շարժիչ ուժեր, նոր օրինաչափություններ, որոնք արմատապես տարբերվում են նախասոցիալիստական ֆորմացիաների ծագման, զարգացման և անկման օրինաչափություններից։

Իհարկե, սոցիալիզմի օրոք ևս, ինչպես և նախորդ ֆորմացիաներում, մարդկանց հասարակական կեցությունն է որոշում նրանց գիտակցությունը։ Այստեղ ևս մարդը չի կարող անկախ լինել հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափություններից։ Սակայն ի տարբերություն նախորդ ֆորմացիաների, սոցիալիզմի ժամանակ, որտեղ իշխում է միակ գիտական իդեոլոգիան՝ մարքսիզմ-լենինիզմը, մարդկանց գործունեությունը հիմնված է օբյեկտիվ պրոցեսների, օրենքների ու օրինաչափությունների գիտական ճանաչման և օգտագործման վրա։ Հենց սա է այն ելակետը, որը հնարավորություն է տալիս ճիշտ ըմբռնելու սուբյեկտիվ գործոնի նոր դերը սոցիալիստական հասարակարգում։

Ամենից առաջ պետք է ընդգծել, որ սոցիալիզմի կառուցման ու զարգացման սուբյեկտիվ գործոնը որակապես միանգամայն նոր երևույթ է։ Վերցնենք, օրինակ, նրա կառուցվածքը։ Նրա բոլոր տարրերը օրգանապես կապված են միմյանց հետ, կազմելով մի բնական սիստեմ. ա) մարքս-լենինյան

կուսակցության և սոցիալիստական պետության ղեկավար գործունեությունը, բ) աշխատավորների բազմազան մասսայական կազմակերպությունների գործունեությունը, կազմակերպություններ, որոնց միջոցով կուսակցությունն ու պետությունն իրագործում են իրենց քաղաքականությունը, դաստիարակում ու կազմակերպում են մասսաներին, գ) ժողովրդական մասսաների՝ պատմության կերտողների մարքս-լենինյան գիտակցականությունը, կազմակերպվածությունը և հասարակական ակտիվությունը: Առանց այդ հանգամանքի խոր ըմբռնման, դժվար է հասկանալ ժամանակակից պատմական պրոցեսը, նրա զարգացման ուղիները, այդ թվում նաև սուբյեկտիվ գործոնի դերի աճման օրինաչափությունները:

Այժմ տեսնենք, թե որոնք են այդ օրինաչափությունները, սուբյեկտիվ գործոնի դերի աճման շարժառիթները սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում:

Նախ, սոցիալիստական կարգերի հաստատման հետ մեկտեղ արմատապես փոխվեց հասարակության զարգացման պրոցեսի բնույթը: Սոցիալիզմի ժամանակ ևս իր էությամբ մնալով օբյեկտիվ, այդ պրոցեսը ընդունում է ավելի ու ավելի գիտակցական և պլանային բնույթ: Հասարակական պրոցեսների տարերայնությունը, որը բնորոշ էր բոլոր նախորդ ֆորմացիաներին, իր տեղը զիջում է գիտակցական զարգացմանը: Սոցիալիստական արտադրաեղանակի բնույթն այնպիսին է, որ պահանջում է ամբողջ հասարակության, յուրաքանչյուր կոլեկտիվի ու անհատի գիտակցական ու կազմակերպված գործունեություն: Կոմունիզմը ժողովրդական լայն մասսաների գիտակցական ստեղծագործությունն է: Այդ նշանակում է, որ ներկայումս հասարակության զարգացումը առավել մեծ չափով է կախված պատմության սուբյեկտից՝ մարդուց, նրա գիտակցականության և կազմակերպվածության մակարդակից, կոմունիստական իդեալներին նրա նվիրվածությունից:

Կոմունիզմին անցման զուգընթաց աճում է մասսաների գիտակցականությունն ու կազմակերպվածությունը, որը հանդիսանում է նոր հասարակության զարգացման օրինաչափություններից մեկը:

Այնուհետև, արտադրության միջոցների սոցիալիստական սեփականության տիրապետության պայմաններում պատմության սուբյեկտիվ գործոնը այլևս չի բաժանվում երկու հակադիր մասերի՝ իրենց հակադիր նպատակներով ու խնդիրներով: Միայն սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ է, որ ժողովուրդը, կուսակցությունն ու պետությունը հանդես են գալիս որպես պատմության, հասարակական բոլոր վերափոխումների սուբյեկտ և առաջին անգամն է, որ սուբյեկտիվ գործոնը հանդես է գալիս որպես առավել կազմակերպված մի սիստեմ: Նրա բոլոր բաղկացուցիչ մասերն ունեն մի ընդհանուր նպատակ՝ կոմունիզմի հաղթանակը: Դա միանգամայն համապատասխանում է տնտեսական, քաղաքական և կուլտուրական նոր օբյեկտիվ պայմաններին: Սուբյեկտիվ գործոնի այդ նոր վիճակը վկայում է նրա որակապես ավելի բարձր աստիճանի և հասարակության զարգացման գործում նրա առավել աճող դերի մասին:

Այդ ամենը չեն կարող չարագացնել և իսկապես արագացնում են հասարակության զարգացումը:

Այնուհետև, սուբյեկտիվ գործոնի դերի աճը բացատրվում է նրանով, որ կոմունիստական ֆորմացիայի ձևավորման, հատկապես կոմունիզմի բարձր



փուլին անցնելու ժամանակ անհամեմատ աճում են հասարակության զարգացման խնդիրներն ու դրանց բարդությունը, խնդիրներ, որոնք քաղաքական և կազմակերպական ղեկավարման ավելի բարձր մակարդակ են պահանջում: Անցյալի համեմատությամբ հասարակության զարգացման տեմպերը դառնում են առավել շեշտակի, սրընթաց, որը և պահանջում է ժողովրդական մասսաների գործունեության մեջ գիտակցականության ու կազմակերպվածության ավելի բարձր աստիճան:

Այնուհետև, սոցիալիզմի զարգացման պրոցեսում սիստեմատիկաբար բարձրանում է մասսաների գիտակցության, ստեղծագործական ակտիվության մակարդակը, որը հնարավորություն է տալիս նորանոր միլիոնների ներգրավել պետության և արտադրության կառավարման գործում: Այս ևս վկայում է հասարակության կյանքում սուբյեկտիվ գործոնի դերի ու նշանակության օրինաչափ աճը:

Վերջապես, ի տարբերություն բոլոր նախորդ հասարակական ֆորմացիաների, նոր հասարակարգում սուբյեկտիվ գործոնի և օբյեկտիվ պայմանների միջև չկա անտագոնիզմ, կոնֆլիկտ: Պատմությունը ցույց է տվել, որ սուբյեկտիվ գործոնը կարող է մաքսիմում էֆեկտիվ ներգործություն ունենալ հասարակական օբյեկտիվ պրոցեսների վրա այն դեպքում միայն, երբ նրա և այդ օբյեկտիվ պայմանների միջև չկա անտագոնիզմ: Դա նշանակում է, որ նյութական և հոգևոր արտադրությունը ենթարկված է ժողովրդական մասսաների շահերին, որը մեծ չափով բարձրացնում է սուբյեկտիվ գործոնի դերը պատմության մեջ:

Կոմունիզմի կառուցման սուբյեկտիվ գործոնի դերի աճն առաջին հերթին կոմունիստական կուսակցության՝ ժողովրդի առաջնորդի, ղեկավարի ու կազմակերպչի դերի բարձրացումն է, նրա գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործումը: Այդ բացատրվում է ամենից առաջ նրանով, որ կուսակցությունը կոչված է մշակելու և կյանքում կիրառելու այնպիսի քաղաքականություն, որը ճիշտ է արտացոլում օբյեկտիվ օրինաչափությունները և երկրի արմատական շահերը՝ զարգացման նոր պայմաններում: Այդ նոր ուժով է դրսևորվում այժմ, երբ ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) պլենումից հետո կուսակցությունը վերցրեց գիտության տվյալներին լիովին համապատասխան պրակտիկ միջոցառումները հետևողականորեն մշակելու և իրականացնելու կայուն կուրս:

Կուսակցության դերի բարձրացումը պայմանավորված է նաև գիտական կոմունիզմի տեսության, նրա ստեղծագործական զարգացման ու պրոպագանդման աճով, աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուժեղացման և մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկները հաղթահարելու համար մղվող պայքարի անհրաժեշտությամբ:

***

ՍՈՒԲՅԵԿՏԻՎ գործոնի նոր դերը դրսևորվում է հասարակական կյանքի բոլոր բնագավառներում՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունները կոմունիստական հիմունքով վերափոխելու, նոր մարդու ձևավորման և

բազմաթիվ այլ բնագավառներում։ Վերցնենք, օրինակ, արտադրողական ուժերի զարգացման ասպարեզը։

Յուրաքանչյուր հասարակության արտադրողական ուժերի, ինչպես և կյանքի մյուս կողմերի զարգացումը, օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկական դրսևորումն է։ Հասարակության զարգացման համար, սակայն, առաջնակարգ նշանակություն ունեն օբյեկտիվ պայմանները, տվյալ դեպքում արտադրողական ուժերի օբյեկտիվ կողմի զարգացումն ու պրոգրեսը։ Այս տեսակետից սոցիալիզմը չի տարբերվում նախորդ հասարակարգերից։

Սակայն սոցիալիզմը նախորդներից որակապես տարբերվում է նրանով, որ այստեղ արտադրողական ուժերը զարգանում են ոչ թե ինքնահոսի կարգով, այլ մնալով որպես օբյեկտիվ պրոցես և կազմելով մարդկանց գործունեության հիմքը, ընթանում են պլանաչափորեն, գիտակցված։ Հետևաբար, օբյեկտիվ օրինաչափությունները ոչ միայն չեն բացասում, այլ ենթադրում են մարդկանց գիտակցական գործունեություն, սուբյեկտիվ գործոնի ակտիվ ներգործություն արտադրության զարգացման վրա։

Այդ ներգործության աստիճանը կամ բնույթը կախված է ինչպես սուբյեկտիվ գործոնի, այնպես էլ տվյալ արտադրական հարաբերությունների բնույթից։ Եթե արտադրողական ուժերի ու արտադրական հարաբերությունների միջև գոյություն ունի անտագոնիզմ, ապա պատմության սուբյեկտիվ գործոնի մի մասի (ռեակցիոն մասի) ազդեցությունը արտադրողական ուժերի վրա չի կարող պրոգրեսիվ լինել։ Սուբյեկտիվ գործոնը պրոգրեսիվ ներգործություն է ունենում արտադրողական ուժերի զարգացման վրա միայն այն դեպքում, երբ արտադրական հարաբերությունները համապատասխանում են արտադրողական ուժերի բնույթին։ Այդ համապատասխանությունը (ոչ բացարձակ) ստեղծում է անհրաժեշտ պայմաններ սուբյեկտիվ գործոնի էֆեկտիվ գործունեության համար։

Վերը ասածից չի հետևում, որ սոցիալիզմի պայմաններում արտադրողական ուժերի զարգացումը ընթանում է հարթ, առանց հակասությունների, առանց դժվարությունների։ Մեր հասարակության զարգացման ընթացքում ծագում և լուծվում են իր սեփական հակասությունները, որը հանդիսանում է սոցիալիզմի զարգացման ներքին օրինաչափություններից մեկը։ Լուծելով այդ հակասություններից մեկը, ծագում է մի ուրիշը և այդպես անվերջ։

Սոցիալիստական հասարակարգում, որտեղ չկան անտագոնիստական դասակարգեր, հակասությունները չունեն հակամարտական բնույթ։ Նրանք հաղթահարվում, լուծվում են ոչ թե հեղափոխության միջոցով, այլ սոցիալիստական հասարակական հարաբերությունների բազայի վրա, հասարակության պլանաչափ զարգացման, ժողովրդական մասսաների գիտակցական գործունեության ընթացքում։

Հակասությունների գիտակցական լուծման փայլուն օրինակ կարող են ծառայել ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումների որոշումները։ Ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի փոփոխումը, տնտեսական խթանման, անձնական նյութական շահագրգռվածության բարձրացումը վերացնում են արտադրողական ուժերի զարգացման այն արգելակը, որը առաջացել էր տնտեսության ղեկավարման հին ձևի և ժողովրդական տնտեսության ու մասսաների պահանջների միջև եղած հակասու-



թյան հետևանքով։ Ղեկավարման նոր սիստեմը, ինչպես և կուսակցության այլ միջոցառումները, լայն հնարավորություններ ստեղծեցին արտադրողական ուժերի զարգացման համար։

Սակայն այդ չի նշանակում, որ բոլոր հակասություններն արդեն լուծված են և այլևս ոչ մի դժվարություն չկա։ Արտադրողական ուժերի բուռն վերելքը ծնում է զանազան տեսակի հակասություններ, առանց որոնց լուծման անհնար է ապահովել հասարակական հետագա պրոգրեսը։ Վերցնենք, օրինակ, հակասությունը մարդու և զարգացող տեխնիկայի միջև, այսինքն արտադրողական ուժերի օբյեկտիվ ու սուբյեկտիվ էլեմենտների միջև։ Գիտատեխնիկական բազմակողմանի պրոգրեսի պայմաններում այդ հակասության ժամանակին չլուծելը կարող է լուրջ արգելակ հանդիսանալ արտադրողական ուժերի զարգացման ճանապարհին։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը պահանջում են բարձրացնել աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակը, առանց որի արդի պայմաններում հնարավոր չէ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Դրանում է դրսևորվում մարդու և տեխնիկայի միջև եղած հակասությունը։

Այդ հակասության լուծման գլխավոր միջոցը մի կողմից աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումն է, իսկ մյուս կողմից, նոր կադրերի մասսայական պատրաստումը, կադրեր, որոնք կարող են օգտագործել ժամանակակից բարդ մեքենաները, սարքավորումներն ու մեխանիզմները։ Այդ տեսակետից խոշոր քայլ կկատարվի նոր հնգամյակում. նախատեսված է 1970 թվականին պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում ընդունել մինչև 1700—1800 հազար սովորող։ Դա համարյա երկու անգամ ավել է անցյալ հնգամյակի համեմատ։

Մարդու և զարգացող տեխնիկայի միջև եղած հակասությունն ունի այլ կողմեր ևս։ Դրանցից մեկն էլ հասարակության և նրա անդամների պահանջմունքների և արտադրանքի ցածր որակի միջև եղած հակասությունն է։ Այլ խոսքով ասած, մի կողմից, արտադրանքի որակի անընդհատ բարձրացումը հանդես է գալիս որպես պատմական անհրաժեշտություն, որպես տեխնիկական պրոգրեսի և ժողովրդական մասսաների բարեկեցության հետագա բարելավման կարևորագույն գործոն, իսկ մյուս կողմից, այդ արտադրանքի փաստական վիճակը հակասում է հիշյալ անհրաժեշտությանը, կաշկանդում աշխատանքի արտադրողականության և ժողովրդի բարեկեցության բարձրացումը։

Արտադրանքի որակի բարձրացման համար մղվող պայքարը, որը սոցիալիստական պետության կարևոր ֆունկցիաներից մեկն է, միաժամանակ պայքար է մեր հասարակությունում անօգուտ աշխատանքի լիկվիդացման համար։ Խոտանը, որը դեռևս զգալի տոկոս է կազմում, բացասաբար է ազդում աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրողական ուժերի զարգացման վրա։ Այդ երևում է թեկուզ և այն փաստից, որ խոտանի հետևանքով առաջացած կորուստները տարեկան կազմում են շուրջ 3 միլիարդ ռուբլի (տե՛ս Развитие экономической теории в свете решений XXII съезда КПСС. М., 1962, էջ 168)։

Հիշատակված հակասության հաղթահարման գլխավոր միջոցը աշխատավորների և ձեռնարկությունների նյութական շահագրգռվածության բարձրացումն է աշխատանքի որակային ցուցանիշների համար։ Այժմ, տնտեսական նոր ռեֆորմից հետո, ուղղակի, անմիջական կապ է ստեղծվում ձեռնարկու-

թյան գործունեության, արտադրանքի որակի և աշխատողների վարձատրության մակարդակի միջև։ Որքան բարձր է արտադրանքի որակը, այնքան բարձր է վարձատրությունը։

***

ԱՌԱՆՑ սոցիալիզմի պայմաններում տնտեսական օրենքների օգտագործման մեխանիզմի ճիշտ ըմբռնման, չի կարելի հասկանալ սուբյեկտիվ գործոնի որակապես նոր դերը։

Եթե նախորդ ֆորմացիաներում հասարակական օբյեկտիվ օրենքները դրսևորվում էին որպես կույր անհրաժեշտություն, ապա սոցիալիզմի և կոմունիզմի պայմաններում դրանք վերածվում են գիտակցական անհրաժեշտության։ Կապիտալիզմի օրոք, որտեղ տիրապետում են արտադրության անարխիան, անտագոնիստական արտադրական հարաբերությունները, մարդիկ զրկված են տնտեսական օրենքների գիտակցական, պլանային օգտագործման հնարավորություններից։ Այդ օրենքները գործում են տարերայնորեն։ Ի միջի այլոց այդ է արտադրության անարխիայի գլխավոր պատճառներից մեկը։ Որքանով որ կապիտալիզմի օրոք օբյեկտիվորեն անհնար է տնտեսական օրենքների գիտակցական օգտագործումը, այդքանով էլ սուբյեկտիվ գործոնն ունի գործողության սահմանափակ շրջանակ։

Այդպիսի սահմանափակում չկա սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ։ Այստեղ սուբյեկտիվ գործոնի անկաշկանդ գործունեության համար առկա են բոլոր պայմանները. արտադրության միջոցների սոցիալիստական սեփականություն, մարքս-լենինյան իդեոլոգիա, որով զինված են կուսակցությունը և ժողովրդական մասսաները։

Սոցիալիստական պետության ուժն այն է, որ նա ակտիվորեն առաջ է մղում հասարակությունը, ելնելով տնտեսական օրենքների պահանջներից։ Որքան լրիվ են հաշվի առնվում ու օգտագործվում տնտեսական օրենքների պահանջները, այնքան արդյունավետ է հասարակության գործունեությունը։ Եվ, ընդհակառակը, տնտեսական օրենքների սխալ օգտագործումը, առավել ևս դրանց արհամարհելը կամ անտեսելը, կարող են բացասական հետևանքներ ունենալ տնտեսության զարգացման համար, դանդաղեցնել արտադրողական ուժերի ընթացքը։ Այլ խոսքով ասած, սուբյեկտիվիզմն անխուսափելիորեն տանում է դեպի ձախողում։ Այսպես, օրինակ, կուսակցության XXIII համագումարը ընդգծեց, որ գյուղատնտեսության դանդաղ վերելքի հիմնական, գլխավոր պատճառն արտադրության զարգացման տնտեսական օրենքների պահանջների, աշխատողների նյութական շահագրգռվածության սկզբունքների, հանրային և անձնական շահերի ճիշտ զուգորդման սկզբունքների խախտումներն են։

Ի՞նչ է նշանակում տնտեսական օրենքների գիտակցական իրագործումը, դրանց օգտագործումը հօգուտ հասարակության և նրա բոլոր անդամների։

Դա ամենից առաջ նշանակում է ճանաչել այդ օրենքների էությունը, ըմբռնել դրանց առանձնահատկությունները, դրսևորման բնույթը՝ այս կամ այն պայմաններում։ Առանց իմացաբանական այս մոմենտի անհնար է օգտագործել այդ օրենքները։



Այնուհետև, օգտագործել տնտեսական օրենքները՝ նշանակում է նախատեսել օրենքների գործողության արդյունքները, սոցիալական պրոցեսների ընթացքը, հասարակության տնտեսական զարգացման հեռանկարները։

Երրորդ, օգտագործել տնտեսական և այլ օրենքները, նշանակում է նպատակասլաց ներգործել օբյեկտիվ պրոցեսների վրա, այդ նույն օրենքների վրա, այն հաշվով, որպեսզի արագացվի և դյուրացվի զարգացման պրոցեսը։

Եվ վերջապես, տնտեսական օրենքների օգտագործումը նշանակում է պրակտիկայի պլանային կազմակերպում, ճիշտ տնտեսական քաղաքականության մշակում։ Իսկ քանի որ արտադրական պրակտիկան մարդկանց գործունեությունն է, ապա տնտեսական օրենքների օգտագործումը սոցիալիզմի օրոք նշանակում է ամբողջ հասարակության մասշտաբով մարդկանց տնտեսական գործունեության ճիշտ կազմակերպում, գործունեություն, որը հիմնված է օբյեկտիվ օրենքների պահանջների վրա։

Այդ մի քանի ընդհանուր դրույթներից հետո երկու օրինակով քննարկենք տնտեսական օրենքների գիտակցական օգտագործման սոցիալ-տնտեսական մեխանիզմը, որը և հանդիսանում է կոմունիզմի կառուցման սուբյեկտիվ գործոնի աճող դերի արտահայտությունը։

Վերցնենք սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը, որը արտահայտում է սոցիալիստական արտադրության օբյեկտիվ նպատակը։ Սոցիալիզմի նպատակն է ավելի ու ավելի լրիվ բավարարել ժողովրդի նյութական և կուլտուրական աճող պահանջմունքները՝ հասարակական արտադրության անընդհատ զարգացման ու կատարելագործման հիմքի վրա։ Այդ օրենքի գործողությունը ցույց է տալիս, որ նրանում ներդաշնակություն են կազմում սոցիալիստական արտադրության օբյեկտիվ նպատակը և մարդկանց սուբյեկտիվ ցանկությունները։

Սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի օգտագործման գլխավոր նպատակն է չխախտել այդ ներդաշնակությունը, չխախտել հասարակության բոլոր անդամների մշտական աճող պահանջմունքների և դրանց բավարարման միջոցների զարգացման միջև եղած ներքին կապը։ Առանց դրան չի կարելի ապահովել արտադրողական ուժերի բազմակողմանի զարգացումը։

Ելնելով այս բոլորից, կուսակցությունը և սոցիալիստական պետությունը որոշում են վերոհիշյալ օրենքի օգտագործման մեխանիզմը, որը ունի բազմաթիվ կողմեր և տարրեր։ Նշենք դրանցից երեքը.

**Նախ**, հաշվի առնելով այն հանգամանքը, որ սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը որոշիչ ազդեցություն է գործում հասարակության տնտեսական կյանքի վրա, կուսակցությունը և սոցիալիստական պետությունը մեր զարգացման յուրաքանչյուր էտապում մշակում և իրագործում են այնպիսի տնտեսական քաղաքականություն, որի հիման վրա ապահովվում է արտադրողական ուժերի վերելքը, ազգային եկամտի անշեղ աճը։ Իսկ այդ ամենը վճռական նշանակություն ունեն աշխատավորների կուլտուր-կենցաղային բարեկեցությունը բարձրացնելու համար։

**Երկրորդ**, կուսակցության և սոցիալիստական պետության ամբողջ գործունեությունը, բուն արտադրության զարգացումը ուղղված են այն բանին, որպեսզի իրագործվի «ամեն ինչ մարդու, ամեն ինչ նրա բարեկեցության համար» սկզբունքը։ Դա նշանակում է, որ տնտեսական հիմնական օրենքը ըն-

կած է կուսակցության և պետության տնտեսական քաղաքականության գըլխավոր գծի հիմքում։

**Եվ վերջապես**, սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի օգտագործումը զուգորդվում է մյուս օրենքների օգտագործման հետ։ Այդ օրենքներից յուրաքանչյուրի իրագործումը կախման մեջ է գտնվում հիմնական տնտեսական օրենքից։ Ահա թե ինչու սուբյեկտիվ գործոնը աշխատում է, որպեսզի այս կամ այն օրենքի իրագործումը համապատասխանի հիմնական տնտեսական օրենքի պահանջներին։ Այլ խոսքով ասած, յուրաքանչյուր տնտեսական օրենքի օգտագործումը ենթարկվում է այն նպատակին, որը հետապնդում է հիմնական տնտեսական օրենքը։ Եթե ժողովրդական մասսաների կյանքի և կենցաղի մակարդակը սիստեմատիկաբար չի բարձրանում, ապա այդ նշանակում է, որ հիմնական տնտեսական օրենքը և մյուս օրենքները վատ են օգտագործվում։

Մեծ է սուբյեկտիվ գործոնի, ամենից առաջ սոցիալիստական պետության դերը հատկապես ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենքի օգտագործման ասպարեզում։ Սոցիալիստական պետության ներքին ֆունկցիաների իրագործումը, հատկապես նրա տնտեսա-կազմակերպչական և կուլտուր-դաստիարակչական գործունեությունը տնտեսական օրենքների, որոնց թվում և պլանաչափ զարգացման օրենքի օգտագործման հիմնական մեխանիզմն է։ Արտադրական պրակտիկայի ճիշտ կազմակերպում, արտադրության գիտական ղեկավարում՝ ահա պլանաչափ զարգացման և մյուս տնտեսական օրենքների օգտագործման ընդհանուր հիմնական մեխանիզմը։

Տնտեսական օրենքների, մասնավորապես պլանաչափ զարգացման օրենքի օգտագործման օրինակ է հանդիսանում ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանը, որը կոչված է ապահովելու մեր հասարակության նշանակալի առաջընթացը կոմունիստական շինարարության ուղիով։

Հնգամյա պլանը մեր հնարավորությունների ճիշտ գնահատման արդյունք է, որը ելնում է արտադրողական ուժերի զարգացման ձեռք բերած մակարդակից, տնտեսական հնարավորություններից ու ռեզերվներից, հասարակության առաջ կանգնած խնդիրներից և սահմանում է այնպիսի առաջադրանքներ, որոնց իրագործումը կասկած չի առաջացնում։

Բացի այդ օբյեկտիվ պայմաններից, հնգամյա պլանը ռեալիստորեն հաշվի է առնում նաև սուբյեկտիվ գործոնի նոր, ավելի բարձր մակարդակը։ Բանը նրանումն է, որ նոր տնտեսական ռեֆորմի հետևանքով անհամեմատ աճեց մասսաների ստեղծագործական և քաղաքական ակտիվությունը, ավելի բարձրացավ նրանց կազմակերպվածությունն ու քաղաքական գիտակցությունը։

Գիտական հիմնավորված պլանավորումն է միայն հնարավորություն տալիս տիրապետել ու օգտագործել տնտեսական օրենքները, տվյալ դեպքում պլանաչափ զարգացման օրենքը։

Պլանաչափ զարգացման օրենքի օգտագործման մեխանիզմի կարևոր տարրերից մեկն այն է, որ հայտաբերվեն և օգտագործվեն էկոնոմիկայի, ինչպես և հասարակության անդամների հնարավորություններն ու ռեզերվները, ամենօրյա պայքար կազմակերպվի խնայողության, արտադրական միջոցների, մեքենաների, սարքավորումների ռացիոնալ օգտագործման համար։



Օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկայի ճիշտ ըմբռնումը և դրանով ղեկավարվելը սկզբունքային նշանակություն ունի ինքնահոսի, պասիվության դեմ պայքարելու, հասարակության առաջընթացն ապահովելու համար։ Սոցիալիզմի օրոք օբյեկտիվ պայմաններն ու օրինաչափություններն ինքնահոսի կարգով չեն կարող հասցնել կոմունիզմի հաղթանակին։ Նրանք ստեղծում են միայն ռեալ հնարավորություն այդ հաղթանակի համար։ Այդ հնարավորությունը իրականություն դարձնելու համար վճռական նշանակություն է ստանում սուբյեկտիվ գործոնը, առաջին հերթին մասսաների գիտակցական, ակտիվ, ստեղծագործական գործունեությունը։ Օբյեկտիվ պայմաններն առանց սուբյեկտիվ գործոնի չեն կարող լուծել տնտեսական կամ որևէ այլ խնդիր։ Մյուս կողմից, այդ խնդիրները չի կարելի լուծել նաև վոլյունտարիստական, սուբյեկտիվիստական գործունեության միջոցով, հաշվի չառնելով ռեալ դրությունը և տնտեսական կյանքի օբյեկտիվ օրինաչափությունները։ Միակ ճիշտ գործունեությունն այն է, որը ելնում է օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի դիալեկտիկայի ճիշտ ըմբռնումից։

Մենք քննարկեցինք սոցիալիստական հասարակության զարգացման սուբյեկտիվ գործոնի որակապես նոր դերի ու նշանակության միայն մի քանի կողմերը։ Այդ դերն այն է, որ սուբյեկտիվ գործոնն, առաջին հերթին կոմունիստական կուսակցության ու սոցիալիստական պետության բազմակողմանի գործունեությունը, հենվելով հասարակական օբյեկտիվ օրենքների, օրինաչափությունների իմացության վրա, օգտագործելով և կիրառելով այդ օրենքները, գիտակցականորեն ներգործում է հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։

Մեր հասարակական պրակտիկան ցույց է տալիս, որ կուսակցությունն ու սովետական պետությունը կարողացան տնտեսական օրենքներն ու դրանց հետ կապված տնտեսական կատեգորիաները (ապրանք, արժեք, շահույթ, գին և այլն) ծառայեցնել կոմունիստական շինարարության խնդիրներին։ Պատմության մեջ առաջին անգամ միայն կոմունիզմի կառուցման սուբյեկտիվ գործոնն է, որ իրագործում է սոցիալական պրոցեսների, հակասությունների նկատմամբ կառավարման ֆունկցիա, որոշում է այդ պրոցեսների ու հակասությունների զարգացման, փոփոխման, լուծման ուղիներն ու մեթոդները, անհամեմատ արագացնելով հասարակության հետագա առաջընթացի տեմպերը։



# ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԻ ՇՈՒՐՋ[1]

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

*Ազատության ու անհրաժեշտության, մարդկանց գիտակցված գործունեության ու օբյեկտիվ օրինաչափության հարաբերակցության պրոբլեմը միշտ էլ գաղափարական պայքարի կիզակետ է եղել փիլիսոփայական հակադիր ուսմունքների համար:*

*Շահագործողական հասարակարգերում, ուր բացառվում է մարդկանց կողմից իրենց միացյալ սոցիալական ուժերը վերահսկելու հնարավորությունը, ծնունդ է առնում ազատության և անհրաժեշտության հարաբերակցության սպեկուլյատիվ երկընտրանքը, ըստ որի՝ կամ մարդն ազատ է ամեն ինչից, հետևաբար գոյություն չունեն օբյեկտիվ օրինաչափություններ, կամ ընդհակառակը, այդպիսիք կան և մարդը դատապարտված է լինելու դրանց ստրուկը: Երկու դեպքում էլ վեճը կրում է պասսիվ, հայեցողական բնույթ:*

*Աշխարհին մոտենալով բոլորովին նոր, հեղափոխական վերակառուցման տեսանկյունից, մարքսիզմը անհերքելիորեն ապացուցեց. մարդը միշտ էլ վերափոխել է աշխարհը. պրոբլեմի էությունն այն է, թե արտաքին աշխարհը և իր հասարակական հարաբերությունները մարդը վերափոխել է նախօրոք գիտենալով իր անելիքները և դրա հետևանքները, թե՞ արտաքին հանգամանքների ճնշման ներքո: Ինչպիսի՞ կապ ու փոխադարձ պայմանավորվածություն գոյություն ունի մարդկանց գիտակցված գործունեության ու արտաքին հանգամանքների, ազատության և անհրաժեշտության միջև: Ըստ որում անհրաժեշտությունը դիտվում է ոչ թե մարդկային պրակտիկ գործունեությունից դուրս, այլ մի այնպիսի բան, որը կազմավորվում և առկա է մարդկանց ու բնության, մարդկանց՝ միմյանց միջև հարաբերություններում:*

## ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ԴՐՍԵՎՈՐՄԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՁԵՎԵՐԸ

ԻՆՉՊԵՍ հայտնի է, հասարակության գոյության և զարգացման առաջին նախադրյալը մարդու կյանքի պահպանությունն ու վերարտադրությունն է, որը հնարավոր է բնության մեջ և բնության տվածի միջոցով: Բայց քանի որ բնությունն իր տարերային զարգացմամբ մի կողմից հանդես է գալիս որպես մարդուն սնող, իսկ մյուս կողմից նրա գոյությանը սպառնացող միջավայր, հասարակությունը կարող է հարատևել միայն բնության դեմ մղվող պայքարում: Պայքարը բնության դեմ՝ հասարակական բոլոր ձևերում և արտադրության բոլոր եղանակների օրոք, Մարքսի արտահայտությամբ բնական անհրաժեշտությունն է: Այս առումով էլ ինչպես հասարակության ծագումը, այնպես էլ նրա զարգացումը բնապատմական պրոցես է:

Մարդկությունը, որ սերել է բնությունից, այլ բան չէր կարող լինել, քան բնական անհրաժեշտության դրսևորումը՝ իր յուրօրինակ, սոցիալական ձևով: Այսպես, նախնադարյան-համայնական կարգերում արտադրությունը հասարակական էր և բաշխումն էլ կատարվում էր տոհմի անդամների միջև հավասարության սկզբունքով: Սա էլ հենց մարդկայինի դրսևորումն էր բնական անհրաժեշտության մեջ, որը սակայն չգիտակցվեց և չէր էլ կարող գիտակցվել մարդկանց կողմից, որովհետև այն ժամանակ գոյության մարդկային պայմանները նույնքան պատահական էին ու անըմբռնելի, որքան և բնության քմայքները:

Թեև արտաքին անհրաժեշտությունը տիրապետող է հասարակության պատմության մի հսկայական ժամանակահատվածում, բայց այն բնական անհրաժեշտության դրսևորման միակ ձևը չէ, որովհետև մարդու կյանքի պահպանությունն ու վերարտադրությունը մի պարզ բիոլոգիական պրոցես չէ, այլ միաժամանակ ենթադրում է կյանքի նյութական պայմանների, առաջին հերթին արտադրության միջոցների արտադրություն և վերարտադրություն:

Իրենց պահանջմունքներին համապատասխան վերափոխելով բնությունը, մարդիկ՝ թեկուզ և առանց գիտակցելու իրենց գործունեության հասարակական հետևանքները, փոխում են այն պայմանները, որոնց միջով ճանապարհ է հարթում անհրաժեշտությունը: Հասարակության փոփոխված նյութական պայմաններին համապատասխան փոխվում են անհրաժեշտության դրսևորման ձևերը:

Այսպես, մինչև հավելյալ արդյունքի հանդես գալը, գոյության միջոցների արտադրությունը ենթադրում էր կոլեկտիվիստական հարաբերություններ: Արտադրողական ուժերի զարգացման խղճուկ պայմաններում, մարդկանց միայն այսպիսի միավորումը կարող էր ապահովել արտադրության զարգացումը, որը վաղ թե ուշ բնականաբար պետք է հանգեցներ և հանգեցրեց մի այնպիսի վիճակի, երբ հասարակությունն, ամբողջությամբ վերցրած, սկսեց ավելի շատ արտադրել, քան պետք էր իր գոյությունը պահպանելու համար: Սա մի հեղաշրջում էր հասարակական կյանքում, հասարակական կեցության մեջ:

Հասարակության զարգացման սկզբնական էտապում, երբ արտադրության միջոցներն այնքան պարզունակ էին և մարդկանց գիտելիքներն ու փորձն էլ աղքատիկ, որ համայնքի համատեղ ջանքերով հնարավոր էր մասնագիտանալ արտադրության միայն մի ճյուղի գծով, արտադրողների տարբեր խմբերի մոտ կարող էին ստացվել որոշակի բարիքների ավելցուկներ: Սա էլ արդյունքների կանոնավոր փոխանակության հիմքը դրեց: Մարդիկ սկսեցին արտադրել ոչ միայն իրենց, այլև նրանց համար, որոնց չգիտեին: Իսկ որպեսզի հնարավոր լիներ իրացնել փոխանակությունը, առանձին համայնքները, իսկ հետո նաև առանձին մարդիկ միմյանց պետք է դիտեին իբրև փոխանակության ոլորտի մեջ ներգրավված իրերը տնօրինելու «իրավունքով» օժտված սեփա-

[1] Տպագրվում է հարցադրման կարգով: Խմբ.:

կանատերեր: Հենց այստեղ սոցիալական անհրաժեշտության մեջ հանդես է գալիս մի նոր էական մոմենտ: Հասարակության և բնության միջև կատարվող նյութափոխանակությունը միջնորդավորվում է առանձին համայնքների միջև, իսկ այնուհետև հասարակական բջիջների ներսում տեղի ունեցող ապրանքափոխանակությամբ, որը և դառնում է հասարակության պահանջմունքների բավարարման կայուն ձև: Այդ ձևի հիմքում ընկած էր արդեն ոչ թե հասարակական, այլ հասարակականից զատ, անհատների տնտեսական շահը, որի թելադրանքով էլ ծավալվում է արտադրությունը: Սա հենց տնտեսական անհրաժեշտությունն է, որը նշանավորում է հասարակության զարգացման մի նոր աստիճան, նոր որակ:

Հասարակության գոյության փոփոխված պայմաններում բնական անհրաժեշտությունը չի կորչում, չի անհետանում, այլ փոխում է իր դրսևորման ձևը: «Անհրաժեշտությունը,— Լենինի բնորոշմամբ,— համընդհանուրն է կեցության մեջ» (**Երկեր**, հ. 38, էջ 260):

Արտադրողական ուժերի զարգացման այնպիսի պայմաններում, երբ արտադրության զարգացումը, գիտության ու արվեստների ծաղկումը տնտեսապես հնարավոր էր արտադրողների ստեղծած ավելցուկները բռնի կերպով օտարելու և հենց իրենց՝ արտադրողներին ուղղակի պատժիչ ենթարկելու միջոցով, սեփականատիրության նախկին ձևերի հիմքի վրա սկզբնավորվում և տիրապետող է դառնում ստրկատիրությունն իրեն ադեկվատ հասարակական հարաբերություններով: Բայց քանի որ ստրկատիրության, ինչպես նաև մասնավոր սեփականության վրա հիմնված ամեն մի հասարակության մեջ հասարակական արտադրությունը խարսխված է յուրացման մասնավոր ձևի վրա, ապա այդպիսի հասարակությունը հարատևել չի կարող, որովհետև այն տնտեսապես իրեն կարող է արդարացնել այնքան ժամանակ, քանի դեռ արտադրողական ուժերի զարգացումը բախման մեջ չի մտել բաշխման հին ձևի հետ:

Ստրկատիրական հասարակությունը կյանքի է կոչված տնտեսական անհրաժեշտության տրամաբանությամբ: Սակայն ուշագրավն այն է, որ ինչպիսի տնտեսական շարժառիթներով կյանքի է կոչվում ստրկատիրությունը, նույնպիսի շարժառիթների հակազդեցությունից էլ կործանվում է: Կործանվում է այն պարզ պատճառով, որ սպառում է արտադրությունն առաջ շարժելու և հասարակության պահանջմունքներին բավարարելու իր հնարավորությունները: Բայց սպառելով իրեն, հենց իր արգանդում նա սնում, աճեցնում է այն ուժերը, որոնք կոչված են կործանելու նրան և նոր ուղիներ բացելու արտադրողական ուժերի առաջընթացի, հետևաբար և, հասարակության զարգացման համար: Անցումը հասարակական-տնտեսական մի ֆորմացիայից մի ուրիշին, նորին, առաջավորին, պատմական անհրաժեշտություն է:

Պատմական անհրաժեշտությունը, որպես սոցիալական անհրաժեշտության դրսևորման ձև, ցույց է տալիս հասարակական պրոգրեսի անկասելիությունը: Անհրաժեշտությունն այնպիսի զարգացումն է, որ տվյալ պայմաններում չի կարող տեղի չունենալ:

ՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅԱՆ իմացությունը սովորաբար սկսվում է երևույթի կամ երևույթների խմբի կրկնելիության, դրանց համընդհանուր, փոխադարձ կապի, այսինքն՝ որոշակի օրինաչափության ընկալումից, որը սակայն բավարար հիմք չէ կոնկրետ երևույթների



ներքին էությունը բացահայտելու, դրանք ճանաչելու համար: Անհրաժեշտության իմացությունը մի պրոցես է, որն ընթանում է օրինաչափության ընկալումից դեպի այդ օրինաչափությամբ ընդգրկված երևույթի կամ երևույթների խմբի տարբեր կողմերի խոր, էական, կայուն, կրկնվող կապերի կամ փոխադարձ կախվածության, այսինքն՝ օրենքների հայտնագործումը: Օրենքը և էությունը,— Լենինի բնորոշմամբ,— միասեռ (միևնույն կարգի) կամ, ավելի ճիշտ՝ նույն աստիճանի հասկացություններ են, որոնք արտահայտում են մարդու կողմից երևույթների աշխարհի իմացության խորացումը» (**Երկեր**, հ. 38, էջ 180): Իմացության հենց այդ խորացումը հանգեցնում է անհրաժեշտության իմացությանը, որովհետև վերջին հաշվով «բնության բոլոր օրենքները» իրենց ամբողջության մեջ՝ հենց ինքը՝ անհրաժեշտությունն է (Նույն տեղում, էջ 79):

Օրենքի մեջ, ինչպես կիզակետում, արտահայտվում է օրինաչափության և անհրաժեշտության անխզելի կապն ու միասնությունը: Օրենքը, մի կողմից կոնկրետի մեջ համընդհանուրի, այլ կերպ ասած անհրաժեշտության դրսևորումն է, իսկ մյուս կողմից՝ համընդհանուրի դրսևորման մասնավոր ձևն է, որպես առանձին օրինաչափ կապ:

Օրենքները պայմանավորված են անհրաժեշտությամբ և հանդես են գալիս որպես անհրաժեշտության պատմական դրսևորման մի ձև: Հետևաբար, նրանք կարող են առկա լինել ու գործել որոշակի պայմաններում: Այս առումով, հասարակական օրենքները կարող են դրսևորվել որպես հնարավոր տենդենց, երբ օրենքի գործողության պայմանները դեռևս լրիվ հասունացած չեն և իրականությունը կարգավորող կազմակերպական սկզբունք: Այսպես, արժեքի օրենքը ծնվում է ապրանքափոխանակության, ապրանքային արտադրության հետ միասին: Փակ, բնատնտեսության պայմաններում այն հանդես է գալիս դեպքից-դեպք, պատահականորեն, որպես շարժման հնարավոր տենդենց, իսկ կապիտալիստական հարաբերությունների պայմաններում, երբ ապրանք է դարձել նաև աշխատուժը, այն դրսևորվում է իր ամբողջ ուժով, որպես կապիտալիստական արտադրական հարաբերությունները կարգավորող սկզբունք:

Կապիտալիզմն աննախընթաց չափով զարգացնում է արտադրողական ուժերը, արտադրությունը կենտրոնացնում մի բուռն մոնոպոլիաների ձեռքում, որով և նյութական նախադրյալներ է ստեղծում ամբողջ հասարակության մասշտաբով պլանավորման անցնելու համար: Դրան հակադրվում են կապիտալիստական արտադրական հարաբերությունները, սակայն այս փաստից չի կարելի ենթադրել, թե այստեղ ամբողջովին բացառվում է պլանայնության սկզբունքը: Կապիտալիզմի պայմաններում պլանայնությունը բացառվում է ողջ հասարակության մասշտաբով, բայց որպես զարգացման հնարավոր տենդենց, այն իր արտահայտությունն է գտնում արտադրության առանձին, մենաշնորհյալ ճյուղերում:

Սոցիալիստական հեղափոխությունն արտադրության միջոցները դարձնելով հանրության սեփականությունը, լայն հնարավորություններ է ստեղծում ողջ հասարակության մասշտաբով տնտեսության գիտակցական պլանային կառավարման համար: Սակայն այստեղ էլ պլանաչափ զարգացման օրենքը խոչընդոտների կարող է հանդիպել, եթե դրա համար չկան անհրաժեշտ նյութական նախադրյալներ: Սովետական գյուղում վաղուց արդեն հաստատվել

են սոցիալիստական արտադրահարաբերությունները, բայց ոչ մեկի համար գաղտնիք չէ, որ գյուղատնտեսության պետական պլանավորումը միշտ չէ, որ կարող է հանգեցնել ցանկալի արդյունքի, քանի դեռ կոմպլեքս ձևով լուծված չէ ոռոգման, մեքենայացման և քիմիացման հարցը։

Նույնը տեղի է ունենում նաև հասարակական մյուս օրենքների հետ։ Այստեղից հետևում է՝ օրենքները համարժեք են իրենց գործողության պայմաններին։ Բայց և մարդն անզոր չէ հասարակական օրենքների հանդեպ։ Իր պահանջմունքներին համապատասխան վերափոխելով հասարակության գոյության նյութական պայմանները, նա օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում հին օրենքների անհետացման և նորերի առաջացման համար, անկախ այն բանից նա ցանկացել է այդ, թե չի ցանկացել։ Մարդիկ կարող են ընթանալ իրադարձությունների առջևից և հաջողություն ունենալ, երբ գիտեն, ճանաչել են հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները և գործում են, նկատի ունենալով, ղեկավարվելով այդ օրենքներով։

«Ազատությունը,— էնգելսի բնորոշմամբ,— ոչ թե երևակայական անկախությունն է բնական օրենքներից, այլ այդ օրենքների իմացությունն է դրա շնորհիվ ստացվող հնարավորությունն՝ այդ օրենքները պլանաչափ ձևով ծառայեցնելու որոշ նպատակների համար» (ԱՆՏԻ-ԴՅՈՒՐԻՆԳ, Երևան, 1936, էջ 151)։

Ազատության և անհրաժեշտության մարքսիստական ըմբռնումը հենվում է այն իրողության վրա, որ ազատություն նվաճելով անհրաժեշտությունը չի կորչում, չի անհետանում։ Տարբերությունն այն է, որ եթե անհրաժեշտությունն առաջ կույր էր՝ դառնում է հասկանալի։ Մարդը ձերբազերծվում է ոչ թե բնության և հասարակության զարգացման օրենքներից, այլ նրանց նկատմամբ անզորությունից, ոչ թե անհրաժեշտությունից, այլ անհրաժեշտության չիմացությունից։

Ազատության և անհրաժեշտության մարքսիստական մեկնաբանման երկրորդ էական կողմն այն է, որ նա դուրս է գալիս հայեցողական ճանաչողության նեղ շրջանակներից և շեշտը դնում է մարդու նպատակադիր գործունեության վրա։ Ճանաչելով անհրաժեշտությունը, մարդն իր առարկայական-վերափոխիչ գործունեությամբ ի վիճակի է ստեղծելու ազատության իրացմանը նպաստող նոր նախադրյալներ։ Բայց այդ բանը նա կարող է անել օբյեկտիվ իրականության և նրա ընդերքում թաքնված ռեալ հնարավորության սահմաններում միայն։ Այդ պատճառով էլ իրական ազատության համար, բացի իդեալիստական կամքից, պահանջվում են «...խիստ շոշափելի, հույժ նյութական պայմաններ» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 2, էջ 104)։

Մարքսիստական աշխարհայեցողության դիտակետից ազատությունը, որպես մարդկային պրակտիկ գործունեության արդյունք, հնարավոր է անհրաժեշտության հիմքի վրա և նրա ընձեռած հնարավորության սահմաններում։

Փիլիսոփաներ Ի. Էլեզի և Գ. Դավիդովայի դիպուկ արտահայտությամբ «Մատերիալիստական դիալեկտիկան գիտություն է անհրաժեշտության մասին։ Այն միաժամանակ գիտություն է ազատության մասին, այսինքն մարդկային ազատ գործունեության տեսություն է։ Այստեղ իրականում թաքնված է մի պրոբլեմ, որը, որպես անլուծելի, հարյուրամյակներ շարունակ ձևակերպել և շարունակում է ձևակերպել բուրժուական փիլիսոփայական միտքը. մարդկային ազատության և օբյեկտիվ անհրաժեշտության համաձայնեցման պրոբլեմը» («Вопросы философии», 1965, № 9, էջ 17)։



ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅԱՆ ԻՄԱՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ


ԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ և բնության պատմության մեջ մարդու ստեղծարար դերի մարքսիստական մեկնաբանությունը բխում է ճանաչողության մատերիալիստական այն ըմբռնումից, որ արտաքին աշխարհի և մտածողության օրենքները կազմում են՝

«...երկու կարգի օրենքներ, որոնք ըստ էության նույնական են, իսկ իրենց արտահայտությամբ տարբեր են միայն այն չափով, որ մարդկային գլուխը կարող է կիրառել դրանք գիտակցաբար, մինչդեռ բնության մեջ, մինչև այժմ մեծ մասամբ մարդկային պատմության մեջ ևս դրանք իրենց համար ճանապարհ են հարթում անգիտակցաբար, արտաքին անհրաժեշտության ձևով՝ թվացող պատահականությունների անվերջ շարքում» К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 21, էջ 302)։

Ըստ որում անհրաժեշտության իմացության հիմքը աշխարհի վերափոխումն է մարդու կողմից, նրա նպատակադիր գործունեությունը՝ պրակտիկան։ Սակայն որքան էլ կարևոր է օրենքների իմացությունը և դրանց գիտակցական կիրառումը, այնուամենայնիվ, ազատության միակ և վերջնական պայմանը չէ։

«Այն ամենը»— գրում է Մարքսը,— որ շարժման մեջ է դնում մարդկանց, պետք է անցնի նրանց գլխի միջով, բայց թե ինչ տեսք է ընդունում այն այդ գլխի մեջ շատ մեծ չափով կախված է հանգամանքներից» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 21, էջ 308)։

Հենց այն փաստը, որ մարդկային հասարակությունը ծագել է տարերայնորեն, որպես բնությունից սկզբնավորված և բնությունից պաշտպանվելու մի միջոց, խոսում է այն մասին, որ այդ սոցիալական ուժը չէր կարող տվյալ անհատներին ներկայանալ և նրանց կողմից ընկալվել որպես իրենց միացյալ ուժ։

Դեռ ավելին, այդ ուժը նրանց ներկայանում է «...որպես մի ինչ-որ օտար, իրենցից դուրս կանգնած իշխանություն, որի ծագման ու զարգացման տենդենցների մասին ոչինչ չգիտեն, հետևաբար, նրանք չեն կարող տիրապետել այդ ուժը,— ընդհակառակը, վերջինս անցնում է ոչ միայն մարդկանց կամքից ու գիտակցությունից անկախ, այլև այդ կամքին ու վարքագծին ուղղություն տվող զարգացման մի շարք փուլեր ու աստիճաններ» (К. Маркс и Ф. Энгельс, соч. т. 3, էջ 33)։

Հասարակական կյանքն ավելի է բարդանում աշխատանքի հասարակական բաժանման և մասնավոր սեփականության առաջացման հետևանքով։ Բնության ուժերի կողքին գործուն դերի մեջ են մտնում հասարակական հակադիր ուժերը՝ դասակարգերը, որոնց ծագման, զարգացման և շարժման տենդենցների մասին մարդիկ նույնպես ոչինչ չգիտեն։ Այստեղ շահագործվողները կորցնում են իշխանությունն իրենց արտադրական գործունեության նկատմամբ, որովհետև վեր են ածվում ուրիշի կամակատարի։ Սեփականատերերը նույնպես ի վիճակի չեն դառնալու կեցության տերը, որովհետև յուրաքանչյուր ոք արտադրում է ինքն իր համար, փոխանակության միջոցով հոգալով իր կարիքները։ Այսպիսի պարագաներում տնտեսական օրենքները, էնգելսի արտահայտությամբ՝

«Երևան են գալիս իբրև օտար, սկզբում մինչև անգամ անըմբռնելի ուժեր, որոնց էությունը պետք է դեռ ջանադիր կերպով ուսումնասիրվի և հետազոտվի։ Ապրանքային արտադրության այս տնտեսական օրենքները կերպափոխվում են արտադրության այս ձևի զարգացման տարբեր աստիճաններին զուգընթաց, բայց ընդհանուր առմամբ քաղաքակրթության ամբողջ դարաշրջանը գտնվում է նրանց իշխանության ներքո» (Ընտանիքի մասնավոր սեփականության և պետության ծագումը, Երևան, 1940, էջ 220)։

**Բացի դրանից, մասնավոր սեփականությունը** հանգեցնում է նրան, որ աշխատանքի հասարակական բաժանումը ընդունում է աշխատավոր մարդուն

հատուկ կենսական ֆունկցիաների՝ հոգևոր ստեղծագործության, իր աշխա-
տանքի արդյունքի կարգադրման, արտադրության ղեկավարման և այլնի
«օտարման» ձև: Դրանք անձնավորվում են պետության, շուկայի, եկեղեցու
տեսքով, ձեռք են բերում որոշ ինքնուրույնություն և աշխատավորներին հա-
կադրվում են որպես նրանց նկատմամբ արտաքին և նրան թշնամի ուժ: Հենց
այս էլ ընկած է կյանքի կրոնական և իդեալիստական մեկնությունների հիմ-
քում: Իրականության իդեալիստական պատկերացումները հասարակության
տարբերային զարգացման, մարդու «օտարման» փաստի յուրօրինակ արտացո-
լումն են գիտակցության մեջ:

Իդեալիստական, կրոնական պատկերացումները մարդուն զրկում են
հասարակությունը հեռանկարում տեսնելու և այն արմատական վերափոխման
ենթարկելու հնարավորությունից, բայց ոչ երբեք իր վիճակը, ուժերը և ունա-
կությունները գնահատելու, դրանք, թեկուզ և միստիկ ձևով գիտակցելու ունա-
կությունից: Մասնավոր սեփականատիրական հասարակության մեջ, ուր աշ-
խատավորների կեցությունը փաստորեն հասցվում է «իրերի» կեցության սա-
տիճանի, նրանք, իրենց ստրկական վիճակը գիտակցում և ըմբոստանում են
տիրապետող կարգերի դեմ, երբ սեփականության և բաշխման հին ձևը սպա-
ռել է իրեն և արգելակում է արտադրողական ուժերի զարգացմանը և նոր, ան-
լուր տառապանքներ է բերում աշխատավորներին: Բայց նույնիսկ այն դեպ-
քում, երբ աշխատավորները գիտակցել են տիրող կարգերի կործանման ան-
հրաժեշտությունը, հեղափոխական շարժումը չի կարող հանգեցնել ազատու-
թյան, քանի դեռ կյանքի վերաբերյալ նրանց պատկերացումները և պահանջ-
ները դուրս չեն գալիս մասնավոր սեփականության շրջանակներից:

Ո՞վ հայտնի չէ, որ առանց իմանալու մրցակցության օրենքը կապիտա-
լիստը ոչ մի օր չի կարող գոյություն ունենալ: Իր աշխատուժը կապիտալիս-
տական շուկայում վաճառքի հանած պրոլետարը նույնպես լավ գիտի՝ ասենք
արժեքի օրենքը և որպեսզի պահպանի իր գոյությունը, նա ևս իր հնարավո-
րության սահմաններում օգտագործում է այն: Բայց ինչպես հայտնի է, կա-
պիտալիստական հասարակության օրենքների իմացությունն ազատության
դափնիներ չի բերում ոչ կապիտալիստին և ոչ էլ պրոլետարին: Հենց այս
նկատի ուներ էնգելսը, երբ նշում էր, որ հասարակական կարգավորումն իրա-
գործելու համար բացի իմացությունից անհրաժեշտ է լիակատար հեղաշրջում
«...մինչև այժմ գոյություն ունեցող մեր արտադրաեղանակի մեջ և, դրա հետ
միասին, մեր ամբողջ ներկայիս հասարակարգի մեջ» (Բնության դիալեկտի-
կա, էջ 200):

Ինչ վերաբերում է բնության օրենքների իմացությանը և գիտակցական
կիրառմանը, ապա այստեղ ևս մարդն ամենազոր չէ: Մարքսիստական իմա-
ցաբանության տեսանկյունից արտաքին աշխարհի և արտաքին բնության
օրենքները «...միանգամայն իմանալի են մարդու համար, բայց երբեք չեն
կարող իմացվել մինչև վերջը» (Վ. Ի. ԼԵՆԻՆ, Երկեր, հ. 38, էջ 246): Հետևա-
բար, բնության նկատմամբ մարդու տիրապետությունը հարաբերական է և,
ինքնըստինքյան վերցրած, չի կարող ազատության չափանիշ համարվել:

Սակայն, սա նշանակում է արդյո՞ք բնության նկատմամբ մարդու տիրա-
պետության սոցիալական դերի թերագնահատում: Ամենևին ոչ: Էնգելսը գըտ-
նում էր, որ արտադրողական հզոր ուժերի օգնությամբ միայն՝



«...Կլինի կգա մի հասարակարգ, որտեղ այլևս բնավ չեն լինի ոչ դասակարգային
տարբերություններ, ոչ անհատական գոյությունը պահպանելու միջոցների հոգսեր և մի-
այն որտեղ խոսք կարող է լինել իսկական մարդկային ազատության մասին, արդեն
ճանաչված բնական օրենքների հետ ներդաշնակված կյանքի մասին» (Անտի-Դյուրինգ,
էջ 152):

Բանն այն է, որ բնության և մարդկանց միջև հարաբերությունը գործնա-
կան կարգի է, և դրսևորվում է արտադրության միջոցով: Իսկ արտադրությունը
բնության նկատմամբ մարդկանց այնպիսի հարաբերություն է, որն անհնար
է առանց արտադրող էակների միջև գոյություն ունեցող որոշակի հարաբերու-
թյունների: Բնության նկատմամբ յուրահատուկ մարդկային հարաբերություն-
ներն անխուսափելիորեն ենթադրում և պահանջում են որոշակի արտադրա-
կան, հասարակական հարաբերություններ, հասարակական կեցության և հա-
սարակական գիտակցության չինելիություն, որոնց շրջանակներում կարող է
իրացվել ազատությունը:

Հասարակության պատմական առաջընթացը դիտելով որպես վերջին հաշ-
վով արտադրողական ուժերի զարգացման արդասիք, մարքսիզմը ելնում է այն
ըմբռնումից, որ քանի դեռ մեկի բարեկեցությունը, հետևաբար ազատ զար-
գացումը, հնարավոր է մեկ ուրիշի աշխատանքի հաշվին, հասարակությունն
առաջադիմում է աշխատանքի բռնադատման, աշխատավորական զանգված-
ների ճնշման ու շահագործման հաշվին: Բայց երբ արտադրաուժերն աճում են
այնքան, որ յուրացման մասնավոր սեփականատիրական հարաբերություն-
ները կասեցնում են նրանց առաջընթացը, հասարակությունը կարող է զարգա-
նալ միայն ճնշման ու շահագործման բոլոր ձևերի վերացմամբ, այսինքն
մասնավոր սեփականության բացասմամբ: Այստեղից էլ բխում է կապիտա-
լիզմի խորտակման և սոցիալիզմի հաստատման անհրաժեշտությունը:

Ինչպես ապացուցվել է պատմական փորձով, ազատությունը նվաճելու
առաջին, վճռական քայլը մասնավոր սեփականության վերացումը և արտա-
դրության միջոցների հանձնումն է հանրության տնօրինությանը, որը և հնա-
րավորություն է տալիս արտադրությունը պլանաչափորեն ուղղել հենց իրենց՝
նյութական բարիքներ ստեղծողների պահանջմունքների բավարարմանը: Հա-
սարակության կենսագործունեության հիմքում դնելով «ով կաշխատի նա կու-
տի» սկզբունքը, սոցիալիզմը հասարակությունը վեր է ածում շահերի և նպա-
տակների ընդհանրությամբ զոդված արտադրողների ընկերության, ուր մեկի
ազատ զարգացումը հանդիսանում է բոլորի ազատ զարգացման պայմանը:
Այստեղ, ուղղակի և անմիջական կապ է ստեղծվում գիտակցված գործունեու-
թյան և արդյունքների միջև, որը և հնարավորություն է տալիս մարդուն իր
գործունեությունն ընկալել որպես հասարակական օրենքների գործողություն,
հասարակական առաջընթացի անհրաժեշտ պայման:

## ՆԵՐՔԻՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆ

ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆՆ էնգելսը բնորոշում է ոչ միայն որպես իմացության
վրա հիմնված մարդու իշխանություն բնության, այլև մարդու՝
ինքն իր նկատմամբ (տե՛ս, Ֆ. ԷՆԳԵԼՍ, Անտի-Դյուրինգ, Հայպետ-
հրատ, 1936, էջ 152): Խոսքն այստեղ ոչ միայն արտաքին ուժերը,
այլև մարդու ներքին հոգեկան և ֆիզիկական կարողությունները որոշակի
ձևով, որոշակի նպատակների իրականացմանը ծառայեցնելու մասին է:

Մարդը կոչված է վերափոխելու աշխարհը, բայց նա անկարող կլինի այդ անելու, քանի դեռ չի գիտակցել իր միավորման ուժը և անձնական գործունեությունը նպատակասլաց ձևով իր դասակարգի, աշխատավոր մասսաների, ողջ ժողովրդի շահերի հետ զուգակցելու անհրաժեշտությունը։

Այստեղ ևս որոշիչը օբյեկտիվ նախադրյալներն են։

Մարդկությանը ճնշման ու շահագործման լծից ազատագրելու համար, նախ և առաջ անհրաժեշտ է այնպիսի դասակարգի գոյությունը, որը Մարքսի արտահայտությամբ խոսում է համամարդկային անունից, և որի պայքարը ենթարկված չէ ոչ մի առանձնահատուկ շահի։ Այդպիսի դասակարգ է պրոլետարիատը, որի համար մարդավայել ապրելու միակ պայմանը արտադրության միջոցների մասնավոր սեփականության վերացումն է և այնպիսի հասարակարգի հաստատումը, որը աշխատավորին է վերադարձնում նրա աշխատանքի պտուղները, ստեղծագործության բերկրանքը, իր ունակությունները զարգացնելու և իր իսկ սեփական ճակատագիրը տնօրինելու ազատությունը։

Բայց պրոլետարիատը ոչ միայն ապրուստի, այլև պայքարի նյութական միջոցներից զուրկ դասակարգ է։ Հետևաբար նա կարող է հաղթանակի հասնել միայն մի ճանապարհով՝ հին կարգերին հակադրելով իր դասակարգային համերաշխությունը, կարգապահությունն ու կազմակերպվածությունը։

Կապիտալիզմը ծայրահեղ չափերի հասցնելով արտադրության կենտրոնացումն ու համակենտրոնացումը, բանվորների հսկայական զանգվածներ է կուտակում մի ձեռնարկությունում, մի քաղաքում, մի երկրում, որը և օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում պրոլետարիատի կողմից միացյալ ուժը գիտակցելու և միասնական գործողությունների դիմելու համար։

Բացի դրանից, կապիտալիստական մեքենայական արտադրությունը, հատկապես արտադրության ավտոմատացումը մարդուն դարձնելով մեքենայի կցորդը, նրան վարժեցնում է ենթարկվելու թեկուզ և իրեն խորթ մի ինչ-որ մեխանիզմի համաչափ ռիթմին։ Փողոց շպրտվելու սպառնալիքի տակ պրոլետարիատը վարժվում է նաև կարգապահական որոշակի կանոնների անթերի կատարմանը։ Սա իհարկե կարիքի կարգապահություն է, առանց որի կապիտալիստները չեն կարող արտադրությունը կազմակերպել այնպես, որ առավելագույն շահույթ ստանան։ Այսպիսի կարգապահության դեմ շատ հաճախ բռնկվում են բողոքի ցույցեր ու գործադուլներ։ Բայց պայմանական ռեֆլեքսը մնում է և այն բյուրեղանում ու վեր է ածվում սովորույթային հզոր ուժի, երբ կարգապահության ու կազմակերպվածության պահանջը բխում է հենց իր՝ բանվոր դասակարգի ազատագրության պայքարի և կամ էլ նոր, սոցիալիստական հասարակության կառուցման շահերից։ Այլ կերպ ասած, կապիտալիզմը ոչ միայն կյանքի է կոչում, այլև ֆիզիկապես միավորում և հոգեբանորեն նախապատրաստում է այն ուժը, որը պետք է խորտակի հինը և կառուցի նորը։

Սակայն, կլանված լինելով դառը զրկանքների առօրյա հոգսերով, պրոլետարիատն իր մտավոր կարողություններով ի վիճակի չէ սեփական ուժերով կռելու հեղափոխական տեսություն։ Այդ տեսությունը մշակվում և բանվորական շարժման մեջ մտցվում է դրսից, մարքսիստ տեսաբանների կողմից, որոնք աշխատանքի զարգացման և նրա լիակատար ազատագրման մեջ գտնելով հասարակության առաջընթացի բանալին, հայացքներն ուղղում են բանվոր դասակարգի կողմը և հասարակական կյանքի մատերիալիստական վերլուծությամբ, հայտնագործում են առանց դասակարգերի, և առանց շահագործման հասարակության ռեալ ուղիները։



Պրոլետարիատին զինելով հասարակության զարգացման օրինաչափությունների և հենց իր պատմական դերի իմացությամբ, մարքսիզմ-լենինիզմը արագացուցիչ դեր է կատարում արտաքին անհրաժեշտությունը՝ ներքին, գիտակցված անհրաժեշտության փոխարկելու գործում։ Սակայն անհրաժեշտության գիտակցումը, որը վերջին հաշվով որոշում է ոչ միայն ողջ բանվոր դասակարգի, այլև առանձին անհատների գործունեության բնույթն ու եղանակները, գիտակցության մեջ իրականության մի պարզ պատճենահանում, կամ գիտելիքների պասսիվ յուրացում չէ։ Ինչպես բնական հարստությունները հասարակայնորեն չեն գործում առանց ներգրավվելու աշխատանքային նյութական պրոցեսի մեջ, այնպես էլ պրոլետարիատը չի կարող «ինքնին» դասակարգից վերածվել «ինքն իր համար, դասակարգի» առանց ներգրավվելու հեղափոխական պայքարի մեջ։

Անհրաժեշտության իմացությունը ծնվում է հեղափոխական պրակտիկայից և ստուգվում է պրակտիկայով։ Հենց այդ ստուգման ընթացքում է, որ մարդը ճշտում, ներքնապես գիտակցում է իր գործունեության պատճառները, իր վարքագծի գաղափարական ու բարոյական շարժառիթները, իր ներքին կարողությունները, տիրապետում իրեն և իր «եսը» գիտակցաբար ձուլելով հզոր «մենքի» հետ ակտիվորեն վերափոխում է աշխարհը սեփական պատկերացումներին ու շահերին համապատասխան։ Սա հենց ազատությունն է, որը կարելի է բնորոշել նաև, որպես գիտակցման վրա հիմնված գործունեություն։

Անհրաժեշտությունը, գիտակցվելով մարդու կողմից, փոխակերպվում է ներքին անհրաժեշտության, որն արդեն չի կարող դրսևորվել այլ կերպ, քան սուբյեկտի միջոցով և սուբյեկտիվ ձևերով։ Մարդը, որն առաջ հանդես էր գալիս որպես պատմության օբյեկտ, դառնում է նրա սուբյեկտը։

## ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԴԱՌՆԱԼՈՎ ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ ՉԻ ԱՆՀԵՏԱՆՈՒՄ

ՄԱՐԴՆ է ազատության մարքսիստական տեսության ելակետը, որպես գիտակից, առարկայական աշխարհը և իր իսկ սեփական բնությունը վերափոխող էակի։

«Առարկայական աշխարհի պրակտիկ ստեղծագործումը,— գրում է Մարքսը,— անօրգանական բնության վերամշակումը մարդու ինքնահաստատումն է, որպես գիտակից, ցեղային (հասարակական— Հ. Հ.) էակի... ճիշտ է կենդանին նույնպես արտադրում է։ Բայց կենդանին արտադրում է միայն այն, ինչի անմիջական կարիքն ունի ինքը և կամ իր ձագը. նա արտադրում է միակողմանիորեն, այն ժամանակ, երբ մարդն արտադրում է ունիվերսալ կերպով. նա արտադրում է միայն անմիջականորեն ֆիզիկական պահանջմունքի իշխանության ներքո, մինչդեռ մարդն արտադրում է՝ նույնիսկ ազատ լինելով ֆիզիկական պահանջմունքից, և իսկական իմաստով միայն այն ժամանակ է արտադրում, երբ նա ազատ է դրանից (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, էջ 566)։ Ավելի ուշ՝ Մարքսն ուղղակի է դնում հարցը. «Իրականում ազատության թագավորությունը սկսվում է միայն այնտեղ, ուր վերանում են կարիքի ու արտաքին նպատակահարմարությամբ թելադրվող աշխատանքը» (Կապիտալ, հ. 3-րդ, մաս 2-րդ, էջ 360)։

Ազատության իրական թագավորության սկիզբը ազդարարում է պրոլե-

տարական հեղափոխությունը: Սակայն պրոլետարական հեղափոխության հաղթանակով, միանգամից չեն ստեղծվում լիակատար ազատության ինչպես նյութական, այնպես էլ հոգեկան նախադրյալները:

Սոցիալիզմը բնութագրելով, որպես կոմունիզմի առաջին փուլ, Լենինը նշում է.

> «Ջախջախելով Լասսալի մանրբուրժուական մութ ֆրազը «հավասարության» ու «արդարության» մասին ընդհանրապես, Մարքսը ցույց է տալիս կոմունիստական հասարակության զարգացման ընթացքը, հասարակություն, որն ստեղծված է նախ ոչնչացնել միայն այն «անարդարությունը», որ արտադրության միջոցները հափշտակել են առանձին մարդիկ, և որն անկարող է միանգամից ոչնչացնել, նաև հետագա անարդարությունը, երբ սպառման առարկաները բաշխվում են «ըստ աշխատանքի» (և ոչ թե ըստ պահանջմունքների)» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 606—607):

Այստեղից հետևում է, որ սոցիալիզմի օրոք դեռևս պահպանվում է տնտեսական անհրաժեշտությունը, բայց արմատապես փոխակերպված ձևով: Եթե նախորդ հասարակարգերում տնտեսական անհրաժեշտության հիմքը՝ այլ կերպ ասած՝ արտադրության շարժիչ ուժը մասնավոր շահն էր, ապա սոցիալիզմի օրոք հասարակական շահն է՝ արտադրության զարգացման յուրահատուկ օրենքներով: Այստեղ արդեն մարդը դադարում է տնտեսական անհրաժեշտության ստրուկը լինելուց: Ինչպես աշխատանքի պրոցեսում նա մարդայնացնում է բնությունը, այնպես էլ նա մարդայնացնում է արտադրության պրոցեսը, իսկ դրա հետ միասին՝ մարդկանց միջև բոլոր հարաբերությունները, որոնք այսուհետև հանդես են գալիս, որպես ընկերական համագործակցության, փոխօգնության, հանրային հարստության նկատմամբ հոգատարության հարաբերություններ: Դրա շնորհիվ բազմապատկվում են բնության վրա իշխելու հասարակության հնարավորությունները, որը և ճանապարհ է հարթում ամենօրյա հոգսերի բեռը մարդու ուսերից ընդմիշտ թոթափելու համար:

Կոմունիզմի օրոք, երբ ամբողջովին կանհետանան քաղաքի և գյուղի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած տարբերությունները, երբ աշխատանքը կդառնա մարդու ներքին, ստեղծագործական պահանջմունքը, իսկ նյութական բարիքները կհորդեն լիառատ կերպով, գուցե և ապագայի մարդկանց տարօրինակ թվան այն ժամանակները, երբ մարդիկ աշխատել են որպեսզի ապրեն, իսկ «տնտեսական անհրաժեշտություն» հասկացությունը հավանաբար կդառնա այնպիսի մի առեղծված, ինչպես հին Եգիպտոսի չվերծանված սեպագրերը: Այսօր ոմանց համար այս համեմատությունները թերևս հիպերբոլիկ թվան, բայց այն որոշակի պատկերացում է տալիս ազատության լիակատար թագավորության մասին, ուր բոլոր արժեքներից մեծագույնը կդառնա մարդը:

Շահագործողական հասարակության պայմաններում անհրաժեշտության պրակտիկ, առօրյա դրսևորման ձևը արտաքին կարիքն է: Այստեղ տիպականը մարդկային պահանջմունքների աղքատ, զուտ իր տնտեսական շահը հետապնդող անհատն է, որն իր ջանքերի հատուցումը փնտրում է իրերի մեջ: Կոմունիզմը մարդկային գործունեությունն ազատագրում է արտաքին իրային կապանքներից: Այստեղ տիրապետողը մարդկային հարուստ պահանջմունքներով մարդն է, որն իր ջանքերի հատուցումը գտնում է աշխատանքում, որպես ինքնաբավարարման հագուրդ: Առաջին դեպքում մարդու տենչանքի առարկան իրն է, երկրորդ դեպքում՝ մարդը, չնայած երկու դեպքում էլ մարդ-



կային ուժի ծաղկումը հնարավոր է արտադրության զարգացման հիմքի վրա միայն:

> «Ինչպես վայրենին,— գրում է Մարքսը,— իր պահանջմունքները բավարարելու համար,— իր կյանքը պահպանելու և վերարտադրելու համար ստիպված պայքարել է բնության դեմ, այնպես էլ պետք է պայքարի քաղաքակրթված մարդը, պետք է պայքարի բոլոր հասարակական ձևերի և արտադրության բոլոր հնարավոր եղանակների դեպքում: Նրա զարգացմամբ ընդլայնվում է բնական անհրաժեշտության այդ թագավորությունը, որովհետև ընդլայնվում են նրա պահանջմունքները, բայց միևնույն ժամանակ ընդլայնվում են նաև այն արտադրողական ուժերը՝ որոնք ծառայում են նրանց բավարարման համար: Ազատությունն այս բնագավառում ոչ այլ ինչ է, քան այն, որ սոցիալիզացված մարդը, միավորված արտադրողները բանականորեն կարգավորում են իրենց այս փոխանակությունը բնության հետ, դնում իրենց ընդհանուր վերահսկողության տակ, փոխանակ որ դա, իբրև կույր ուժ, գերիշխի նրանց վրա. դա կատարում են ուժի նվազագույն ծախսումով և այնպիսի պայմաններում, որոնք ամենից ավելի արժանավոր են իրենց մարդկային բնությանը և համապատասխան են նրան: Բայց և այնպես դա այնուամենայնիվ մնում է անհրաժեշտության թագավորություն. նրանից այն կողմը սկսվում է մարդկային ուժի զարգացումը, որն ինքնանպատակ է, սկսվում է ազատության իսկական թագավորությունը, որը սակայն կարող է ծաղկել սոսկ անհրաժեշտության այս թագավորության վրա, որպես իր պատվանդանի» (Կ. ՄԱՐՔՍ, Կապիտալ, 3-րդ հատոր, 2-րդ մաս, 1949 թ., էջ 360—361):



Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ

100-ամյակի առթիվ

# ԼԵՆԻՆԻ ԿԵՐՊԱՐԸ ՉԱՐԵՆՑԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

**Արվեստագետն իր երկրի, դասակարգի կգայարանն է, նրա կյանքը, աչքն ու սիրտը. նա իր դարաշրջանի ձայնն է—** Մ. Գորկու այս խոսքերը լիովին վերաբերում են Եղիշե Չարենցին, խիստ բնորոշ են նրա բազմաբեղուն գործունեությանը: Իրականության ամենատարբեր երևույթները բանաստեղծը մշտապես բացահայտել է նրա հեղափոխական պարգացման մեջ: Յուրաքանչյուր նոր գործում կգացվում է հեղինակի ստեղծագործական հարուստ փորձի և ռեալիստական մտածողության օրգանական միահյուսումը, որը և պայմանավորել է պատկերային սիստեմի և հոգեկան ապրումների անկրկնելի կոնկրետությունը:

Լենինյան շարքի բոլոր գործերում, որոնք իրենց արդիական գաղափարներով, իրականության հատկանշական արտացոլմամբ և ընդհանուր իմաստով մի հկոր ապոթեոզ են Լենինի անմահության, արտահայտվել է և բանաստեղծի, և դարաշրջանի գեղարվեստական մտածողության ինքնատիպությունը: Դրա համար էլ այդ երկերը իրենց ընդհանուր գեղագիտական նշանակությամբ և սովետական արվեստի զարգացման օրինաչափությունների տեսակետից աչքի ընկնող առաջընթաց քայլ են նաև սովետական գրականության մեջ: Բանաստեղծը այստեղ ևս հայտաբերում է մարդկային հոգեբանությունը խորապես և ճշմարտացի բացահայտելու իր մեծ ունակությունը: Այդ երկերում միաձուլված են քնարական, էպիկական և դրամատիկական սկզբունքները: Չարենցը հանդես է գալիս որպես ստեղծագործական լայն մտածողության ու մեծ դիապազոնի տեր արվեստագետ, բալլադի ժանրային գծերի փայլուն մարմնավորող:

Ստեղծագործական բարգավաճման մի նոր շրջան էր ապրում բանաստեղծը, անդուլ առաջ էր ընթանում իրադարձությունների թարմ հետքերով, և հենց դրանով է պայմանավորված նրա պոեզիայի քաղաքացիական ոգու ուժը և կենդանի կապը մարդկության ու ժողովրդի ճակատագրի հետ:

Չի կարելի անտեսել և այն հանգամանքը, որ բացի լենինյան շարքի գործերից, Չարենցի ամբողջ ստեղծագործությունը լի է Լենինին նվիրված բազմաթիվ հիանալի հատվածներով ու խտացված պատկերներով: Անմոռանալի տպավորություն են թողնում այդ ռեալիստական ընդհանրացումները **Ամենապոեմ, Մաճկալ Սաքոյի պատմությունը, Թուղթ բանաստեղծ բարեկամիս..., Հոկտեմբեր 25—26, 1917, Էպիկական ֆրագմենտներ, Կոմունարների պատը Փարիզում, Բալլադ 26-ի մասին,** Azs poetica, **Գովք խաղողի· գինու և գեղեցիկ դպրության, Տասնհինգ տարի, Տաղ սրտառուչ եղբայրական Վրաստանի, Երրորդ ալգաբաց** և շատ այլ գործերում:

Ակներև է, որ լենինյան շարքերում բանաստեղծի գաղափարական իդեալը արտահայտվում էր առավել ուղղակի և անմիջական: Այդ երկերը ցույց են տալիս բանաստեղծի առաջատար դերը սոցիալիստական ռեալիզմի զարգացման գործում: Չարենցը հայրենիքի հետ էր, ապրում էր ժամանակի շնչով, սովետական ժողովրդի խոհերով ու տենչերով և դրա համար էլ գերապանց հնչեղությամբ վերարտադրեց համաժողովրդական բուռն սերը Լենինի նկատմամբ: **Մաճկալ Սաքոյի պատմությունը** պոեմում բանաստեղծն արտահայտել է մասսաների խոր երախտագիտությունը առաջնորդի հանդեպ, մեծ վարպետությամբ գործադրելով ռեալիստական տիպականացման արվեստը:

Ման էր գալիս
Սաքոն էդ մեծ քաղքի միջին,
Ու մի օր էլ ասին՝ հեռվանց
Մարդ է գալիս— «ընկեր Լենին»,
Ասին՝ ինչքան աշխատավոր,
Ինչքան բանվոր, ռանչպար որ կա—
Էդ բոլորի մեծն է Լենին,
Էդ բոլորի առաջնորդը:
Ինչ բանվոր կար էդ մեծ քաղքում—
Դիփը վազկզալ գնաց, որ էն
Լենին ասած ընկեր մարդուն
Պատիվ բռնեն, դիմավորեն...

Բանաստեղծը դասական պարզությամբ և միաժամանակ խորությամբ է բացահայտել ժամանակաշրջանի նոր բովանդակությունը, Լենինի ու ժողովրդի միասնության գաղափարը: Ժողովրդական մտածողությունը, ինքնագիտակցության արթնացումը արտացոլվում են անկաշկանդ ու անպաճույճ: Սաքոն գիտակցում է կատարվող երևույթների իրական նշանակությունը: Հենց սկզբից էլ չափատողը խսկական ժողովրդական հոգեբանության, մտածողության մթնոլորտ է ներկայացնում: Նույնիսկ ամենաբարդ պատմական-քաղաքական թեմաները Չարենցը բացահայտում է ոչ թե վերացականորեն, այլ հուզական կոնկրետությամբ, առանց հրապուրվելու հռետորական պաճուճանքներով: Շատ են այդպիսի ռեալիստական, ընդհանրացնող պատկերները, ուր ամեն ինչ վառ գույներ ունի և պատմականորեն կոնկրետ է: Այժմ էլ այդ շարքի գործերը խոր տպավորություն են թողնում, հրապուրում են իրենց անկրկնելի վարպետությամբ, ջերմաշունչ լիրիկայի և պլաստիկ-էպիկական եղանակների յուրահատուկ շաղկապումով, ռեալիստական քանդակագրման կատարելությամբ: Այս գծերը անմիջական արտահայտություն են ստացել նաև **Հոկտեմբեր 25—26, 1917 թ.** խորագիրը կրող ֆրագմենտում, ուր բանաստեղծը պատկերել է Լենինի հոգևոր հարըստությունն ու վեհությունը, բնավորության յուրահատկությունները. ռոմանտիկական հուզականությունն ու փայլուն խոհականությունը այդ ֆրագմենտին հաղորդում են առանձնահատուկ գրավչություն ու հուզիչ անմիջականություն: Պատմողական-սյուժետային պատկերման միջոցների օգտագործումը նպաստել է առավել ճիշտ բնութագրմանը:

Այս տեսակետից առանձնապես հետաքրքրական է **Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին** ստեղծագործությունը: Չարենցն այստեղ պատկերում է Լենինի մարդկային վսեմ գծերը: Բալլադի գաղափարական բովանդակությունը երևան է գալիս հենց սկըզբից՝ նախամտածված կերպով, բխելով իրական հանգամանքներից: Բալլադը ընթերցողին ամենից առաջ գրավում է գյուղացու խառնվածքի տիպական պատկերմամբ, իրադրության չափազանց հակիրճ ու ցայտուն արտացոլմամբ: Հեղինակն

ստիճանաբար հասնում է սյուժեի առավել պարզության ու հոգեբանական խոր բացահայտման: Բալլադը չունի ոչ մի ավելորդ մանրամասնություն, կամ արտահայտություն, որը շեղեր ընթերցողի ուշադրությունը երկի հիմնական իմաստից: Եթե գյուղացու բնավորության կերտումը կարմացնում է բնութագրական ճշմարտացիությամբ և կենդանի ու անմիջական դիտողությամբ, ապա Լենինի կերպարը գեղարվեստական մեծ արտահայտչություն է ստանում հոգեբանության խորությամբ, մարդասիրության վառ, շոշափելի դրսևորումով:

Պատկերելով Լենինի հոգեբանության ամենամարդկային գծերը, հեղինակը վեր է հանում առաջնորդի բնավորության, գործելակերպի առանձին կողմերը: Բալլադի գեղարվեստական արժանիքներից է նաև կոմպոզիցիոն ներդաշնակությունը, որը կենդանի է, անբռնազբոս, և բխում է գեղարվեստական ամբողջական սիստեմից:

Չարենցը ուժեղ է և ընդհանուր պլանի կարգացման, և մանրամասնությունների մշակման ընթացքում: Հենց այդ պատճառով էլ բալլադը գրավում է ընթերցողին թե առհասարակ իր գեղարվեստական բարձր արժանիքներով, թե ամբողջության և թե մանրամասների դիպուկ իմաստավորմամբ: Հեղինակը բոլոր դեպքերում Լենինի մարդկային էությունը դրսևորում է խոր ճշմարտացիությամբ: Վարպետորեն օգտագործելով մի զույգ կոշիկի փաստորեն փոքրիկ պատմությունը, բանաստեղծը այն դարձնում է սյուժեի կարգացման շարժիչ տարր և գործող անձերի բնութագրության ցայտուն միջոց: Ահա Լենինը՝ իր հոգեկան գծերի և շարժուձևի ամբողջ հստակությամբ, միշտ աշխույժ ու իր յուրաքանչյուր քայլին վստահ.

Լսում է Իլյիչը ուշիմ

. . . . . .

Բարկանում է,
Հուզվում է քարտուղարը:
Համոզում է, որ գնա իր գործին:
Անհողդողդ է մուժիկը,
Ինչպես քարը.
Կարո՞ղ ես խանգարել.
— Հապա փորձի՜...

Նայում է Իլյիչը
Արանքից դռան.
Ժպտում են աչքերը մի քիչ ծուռ:
Հրում է դուռը —
Զվարթ
Մոտենում է հանկարծ գյուղացուն,

Եվ սկսվում է ուղղակի կոնկրետ հարցուփորձը—որտեղի՞ց է, ե՞րբ, ինչո՞ւ է հասել Մոսկվա:

Նորից, տիպականի հարատև որոնումը, որ Չարենց-արվեստագետի ամենագովելի հատկությունն է, սերտորեն շաղկապված է մարդու բնավորության հիմնական հատկանիշների բացահայտման հետ: Հայտնի են բազմաթիվ փաստեր, որոնք արտացոլում են ժողովրդի և նրա առաջնորդի հոգեհարազատությունը: Չարենցը ընտրել է բազմաթիվ փաստերից միայն մեկը: Այստեղ արվեստագետը իր մտահղացումը ոչ միայն իրականացրել է լիովին, այլև կենսագործել է գեղարվեստական նոր մեթոդի չափանիշներն ու սկզբունքները:

Այս և Լենինին նվիրված մյուս գործերին հատուկ է էպիկական շունչը: Ընդ որում, ոչ մի ստեղծագործության մեջ պոետը չի կրկնում իր խոհերն ու զգացմունքները: Ուշադիր կննելով բալլադի ուրույն կառուցվածքը տեսնում ենք, որ համապատասխան տեղերում կրկնվում է կարևորագույն մոտիվը՝ ուժեղացնելու համար գեղարվեստական տպավորությունը.

— Էխ, էխ, մուժիկ:
Մուժիկին հարկավոր է, մի զույգ կոշիկ:
Դիմել է մուժիկն ուրիշի —
Ասել են՝ չիք:
Դե նա էլ—եկել է Իլյիչին:

Չարենցը դիմելով պոետական պատկերման պարզ, բայց և խորապես ինքնատիպ միջոցների, վերարտադրելով Իլյիչի գործելակերպի անկրկնելի գծերը՝ բալլադը առավել բովանդակալից է դարձնում և, ի վերջո, հասնում է գեղարվեստական տպավորության միասնության: Հոգեբանական բազմազանությունը և մարդասիրական անմիջականությունը բանաստեղծորեն կարգացող մի սքանչելի դրվագ են, ուր ձուլված են իրական պատմությունը և պոետական կերպավորումը:

— Էխ, էխ, մուժիկ...—
Քեզ հարկավոր է մի զույգ կոշիկ,
Եվ կոշիկի համար
Ընդունեց քեզ Իլյիչը:
— Բայց հասկացա՞ր, մուժիկ,
Որ չուներ Իլյիչը ժամանակ,
Որ Իլյիչի համար,
Մեր ժամանակը քիչ էր...

Բալլադի եզրափակիչ տողերն աչքի են ընկնում խոր ընդհանրացմամբ և պոետական մտքի շեշտակի դրսևորմամբ: Այդ ընդհանրացումը, որն արտահայտում է ժողովրդի հավատը, ցույց է տրվում ոչ թե պատրաստի, շաբլոն ձևով, այլ ժողովրդական անմիջական ընկալմամբ:

Նույն 1924 թվականին Ե. Չարենցն ստեղծում է «Լենին քեռին» հայտնի բալլադը, ուր նույնպես ձգտել է խոր լիրիզմով վերարտադրել Իլյիչի գործունեության ժողովրդականությունը: Այս բալլադում էլ ընթերցողի ուշադրությունն է գրավում արդիականության ամենանշանակալի երևույթներին արձագանքելու, սովետական ժողովրդի հեղափոխական ձգտումները վերարտադրելու ուժեղ միտումը:

Այս մի չափածո նովել է, հոգեբանական պատմվածք, ուր իրադարձությունները, հերոսները, զգացումներն ու ընդհանրացումները արտացոլված են ժողովրդական մետաֆորներով ու դարձվածքներով: Գաղափարական բանաձևերն անգամ Չարենցը տվել է գեղարվեստական հնարանքներով, ժողովրդական հարազատ շնչով:

Բալլադը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ, որովհետև հեղինակը սյուժեն կարգացնում է՝ շաղկապելով ուշագրավ մի դրվագի, լարված իրադրության հետ: Պատանու համար բացվում է մի բոլորովին նոր աշխարհ, իր նոր երևույթներով և հրատապ իրադարձություններով: Ընտրելով այդպիսի մի մասսայական հարափոփոխ տեսարան, հեղինակը բացահայտում է մանկան հոգեբանության ռոմանտիկական գծերը: Պատանին գտնվում է Կարմիր հրապարակում: Եվ ահա մանկան ռոմանտիկային հետպհետե փոխարինում է մեծ գործի ռոմանտիկան, որը ներկայացված է ռեալիստական ու պոետական ինքնատիպ պատկերներով: Հեղինակը կենսական ճշմարտացիությամբ է արտացոլում թե ընդհանուրը, և թե վարմանալիորեն տեղին օգտագործված մանրամասնությունները: Ընդ որում, սովորական, առօրեական երևույթների մեջ էականը, հիմնականը գտնելը հեղինակի գլխավոր արժանիքներից մեկն է: Ահա մանուկ Իվանը հրմշտելով մարդկանց ու բոթելով փորձեց առաջ գնալ, հորը կանչել: Սակայն ի՞նչ կարող էր տեսնել նա իր մի թիզ բոյով: Հանկարծ դղրդում է հրապարակը: Մանուկը լսում է Լենինի անունը և հասկանում, որ նա պետք է խոսի:

Էլ ճար չկար: Տեսավ՝ տեղ չեն տա իրեն:
Եվ որոշեց՝ անի, ինչ էլ լինի:
Ոտքը խոթեց հանկարծ գրպանը կողքինի—
Եվ բարձրացավ վրեն...
Թռավ ուսին նստեց
Մի բանվորի.
Բայց բանվորը ներքև շպրտել
Չփորձեց էլ նրան նորից:

Պտույտ եկավ գլուխը, սիրտը ամուր թակեց:
Կարծես աշխարհքը ողջ նվիրեցին նրան:
Նայեց... Լենին-քեռին կանգնած էր տախտակե
Ամբիոնի վրա...
Ձեռքը առաջ մեկնած, գլուխը բաց,
Ինչպես տնում կախած այն նկարի խորքից—
Իր հայրիկի ձայնով, մի փոքր բարձր՝
Նա պատգամ էր ասում բանվորական կորքին...

Մանկան հոգեբանության հարազատ բնութագրությունը ստեղծագործական մեծ հաջողություն է: Ժլատ, բայց դիպուկ միջոցներով է պատկերված մանուկի կերպարը (կամքը, ուժեղ բնավորությունն ու

անբիծ հոգին): Ամեն անգամ հեղինակին հաջողվում է մի նոր նրբերանգ տեսնել նրա խառնվածքում, որի էությունը ճիշտ է, պարզ է բալլադի առաջին տողերից, սակայն երկի հիմնական գաղափարների ծավալումը լիովին շաղկապվում է պատանու ճակատագրի հետ: Գրվածքի բովանդակությունը աստիճանաբար հարստանում է նոր դրվագներով ու փոխհարաբերությամբ: Դա այն պահն է, որ երբ պատանին տեսնում է հորը՝ մի մեծ հրացան ձեռին ու «նայում է նա, նայում Լենին-քեռուն...»:

Իրականության էական կողմերի ռեալիստական արտացոլումը ևս բալլադի կարևոր արժանիքներից մեկն է: Երկի նորարարությունը որոշվում է ոչ թե ինչ-որ ձևապաշտական խաղերով, այլ նրանով, թե ինչպիսի համոզչությամբ ու ճշմարտացիությամբ է գրողն արտացոլում իրականությունը, ինչ նոր կողմեր է երևան հանում: Իր նոր ձևավորվող գիտակցությամբ այդ պատանին խտացնում է նոր մարդու դրական կողմերն ու հատկանիշները: Միևնույն ժամանակ հեղինակը ցույց է տալիս, որ նոր խառնվածքի ձևավորումը անմիջական արգասիքն է սոցիալ-պատմական իրական հանգամանքների, հասարակական կոնկրետ երևույթ է:

Եվ որոշեց Իվանը, որ անպայման երթա—
Իրա բոլոր մտքերը Լենին քեռուն ասի...
Երթա ասի, որ ինքը կուզե շոֆեր դառնալ-
Կամ օդաչու կարմիր՝ թռչել անահ...
Այդ հարազատ, այդ մեծ Լենին-քեռու առաջ
Իրա բոլոր-բոլոր գաղտնիքները բանա...

Եղիշե Չարենցը մեծ վարպետությամբ, ոճական միանգամայն նոր հնարանքներով է կերտել Լենինի պայծառ կերպարը նաև մի շարք այլ բանաստեղծություններում՝ **Էպիկական լուսաբաց** և **Գիրք ճանապարհի** ժողովածուների բազում էջերում. պատկերներ, խորունկ խորհրդածություններ, որոնք իրենց ռեալիստական վրձնահարվածներով այսօր հիացնում են իրենց անջինջ հրապույրով:

Չարենցն առաջնորդվում էր ժողովրդի ու ժամանակի բարձրագույն գեղագիտական պահանջմունքներով: Լենինյան պատկերներն ամբողջական ու բազմակողմանիորեն են արտացոլում նաև հեղինակի հոգեկան խառնվածքը, հասարակական հայացքները, պոետական խիղճն ու ոգին:

***

Տաղանդավոր բանաստեղծը շատ խոր է վերապրել Լենինի մահը, և դա իր անջնջելի դրոշմն է թողել **Լենին**,— բարձրարվեստ բանաստեղծության պղնձաձույլ չափատողերում: Սգո այդ օրերին ապրելով Մոսկվայում, նա վեր է հանում Լենինի գործունեության մեծագույն նշանակությունը, նրա համաշխարհային դերը, խորին ակնածանքով ու անսասան հավատով նորից ու նորից իմաստավորում Լենինի գործի վեհությունն ու կենսունակությունը: Բանաստեղծությունը, որ աչքի է ընկնում խոհականությամբ և պատկերման լարվածությամբ, սկսվում է ժողովրդի ու բանաստեղծի խորունկ վշտով: Ժողովրդի հետ սերտորեն կապված բանաստեղծը կենսական մեծ թեման իրացնում է հույզի ու խոհի օրգանական միասնությամբ, ռեալիստական խոշոր ընդհանրացումներով և գաղափարական նպատակամիտումով: Լենինը ևս այն ստեղծագործություններից է, որոնք իրենց հայտնությամբ իսկ ընդհանրապես առաջ են մղում պոեզիան:

Գիտեք թե աշխարհի արգանդից
Ինչքան հանճարեղ մարդիկ,
Ինչքան, ինչքան Կրոմվել,
Կամ հնդիկ Գանդի—
Անթիվ
Եղել են,
Կան դեռ
Ու կգան,
Այնինչ Իլյիչը—մեկ է,
Ուրիշ Իլյիչ—դժվար թե,
Ուրիշ Իլյիչ—չկա:



Մեծ արվեստագետը կարճ «տարածության» մեջ ստեղծում է Լենինին նվիրված հոյակապ և թարմ պատկերների մի ամբողջ շարք՝ բարձրարվեստ խտացումներով: Չարենցն այստեղ էլ համառորեն որոնել է պարզ, ամենաարտահայտիչ ու դիպուկ խոսքը և գեղարվեստորեն մարմնավորել իր նոր հույզերն ու գաղափարները:

Դասակարգը
Դար դարի հետևից
Կերտել է Իլյիչին:
Դասակարգը
Դար դարի հետևից
Հյութեր է նյութել:
Անգամ ջրկիրը Տիբեթի
Տվել է Իլյիչի ուղեղին
Մի թել:

Ժողովրդական մեծ բանաստեղծ Ավ. Իսահակյանը ևս հուզաթաթավ տողեր է գրել իր «Լենինի մահվան լուրի տպավորությունը» վերհուշում: Այդ ժամանակ նա Վենետիկում էր.

«Ֆինիչի» թատրոնում հանդես էր գալիս աշխարհահռչակ չեխ ջութակահար Յան Կուբելիկը, որի համբավը ծայրեծայր լցրել էր դահլիճը երաժշտասեր հասարակայնությամբ, «Հեռագիրը հայտնում է Մոսկվայից. Լենինը մեռել է»:

Միայն այսքան...

Մի շշուկ, մի սարսուռ անցավ բոլոր ներկաների մեջ... ապա իջավ մի ծանր, հանդիսավոր լռություն...

Գլուխները հակվեցին կրծքների վրա, ամեն ոք խորհում էր, ամեն ոք խոսում էր իր սրտի հետ:

Այսքան ներշնչող է, խորապդու մեծագույն մարդու մահը: Այս բոլոր ժամանակ, որ Կուբելիկը կանգնած էր լուռ, մտամփոփ ու գլխահակ, վերցրեց աղեղը, դրեց կախարդական ջութակի լարերի վրա,—բոլորի ուշադրությունը դարձավ դեպի նա,— և քաշեց աղեղը. բոլորս, բոլորս պարմացած, չափազանց զարմացած լսեցինք որոշակի, լարերը հնչեցին մեծ գույժը՝ «Լենին է մորտո» (Լենինը մեռավ):

Տպավորությունն աննկարագրելի էր. ամբողջ թատրոնը քարացել էր... Քիչ անց գալերեից և պանապան կետերից լսվեցին հառաչանքներ, արտասվախառն ձայներ»[1]:

Լենինի մահը մինչև հոգու խորքը ցնցեց նաև հեղափոխության մեծ երգչին: Եվ ստեղծվեց **Լենինն ու Ալին** բալլադը՝ կենդանի, ցայտուն գույներով, հատուկ կոմպոզիցիայով: Բալլադի մի շարք հատվածներ կատարյալ են և խոր տրամաբանական. կերպարների բնութագրությունը, ինչպես և պատկերային կերպավորումը համապատասխանում են շոշափված նյութի բովանդակությանը, բխում դրանից:

Բալլադի նյութը վերցված է իրականությունից, կատարված մի փաստ է նրա առանցքը:

Առաջին անգամ պոեմը լույս է տեսել Չարենցի հետևյալ ծանոթագրությամբ. «Պոեմի նյութը,— գրում է Չարենցը, — վերցված է իրականությունից, Տրապիզոնի մեր համամիութենական դեսպանն ինձ պատմեց, որ Լենինի մահվան լուրը Տրապիզոն հասնելու օրը, կես գիշերին իր մոտ է գալիս Ալի անունով մի թուրք նավաստի՝ իր վիշտն ու հարգանքը հայտնելու: **Կարծում եմ դեպքն արժանի է** ավելի լավ պոեմի, քան սա»:

Մեծ անմիջականությամբ ու խորաթափանցությամբ ավարտելով այս իրական դեպքը, պոետն ստեղծել է բանաստեղծական մի ամբողջություն, որը ձևի ու բովանդակության կատարյալ ներդաշնակության օրինակ կարող է ծառայել. պոետը խորապես զգացել է ժամանակակից էպոսի յուրահատկությունները: Այդ է պատճառը, որ այսպես միաձույլ են այստեղ էպիկական ոճը, քնարական շունչն ու գույները: Հենց սկզբից հանդիպում ենք պրոբլեմի բուն էությունը բնորոշող գեղարվեստական ցայտուն խտացումների.

———

[1] Ավ. Իսահակյան, Երկեր, հ. 4, էջ 398—399:

Աշխարհի կենտրոնը Մոսկովն է
Մոսկովը Մեկկայից էլ հին է:
Մոսկովից մեծ քաղաք- չիք:
— Քանի որ Մոսկովի միջին
Ապրում է ինքը— Լենինը:

Այս փոխաբերությունները ցույց են տալիս բանաստեղծական պատկերման ոճական սկզբունքներն ու տիպականացման ձևերը, ամբողջ աշխարհը մի դիտակետի մեջ խտացնելու չարենցյան հմտությունը:

Կիրառելով ռեալիստական պոեզիայի էական սկզբունքները, Չարենցը միաժամանակ ռոմանտիկականը միաձուլում է ռեալիստականին:

Բալլադում Ալիին հեղինակը բնութագրում է որպես կամքի տեր անհատականություն: Ռուս ծովայինի հետ շփվելու շնորհիվ նա ճշմարիտ պատկերացում է կազմում Լենինի գործի ու մեծ Հոկտեմբերի մասին: Ռուս նավաստու և Ալիի զրույցը հեղինակը տալիս է հոգեբանական այնպիսի երանգներով ու գծերով, որոնք մղում են Ալիին՝ ատելու թուրքական ֆեոդալական կարգերը: Սակայն գլխավորը Լենինի նկատմամբ Ալիի տածած ուժեղ սերն է, որը բանաստեղծը դրսևորում է ինտիմ, անհատական հոգեկան վերապրումների ձևով և բխեցնում պատմական իրադարձություններից, որոնց վերահասու է լինում հերոսը: Այսպիսով, Չարենցը բալլադի բովանդակության մեջ ձուլում է իր հերոսի անհատական ու հասարակական գծերը, դրանով իսկ հասնելով բանաստեղծական բարձր հնչեղության:

Այդ օրը այնքան էր աշխատել,
Որ հալից ընկել էր Ալին:
Մարմինը քրտինք էր պատել,
Բայց պիտի աշխատեր էլի:
Նվում էր ամեն մի մկանը,
Նվալով քաշում էր դեպի տուն:
Բավական է, ասում էր,— բավական է
Հոգնությունը քո...

. . . . .

Մոտեցավ:
Տխուր էր նավաստին:
Անծանոթ էր դեմքը: Անօգ:
Ու չասավ միշտական «դրաստի»-ն:
Այլ,
Կամաց.
«— Ալի, Լենին յոկ»:
Էլ ոչինչ:
Հեռացավ:
Ու թվաց թե
Լեռնացած՝ վարկեց մի ալիք:
Հասկացավ խոսքերի մութ իմաստը
Նավաստի Ալին...

Բալլադը վարգանում է շատ բնական ու պլաստիկ ստեղծագործական ինքնատիպությամբ, հոգեբանական ապրումների արտացոլման նրբերանգներով: Ամեն անգամ բանաստեղծը իր կերպարները ներկայացնում է տիպական հանգամանքներում՝ ընդգծելով իրականության անկրկնելի կողմերը: Չարենցը խուսափում է ընդհանուր, վերացական բնույթի սյուժետային կացություններից, ստանդարտ լուծումներից: Այդ է պատճառը, որ ընթերցողը վգում է տեղական կոլորիտը, որը նույնպես նպաստում է մարդկանց հոգեբանության, նրանց ներաշխարհի ճշմարտացի բացահայտմանը: Իմանալով, որ վախճանվել է աշխատավոր մարդկության մեծ առաջնորդը, Ալին գնում է սովետական դեսպանատուն՝ իր կսկիծը հայտնելու: Բալլադի գաղափարական բովանդակության միջոցով բանաստեղծն արտահայտում է համաշխարհային այն վիշտը, որ համակել էր ժողովրդական հոծ վանգվածներին: Ալին հանդես է գալիս որպես կոնկրետ անհատականություն՝ իր որոշակի հեղափոխական տրամադրություններով: «Լենինն ու Ալին» բալլադը ճշմարտացի մի պատմություն է շարքային մարդու սոցիալ-հոգեբանական վերափոխման մասին: Սովետական դեսպանատան դրվագը սյուժեի բարձրակետն է: Հերոսի ճակատագրի բացահայտմամբ հեղինակը ցույց է տալիս, թե որքան մոտ և հոգեհարազատ են թե՛ Լենինի կերպարը և թե՛ նրա վեհ գաղափարները երկրագնդի բոլոր աշխատավորների սրտին ու մտքին:

Լենինյան շարքի գործերից հիշատակության արժանի է նաև «Զուգունե մարդը», ուր շոշափված է սոցիալիզմի հաղթանակի գաղափարը իբրև իրականացումն նոր հասարակարգի կառուցման լենինյան տեսության: Չարենցը ձգտել է արտացոլել սովետական ժողովրդի կյանքում տեղի ունեցած նոր երևույթները, սոցիալիզմի կառուցման առաջին քայլերը: Այս բալլադում կարևորը նորի հակադրությունն է հնին, իր դարն ապրածին:

Այստեղ վգալի տեղ է հատկացված և բնությանը, և պատմական որոշ իրադարձություններին: Ինքնատիպ ու տպավորիչ են լեռան խոժոռ գագաթին գտնվող վանքի, Քուռ գետի, ճանապարհի պատկերները, որոնց հետևում են նորի պատկերներն ու կուգահեռները: Եվ, իբրև տրամաբանական ամփոփում այդ ամենի՝

Այս ձորում ահա, անհողդողդ — վեհ,
Կանգնած է մարդը այդ չուգունե:

Եթե վերոհիշյալ գործերում իշխում է էպիկականը, ապա պետք է ասել, որ **Մահվան քայլերգի** մեջ Չարենցը հասել է սոցիալիստական լիրիկայի մոնումենտալության, ձգտելով ձևի ու բովանդակության դասական միասնության: Այդ չափածոներում մի նոր ուժով է փայլատակել Չարենցի հանճարը: Մեծ Լենինի հիշատակին նվիրված հերոսական մահվան քայլերգը սովետական բազմազգ գրականության սքանչելի էջերից է: Այդտեղ վգացվում է խոշոր վարպետության ակներև կնիքը, ինչպես նաև միտքը պոետականացնելու չարենցյան անկրկնելի կարողությունը:

Մենք փող վարկինք, և արձագանքն ահավոր
Երկրից-երկիր որոտաձայն շառաչեց.
Եվ սրտերում միլիոնավոր, բյուրավոր
Ըմբոստությունն ահագնացավ ու աճեց:

. . . . . . . . . . . . . .

Եվ թափորի ելած բոլոր գնդերի,
Բոլոր ըմբոստ բանակների առաջում—
Արդեն ննջած առաջնորդի պանծալի,
Անձեռագործ դիակառքն էր շառաչում...

Եղիշե Չարենցի լենինյան թեմաներով գրած երկերը սովետական գրականության լավագույն ստեղծագործություններից են, որոնց մեջ կենտրոնական տեղ է գրավում համաշխարհային կոմունիզմի պրոբլեմը և անմիջականորեն շոշափվում է լենինիզմի համամարդկային նշանակությունը, կոմունիզմի համաշխարհային հաղթանակի պատմական անխուսափելիությունը: Կոմունիզմի վեհ գաղափարների վերջնական հաղթանակի անսասան հավատն է հնչում Չարենցի տողերում.

**Դեռ կգա Իլիչը,**
**Որ մտնի համաշխարհային Սովնարկոմ:**



պես միանման նյութական ու այլ նախադրյալներ, դասակարգային պայքարի ընդհանուր պայմաններ ու նպատակներ։ Այստեղ էական դեր է խաղում բոլոր սոցիալիստական երկրների բնակչության աշխատավոր մասսաների սոցիալ-տնտեսական շահերի ընդհանրությունը։ Այդ շահերը պահանջում են կառուցել նոր, դասակարգային շահագործումից ազատ հասարակություն, ստեղծել մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման համար պլանաչափորեն կազմակերպված հզոր ինդուստրացված էկոնոմիկա։ Սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրինաչափությունների առկայությունը չի բացառում այդ պրոցեսի կենսագործման առանձնահատկությունները տարբեր երկրներում։ Այդպիսի առանձնահատկությունները վերաբերում են հեղափոխական վերափոխությունների անցկացման սոսկ ձևերին, մեթոդներին, ժամկետներին, և դրանք կախված են ներքին պայմաններից և միջազգային իրադրությունից։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է պրոլետարական հեղափոխության և սոցիալիստական շինարարության սկզբունքները կիրառել ստեղծագործաբար՝ նայած յուրաքանչյուր երկրի կոնկրետ պայմաններին, չթույլատրել մեխանիկորեն պատճենահանել մյուս երկրների կոմունիստական կուսակցությունների քաղաքականությունն ու տակտիկան։ Սոցիալիզմի շինարարության փորձը, որ կուտակել են Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները, միջազգային բանվորական և կոմունիստական շարժման նվաճումն է։ Դրանից հետևում է, որ նոր հասարակության շինարարության օրինաչափությունները կարող են ուսումնասիրվել համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման բազմակողմանի փորձի հիման վրա միայն։

ԲՈՒՐԺՈՒԱԶԻԱՅԻ քաղաքական տիրապետության ոչնչացումը և բանվոր դասակարգի կողմից իշխանության նվաճումը ելակետային մոմենտ են հանդիսանում սոցիալիստական էկոնոմիկայի շինարարության համար։ Արտադրության միջոցների նկատմամբ հասարակական սեփականության առաջացումը պատմության մեջ առաջին անգամ օբյեկտիվ պայմաններ է ստեղծում էկոնոմիկայի զարգացումը ամբողջ հասարակության պրոցեսները պլանաչափորեն ղեկավարելու համար։ Աշխատավորները կարող են այդ խնդիրները հաջողությամբ լուծել միայն բանվոր դասակարգի հասարակության ամենաառաջավոր դասակարգի ղեկավարությամբ, որը կազմակերպված է որպես իշխող դասակարգ։ Պրոլետարիատի դիկտատուրան բանվոր դասակարգի դաշինքն է աշխատավոր գյուղացիության և սոցիալիզմի գործը պաշտպանող մյուս դեմոկրատական ուժերի հետ, մի դաշինք, որին ղեկավարում է բանվոր դասակարգը՝ կապիտալիզմը ոչնչացնելու և նոր հասարակություն կառուցելու համար։ Այդպիսի դաշինք անհրաժեշտ է ամեն մի երկրում, ուր իշխանության գլուխ է անցնում բանվոր դասակարգը, որովհետև գոյություն չունի «զտարյուն» տեսքով այնպիսի կապիտալիստական հասարակություն, որ բաղկացած լիներ սոսկ միայն երկու դասակարգից՝ բուրժուազիայից և պրոլետարիատից։ Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի կենսականությունն ու անհաղթահարելիությունը համապատասխանում են նրանց արմատական շահերին։ Մարմնավորելով բանվոր դասակարգի ղեկավարությունը, պրոլետարիատի դիկտատուրան իր ամբողջ գործունեության մեջ միաժամանակ արտացոլում է բոլոր աշխատավորների արմատական շահերը։ Պրոլետարական պետության իսկական ժողովրդականության մեջ է նրա հզորության մեծագույն աղբյուրներից մեկը։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցումը տարբեր երկրներում բնորոշվում է կոնկրետ քաղաքական ձևերի բազմազանությամբ։ Բայց նրանց էությունը մեկ է. նրանք բոլորն էլ հանդիսանում են բանվոր դասակարգի դիկտատուրա. ՍՍՀՄ-ում պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևը պատմականորեն դարձան, ինչպես հայտնի է, սովետները։ Պրոլետարիատի դիկտատուրայի մյուս ձևը ժողովրդական դեմոկրատիայի պետությունն է։ Պրոլետարիատի դիկտատուրայի այդ ձևերը գլխավոր, որոշիչ հարցում միանման են։ Հաղթանակած սոցիալիզմի պայմաններում բանվոր դասակարգի դիկտատուրան աստիճանաբար վերաճում է համաժողովրդական պետության։ Այս հարցի վերաբերյալ կարելի է լրացուցիչ նյութ քաղել Ն. Պ. Տուզովի «Пути перехода к социализму многообразны», հրատ. «Զնանիե», Լենինգրադ, 1966։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներից մեկը արտադրության սոցիալիստական հանրայնացումն է, այսինքն՝ արտադրության միջոցների նկատմամբ բուրժուական մասնավոր սեփականության վերացումը և դրանք հասարակական սեփականություն դարձնելը։ Վ. Ի. Լենինը մշակել է արտադրության սոցիալիստական հանրայնացման ձևերն ու մեթոդները. խոշոր իմպերիալիստական բուրժուազիայի նկատմամբ՝ արտադրության բոլոր միջոցների ազգայնացում, այն կապիտալիստների նկատմամբ, ովքեր պրոլետարական պետության հետ համաձայնության են եկել արտադրությունը զարգացնելու նրա վերահսկողությամբ՝ նրանց մասնավոր կապիտալիստական սեփականության աստիճանաբար վերափոխում հասարակական սեփականության, դրա համար օգտագործելով պետական կապիտալիզմի ձևը։ Իսկ ինչ վերաբերում է արտադրության միջոցների նկատմամբ այն մասնավոր սեփականությանը, որը հիմնված է անձնական աշխատանքի վրա, ապա դրա սոցիալիստական հանրայնացումը հնարավոր է միայն կամավորական սկզբունքներով։

Բանվոր դասակարգը շահագրգռված է կապիտալիստական արտադրությանը տիրել «ընթացքի ժամանակ», առանց կանգառման, ինչը որ առավել մեծ չափով համապատասխանում է աշխատավորների շահերին, հեղափոխության հաջող զարգացման խնդիրներին։ Այդ պատճառով էր Վ. Ի. Լենինը անհրաժեշտ համարում, «որ ո՛չ մի «պետական կապիտալիզմ» չընդունող, ո՛չ մի կոմպրոմիսի մասին չմտածող, սպեկուլյացիայի, չքավորներին կաշառելու և այլ միջոցներով սովետական ձեռնարկումները վիժեցնել շարունակող անկուլտուրական կապիտալիստների նկատմամբ անխնա դատաստան տեսնելու պրիոմները միացվեն կոմպրոմիսի կամ հատուցման այն պրիոմների հետ, որ գործադրվում են կուլտուրական կապիտալիստների նկատմամբ, որոնք ընդունում են «պետական կապիտալիզմը», ընդունակ են կյանքում անցկացնելու այն, օգտակար են պրոլետարիատի համար՝ որպես իրոք տասնյակ միլիոնավոր մարդկանց պրոդուկտներ մատակարարող խոշորագույն ձեռնարկությունների խելացի և փորձված կազմակերպիչներ» (Երկեր, 4-րդ հրատ., հատոր 27, էջ 420—421)։

Այն ներքին պայմաններն ու միջազգային իրադրությունը, որոնց առկայությամբ զարգանում էր պրոլետարիատի դիկտատուրա հաղթանակած և հաստատած առաջին երկիրը, սահմանափակում էին ՍՍՀՄ-ում պետական կապիտալիզմի օգտագործման հնարավորությունը։ Բայց լենինյան կանխատեսումը, որ Ռուսաստանից հետո սոցիալիստական շինարարության ուղին թևակոխած մյուս երկրներում կարող են ավելի բարենպաստ պայմաններ ստեղծվել՝ օգտագործելու համար անցման այնպիսի ձևեր, ինչպիսին պետական կապիտալիզմն է, կյանքը լիովին հաստատել է։

Սոցիալիստական հեղափոխության հաղթական ելքի համար բացառիկ նշանակություն ունի ագրարային ռեֆորմի անցկացումը, քանի որ դրանից վճռական չափով կախված է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդումը, գյուղատնտեսության մեջ սոցիալիզմին անցնելու նախադրյալների ստեղծումը։ Ագրարային վերափոխությունները կենսագործվում են կոնկրետ պայմաններից ելնելով։ ՍՍՀՄ-ում հողը ազգայնացվեց և անվճար հանձնվեց գյուղացիության օգտագործմանը։ Եվրոպայի ու Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, Կուբայում հողը բաժանվեց գյուղի աշխատավորներին։ Վերջին դեպքում հողը հասարակական սեփականություն է դառնում գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման պրոցեսում։

Արտադրության սոցիալիստական հանրայնացման հարցը քննարկելիս օգտակար է կանգ առնել այն սկզբունքային տարբերության վրա, որ գոյություն ունի արտադրության կարևորագույն միջոցների սոցիալիստական ազգայնացման և որոշ կապիտալիստական երկրների առանձին ճյուղերում անցկացվող ազգայնացման միջև, ազգայնացում, որը չի փոփոխում բուրժուական սեփականության բնույթը և կապիտալի կողմից աշխատանքի շահագործման հարաբերությունները։ Կարևոր է նաև ցույց տալ սոցիալիզմ կառուցող երկրներում անցկացվող ագրարային ռեֆորմների տարբերությունը ժամանակակից որոշ կապիտալիստական պետություններում ժողովրդական մասսաների ճնշման տակ անցկացվող ագրարային ռեֆորմներից, որոնք գործնականում ուժեղացրել են գյուղացիության շերտավորումը և նրա էլ ավելի ստրկացումը կապիտալիստական մոնոպոլիաների կողմից։

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ միջոցների նկատմամբ հասարակական սեփականություն հաստատելով, պրոլետարական պետությունը դրանով իսկ տիրապետում է հրամանատարական բարձունքներին էկոնոմիկայում։ Արտադրողական ուժերը բանվոր դասակարգի կողմից ծառայեցված են սոցիալիզմի շինարարությանը։ Առաջանում է ժողովրդական տնտեսության սոցիալիստական կացութաձև։ Սոցիալիստական սեկտորում արտադրահարաբերությունները համապատասխանում են արտադրողական ուժերի բնույթին։ Ուստի տնտեսության այդ սեկտորում արտադրահարաբերությունները լիակատար ասպարեզ են բացում արտադրողական ուժերի համար, հանդես են գալիս որպես դրանց աճման ու կատարելագործման հզոր գործոն։ Հասարակությունն ազատվում է արտադրության անարխիայից, տնտեսական ճգնաժամերից և այլ սոցիալական ցնցումներից։ Փոխարկվելով հասարակական սեփականության, արտադրության միջոցները դադարում են կապիտալ լինելուց, այսինքն՝ այլևս չեն հանդիսանում աշխատավորների շահագործման գործիք։

Սոցիալիստական կացութաձևը՝ պրոլետարիատի դիկտատուրայի տնտեսական բազան, միակը չէր մեր երկրում հետհեղափոխական առաջին տարիներին: Դրա հետ միասին անցման շրջանի էկոնոմիկայում գոյություն ունեին տնտեսության՝ անցյալից ժառանգած այնպիսի հասարակական ձևեր, որոնք հիմնված էին արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա: Բանն այն է, որ կապիտալիզմը չի վերացնում մինչկապիտալիստական ձևերը, այլ հաշտվում է դրանց հետ, օգտագործելով դրանք աշխատավորների շահագործումն ուժեղացնելու և իր տիրապետությունն ամրապնդելու համար: Ուստի մոնոպոլիստական բուրժուազիայի և կալվածատերերի սեփականազրկումը չի ավարտում էկոնոմիկայի վերակառուցումը: Այսպես, Սովետական Միությունում ամբողջ ժողովրդական տնտեսության արտադրանքի մեջ սոցիալիստական կացութաձևի տեսակարար կշիռը 1923—1924 թվականներին կազմել է 38,5, մանրապրանքայինն ու նահապետականը՝ 51,6, կապիտալիստականը՝ 9,9 տոկոս:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում հասարակության սոցիալ-տնտեսական կառուցվածքը և անցումային էկոնոմիկայի զարգացման գլխավոր տենդենցը ընդհանուր է սոցիալիզմ կառուցող երկրների համար: Այդ ժամանակաշրջանի հասարակական տնտեսության բնորոշ ձևերն են սոցիալիզմը, մանրապրանքային արտադրությունը, կապիտալիզմը: Դրանց էլ հենց համապատասխանում են երեք դասակարգ՝ բանվորներ, գյուղացիներ, բուրժուազիա: Այդ երեք կացութաձևերը բնորոշ են սոցիալիստական շինարարության ուղին թևակոխած բոլոր երկրների համար: Մեր երկրի էկոնոմիկայում, բացի դրանից, գոյություն ունեին նաև պետական կապիտալիզմ և նահապետական կացութաձև, որոնք աննշան տեսակարար կշիռ էին կազմում: Մի շարք սոցիալիստական երկրներում անցման ժամանակաշրջանում լայնորեն զարգացել է պետական-կապիտալիստական սեկտորը (Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն, Չինական Ժողովրդական Հանրապետություն և այլն):

Կացութաձևերի միջև տնտեսական հարաբերությունները իրականացվում են հիմնականում ապրանքա-դրամական կապերի միջոցով: Հետևողականորեն տիրապետելով ապրանքա-դրամական հարաբերությունների մեխանիզմին, պրոլետարական պետությունը դրանք օգտագործում է բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքն ամրապնդելու, կապիտալիստական տարրերին սահմանափակելու և արտամղելու համար: Այդ նպատակով հաստատուն գներ սահմանվեցին արդյունաբերությունից գյուղ գնացող արտադրանքների և գյուղից քաղաք գնացող մթերքների նկատմամբ: Չքավորներին և միջակներին վարկեր էին տրամադրվում, գյուղի չունևորները ազատվում էին հարկերից, ծնունդ առնող կոոպերատիվ ձեռնարկությունները ֆինանսական օժանդակություն էին ստանում սոցիալիստական պետությունից: Կապիտալիստական տարրերի դեմ օգտագործվում էին այնպիսի միջոցներ, ինչպիսիք բարձրացված հարկադրումն էր, կուլակային տնտեսություններին ժամանակակից տեխնիկայի վաճառքի սահմանափակումը և այլն:

Հետևաբար, անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայում դեռևս չկա արտադրության միջոցների հետ բանվորական ուժը միացնելու միասնական, իշխող ձև: Ուստի անցման ժամանակաշրջանը չի կարելի դիտել որպես հասարակական-տնտեսական ֆորմացիա: Դա՝ կոմունիստական տնտեսական ֆորմացիայի առաջին փուլի՝ սոցիալիզմի, լինելության ժամանակաշրջանն է:

Անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայի ծավալուն բնութագիրը, նրա զարգացման հակասությունների ու օրինաչափությունների վերլուծությունը տրված են Վ. Ի. Լենինի «Սովետական իշխանության հերթական խնդիրները» (Երկեր, 4-րդ հրատ. հատոր 27, էջ 279—333) և «Պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանի էկոնոմիկան և քաղաքականությունը» (Երկեր, 4-րդ հրատ., հատոր 30, էջ 115—128) աշխատություններում:

Սոցիալիզմը, նախորդ ֆորմացիաների համեմատությամբ լինելով հասարակության բարձր, առավել առաջադիմական կազմակերպություն, լիովին հաղթահարում է տնտեսության բոլոր հին հասարակական ձևերը, ոչնչացնում է շահագործման բոլոր տեսակները և հաստատվում է ոչ միայն որպես հասարակական արտադրության իշխող, այլև որպես միասնական սիստեմ: Այստեղից բխում է անցման ժամանակաշրջանի հիմնական բովանդակությունը՝ բազմակացութաձև էկոնոմիկայի հեղափոխական փոխակերպում տնտեսության միասնական սոցիալիստական սիստեմի:

Սոցիալիզմի հաջող շինարարությունը կախված է անցումային էկոնոմիկայի յուրահատուկ հակասությունները ի հայտ բերելուց և հաղթահարելուց: Նրա հակամարտ բնույթ ունեցող հակասությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև գոյություն ունեցող հակասությունն է, որը լուծվում է «ով ում» սկզբունքով մղվող պայքարում: Սոցիալիզմի հաղթանակի համար հսկայական նշանակություն ունի երկրորդ՝ արդեն ոչ հակամարտ, հակասությունը սոցիալիստական արդյունաբերության և մանրապրանքային արտադրության միջև:

Անցման ժամանակաշրջանում սոցիալիստական տնտեսական կացութաձևը համայնապար-



փակ չէր, նա չէր ընդգրկում ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտները: Դրա շնորհիվ պրոլետարական իշխանությունն այդ ժամանակաշրջանում խարսխվում էր երկու տարբեր հիմքի՝ ա) ծագող ու զարգացող խոշոր սոցիալիստական արդյունաբերության և բ) մանրապրանքային գյուղացիական տնտեսության վրա: Սոցիալիստական արդյունաբերությունը զարգանում է ընդլայնած վերարտադրության օրենքի հիման վրա և ընթանում է սոցիալիզմի դիրքերն ամրապնդելու ուղիով. անհատական մանրգյուղացիական տնտեսությունը միշտ չէ, որ նույնիսկ հասարակ վերարտադրություն է իրականացնում, և դեռ կապիտալիզմ էլ է ծնում: Այդ հակասությունը հաղթահարվում է գյուղացիական տնտեսությունները կամովին հանրայնացնելու, դրանք խոշոր սոցիալիստական կոոպերացված արտադրության փոխարկելու միջոցով:

Անցման ժամանակաշրջանում հիմնական կացութաձևերն են, հետևաբար, սոցիալիստական սեկտորը և մանրապրանքային տնտեսությունը: Համապատասխանաբար բանվոր դասակարգն ու գյուղացիությունը հասարակության հիմնական դասակարգերն են, իսկ նրանց բարեկամական դաշինքը հանդիսանում է պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքն ու քաղաքական հիմքը: Բացի դրանից, գոյություն ունի մի ոչ հիմնական դասակարգ՝ բուրժուազիան (քաղաքային բուրժուազիայի մնացորդները և կուլակությունը գյուղում): Դասակարգերի, նրանց դրության և պայքարի բնութագիրը տրված է Վ. Ի. Լենինի «Էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում» աշխատության մեջ (Երկեր, 4-րդ հրատ., հատոր 30, էջ 121—126):

Սոցիալիստական հասարակության շինարարությունը առաջ է բերում ջախջախված շահագործողական դասակարգերի մնացորդների կատաղի դիմադրությունը և, հետևաբար, առանձին ժամանակաշրջաններում սրում է դասակարգային պայքարը: Պրոլետարիատի դիկտատուրան, հանդիսանալով հզոր քաղաքական իշխանություն և իր ձեռքում կենտրոնացնելով տնտեսական հրամանատարական բարձունքները, շահագրգռված չի այն բանում, որ դասակարգային պայքարը ընդունի քաղաքացիական կռվի ձև, քանի որ ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցումը առանց պայքարի այդ ծայրահեղ ձևերի էլ կհասցնի շահագործողական դասակարգերի վերացմանը: Դասակարգային պայքարի ձևերը, նրա սրության աստիճանը որոշվում են կոնկրետ պատմական պայմաններով:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ էկոնոմիկայի հիմունքների կառուցման ուղիները առաջին անգամ մշակել է Վ. Ի. Լենինը 1918 թվականին և շարադրել իր «Սովետական իշխանության հերթական խնդիրները» աշխատությունում: Նոր հասարակության շինարարության պլանի է՛լ ավելի կոնկրետացումը Լենինը տվել է «Էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում» (Երկեր, 4-րդ հրատ., հատոր 30, էջ 115—128): «Մեծ նախաձեռնություն» (Երկեր, 4-րդ հրատ., հատոր 29, էջ 501—533), «Կոոպերացիայի մասին» (Երկեր, 4-րդ հրատ. հատոր 33, էջ 555—565) երկերում և այլ աշխատություններում: Բացառիկ կարևոր նշանակություն ունի անցման ժամանակաշրջանում պրոլետարիատի դիկտատուրայի գիտական քաղաքականության հիմունքների մշակումը, որ կատարել է կուսակցությունը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ (տե՛ս Վ. Ի. Լենինի Պարենհարկի մասին հոդվածը, Երկեր, 4-րդ հրատ., հատոր 32, էջ 419—468):

Պրոլետարիատի դիկտատուրայի տնտեսական քաղաքականությունը (որը մեր երկրում ստացավ «նոր տնտեսական քաղաքականություն» անունը) անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայի խտացրած արտահայտությունն է, նրա ամփոփումը և ավարտումը: Նէպը պրոլետարական պետության քաղաքականությունն է, որը հիմնվում է համապատասխան բարձունքների վրա էկոնոմիկայում, մի քաղաքականություն, որի նպատակն է ստեղծել հզոր սոցիալիստական արդյունաբերություն և այն զոդել մանր-գյուղացիական տնտեսության հետ, վերջինս վերափոխել խոշոր կոլեկտիվ արտադրության, կառուցել սոցիալիզմ և վերացնել շահագործողական դասակարգերն ու դրանց առաջացման պատճառները: Մասսաներին նոր հասարակության շինարարության մեջ ներգրավելու պայմանն այն է, որ հեղափոխություն ծնած եռանդը միացվի սոցիալիստական հասարակության կառուցման գործում աշխատավորների նյութական շահագրգռվածության հետ:

Հիմնավորելով նէպի միջազգային նշանակությունը, Վ. Ի. Լենինը ասում էր՝ «Այն խնդիրը, որը մենք այժմ լուծում ենք, առայժմ ժամանակավորապես միայնակ, թվում է զուտ ռուսական, սակայն իրապես այդ մի խնդիր է, որը կանգնելու է բոլոր սոցիալիստների առաջ: ...Նոր հասարակությունը, որը հիմնված է բանվորների ու գյուղացիների դաշինքի վրա, անխուսափելի է: Վաղ թե ուշ, քսան տարի ավելի շուտ, թե քսան տարի ավելի ուշ, նա կգա, և նրա համար, այդ հասարակության համար մենք օգնում ենք բանվորների ու գյուղացիների դաշինքի ձևեր մշակե-

աճող ազդեցություն է ունենում համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա, դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոն: Կյանքը հաստատում է կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1960 թվականի Մոսկվայի խորհրդակցության այն հիմնական հետևությունը, որ արդի դարաշրջանում մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը, գլխավոր ուղղությունը և գլխավոր առանձնահատկությունը որոշում են համաշխարհային սոցիալիստական սիստեմը, այն ուժերը, որոնք պայքարում են ընդդեմ իմպերիալիզմի, հանուն հասարակության սոցիալիստական վերակառուցման:

Ն. ՍՊԻՐԻԴՈՆՈՎԱ

«Политическое самообразование», 1966 г. № 8.

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**ԹԵՄԱ № 8**

## ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻՑ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԱՆՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԸ

*С. А. Скородум и А. Л. Угрюмов «Экономическая программа большевиков в социалистической революции»* գրքույկում («Знание», 1966, էջ 48) պատմում են Ռուսաստանի սոցիալիստական հեղափոխության տնտեսական նախադրյալների, սոցիալիստական հեղափոխության լենինյան կուրսի մասին: Բրոշյուրում հատուկ հատվածներ են նվիրված ագրարային հեղափոխության բոլշևիկյան ծրագրերին, կապիտալիստական սեփականության վերացմանը և արտադրության միջոցների սոցիալիստական հանրայնացմանը:

Նոր, սոցիալիստական պետություն ստեղծելու գործնական խնդիրը կուսակցությունն ու ժողովուրդը լուծեցին Վ. Ի. Լենինի անմիջական ղեկավարությամբ: А. А. Карасеев и Ю. А. Кузнецов *«Разработка В. И. Лениным вопросов новой экономической политики»* գրքույկում («Знание», 1965, էջ 46) բնութագրվում է մեր պետության դրությունը քաղաքացիական պատերազմն ավարտվելուց հետո, ցույց է տրվում, թե անցման ժամանակաշրջանում սովետական պետությունն ինչպես է կենսագործել նոր տնտեսական քաղաքականությունը:

Պարապմունքներին նախապատրաստվելիս պրոպագանդիստը կարող է օգտագործել՝ Н. Ганин, *«Ленинский план построения социализма»* («Политическое самообразование», 1965, № 4), Г. Сорокин *«Некоторые вопросы теории переходного периода»* («Вопросы экономики», 1965, № 10) հոդվածները, В Понтелеев «Победа социализма в СССР» («Политическое самообразование», 1965, № 10) կոնսուլտացիան:



# ՕՐՎԱ հարցեր

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

ՍՄԿԿ XXIII համագումարի հաստատած ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի դիրեկտիվները կյանքում կենսագործելու ամենակարևոր նախապայմաններից մեկը աշխատանքի արտադրողականության անշեղ աճի ապահովումն է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Աշխատանքի արտադրողականությունը հասարակական արտադրության տեմպերն ու մակարդակը բնորոշող գլխավոր գործոնն է, նյութական բարիքների արտադրության ավելացման ամենագլխավոր ուղին: Հասարակության առաջընթացի համեմատ նյութական բարիքների արտադրության գործում աշխատանքի արտադրողականության դերն ավելի ու ավելի է մեծանում, քանի որ գիտությունը դառնում է անմիջական հասարակական արտադրողական ուժ:

Վերջին տարիների ընթացքում ՍՍՀՄ արդյունաբերության համախառն արտադրանքի 65 տոկոսը ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ: Անընդհատ վերելք ապրող մեր հանրապետության արդյունաբերությունը ևս ուղեկցվել է նրա արտադրության ճյուղերում աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ: Յոթնամյակի տարիներին հանրապետության արդյունաբերության մեջ ներդրված շուրջ 900 մլն ռուբլու կապիտալ ներդրումները հնարավորություն ընձեռեցին արտադրության տեխնիկական հագեցվածությունը բարձրացնելու միջոցով աշխատանքի արտադրողականությունը 1965 թվականին, 1958 թվականի համեմատ, բարձրացնել 30 տոկոսով:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատանքի արտադրողականության տեմպերը հատկապես բարձր են եղել արտադրության այն ճյուղերում, ուր աշխատանքի ու արտադրության կազմակերպման մակարդակը բարելավելու հետ մեկտեղ, բարձր են եղել հիմնական արտադրական ֆոնդերի աճման տեմպերը և աշխատողների որակավորումը:

Յոթնամյակի տարիներին հիմնական ֆոնդերի ու աշխատանքի արտադրողականությունն առանձնապես արագ տեմպերով են աճել արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են՝ գունավոր մետալուրգիան, ուր հիմնական արտադրական ֆոնդերի միջին տարեկան աճը 1958—1964 թվականներին կազմել է 15,3, իսկ աշխատանքի արտադրողականության աճման տեմպերը՝ 9,5 տոկոս, քիմիական արդյունաբերության մեջ այդ ցուցանիշները, համապատասխանաբար, կազմել են 19,5 և 8,5 տոկոս, շինանյութերի արդյունաբերության մեջ դրանք կազմել են 17,7 և 9,3 տոկոս: Հիմնական արտադրական ֆոնդերի բարձր տեմպերով աճը մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության մեջ չի ուղեկցվել աշխատանքի արտադրողականության համապատասխան աճով: Դա առաջին հերթին բացատրվում է արդյունաբերության հիշյալ ճյուղերում մի շարք ավելի աշխատատար նոր արտադրություններ ստեղծելու և այլ փաստերով:

Յոթնամյակի տարիներին հանրապետության արդյունաբերությունը հագեցվել է արդի բարձր արտադրողական մեքենաներով ու սարքավորումներով, ավտոմատացված հոսքային գծե-

օժանդակ աշխատանքների մեքենայացման մակարդակների միջև, այնուհանդերձ, ճեղքվածքը, մեծ է։ Զնայած այն բանին, որ ձեռնարկությունները նոր տեխնիկայով լավ են հագեցված, ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը դանդաղորեն է կրճատվում։ Նման վիճակն աշխատանքի արտադրողականության և արտադրության շահութաբերության հետագա բարձրացման լուրջ խոչընդոտ է դառնում»։ Եվ իրոք, աշխատանքի արտադրողականության բարձրացման մեծ ռեզերվներ են կապված օժանդակ բնույթի աշխատանքների և օժանդակ արտադրամասերի մեքենայացման աստիճանի հետագա բարձրացման և, դրանով իսկ արտադրանքի ընդհանուր աշխատատարության իջեցման հետ մեկտեղ, մեքենայական ժամանակի տեսակարար կշիռը բարձրացնելու հետ։ Հանրապետության արդյունաբերության մեջ օժանդակ բանվորների, օժանդակ բնույթի աշխատանքների մեքենայացման աստիճանը զգալիորեն տարբերվում է հիմնական բանվորների աշխատանքների մեքենայացման աստիճանից։ Այդ իսկ պատճառով, օժանդակ բանվորների տեսակարար կշիռը հանրապետության արդյունաբերության մեջ բարձր է։ ՀՍՍՀ արդյունաբերության արտադրական անձնակազմի մեջ օժանդակ բանվորների տեսակարար կշիռը 1962 թվականին 1959 թվականի 47,8 տոկոսից բարձրացավ 50,7 տոկոսի։ 1965 թվականի տվյալներով այն կազմում է 51,4։ Դա բացատրվում է օժանդակ ցեխերի և օժանդակ աշխատանքների մեքենայացման դեռևս ցածր աստիճանով, իսկ վերջինս բացասաբար է անդրադառնում նաև հիմնական ցեխերի կարողությունների օգտագործման վրա։

ՀՍՍՀ արդյունաբերության մեջ և նրա առանձին ճյուղերում, օժանդակ բանվորների բարձր տեսակարար կշիռը բացատրվում է ՀՍՍՀ արդյունաբերության օժանդակ արտադրամասերի և օժանդակ արտադրապրոցեսների մեքենայացման ցածր աստիճանով։ Ըստ որում, վերջին տարիների ընթացքում ՀՍՍՀ արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում օժանդակ բանվորների տեսակարար կշիռը նվազելու փոխարեն, աճում է, իսկ դրանց թվաքանակի աճման տեմպերը գերազանցում են հիմնական բանվորների թվաքանակի տեմպերին։ Հանրապետության արդյունաբերության ճյուղերի մեծ մասին բնորոշ է նաև այն, որ օժանդակ բանվորների ընդհանուր թվաքանակը բարձր տեմպերով աճելու պայմաններում բանվորների ընդհանուր թվաքանակի մեջ իջել է օժանդակ աշխատանքներում զբաղված բանվորների տեսակարար կշիռը և, ընդհակառակը, բարձրացել հիմնական արտադրամասերում զբաղված օժանդակ բանվորների տեսակարար կշիռը։ Տեխնիկայի ռացիոնալ օգտագործման և աշխատանքի արտադրողականության բարձրացման շահերը պահանջում են, որ օժանդակ բանվորները հիմնականում կենտրոնացվեն օժանդակ արտադրամասերում։

Արդյունաբերության տարբեր ճյուղերում կատարված ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ օժանդակ բանվորների տեսակարար կշիռը համեմատաբար ցածր է այն ձեռնարկություններում, ուր օժանդակ աշխատանքների կենտրոնացման ցուցանիշը մասնագիտացված օժանդակ արտադրամասերում բարձր է։

Արտադրանքի աշխատատարության իջեցումն առաջին հերթին պայմանավորված է ոչ միայն նրա ընդհանուր աշխատատարության իջեցմամբ, այլ արտադրանքի աշխատատարության իջեցմամբ՝ դրա արտադրության բոլոր փուլերում։ Իսկ այդ ամենից առաջ կապված է ոչ միայն նրա մեքենայական աշխատանքի, այլև ձեռքի աշխատաժամանակի առավել կրճատման, արտադրության մեքենայացման աստիճանի բարձրացման հետ, ինչպես հիմնական, այնպես էլ օժանդակ արտադրապրոցեսներում։

ՀՍՍՀ արդյունաբերության զարգացման պրակտիկայում ուշադրությունը նվիրվել է, մասնավորապես, արտադրության հիմնական պրոցեսների և աշխատանքների մեքենայացման ու ինտենսիվացման, մեքենական աշխատաժամանակի կրճատման վրա, անուշադրության մատնելով օժանդակ արտադրապրոցեսներն ու օժանդակ բնույթի աշխատանքների և ձեռքով կատարվող աշխատանքների մեքենայացման խնդիրները։ Այսպես, մշակվող առարկայի մատուցումը, չափումը, հաստոցի վրա նրա ամրացումը կամ փոխադրումները, տեսակավորումը, որակի ստուգումը և այլն, մեծ մասամբ ձեռքով է կատարվում։ Հանրապետության արդյունաբերության հիմնական ֆոնդերի արժեքի մեջ դանդաղ է աճում չափիչ, կարգավորիչ սարքերի ու հարմարանքների, լաբորատոր սարքավորումների՝ հսկիչ-չափիչ սարքերի և ավտոմատիկ հսկիչ սարքերի տեսակարար կշիռը։

Հիմնական աշխատանքների կատարելագործումը, առանց օժանդակ գործառնությունների և, ընդհանուր առմամբ ձեռքի աշխատանքների մեքենայացման, վերջին հաշվով, դարձյալ հանգեցնում է արտադրանքի յուրաքանչյուր միավորի աշխատատարության կրճատմանը, բայց ընդհանուր աշխատաժամանակի մեջ, տվյալ դեպքերում, մեքենական աշխատաժամանակի տեսակարար կշիռը բարձրանալու փոխարեն իջնում է։ Արդյունքի ընդհանուր աշխատատարության իջեցման պայմաններում ձեռքի ու մեքենական աշխատանքի փոխհարաբերությունը պետք է ըն-



թանա այնպես, որ ընդհանուր աշխատաժամանակի կրճատման հետ, ձեռքի աշխատաժամանակի հաշվին, բարձրանա մեքենական աշխատաժամանակի տեսակարար կշիռը։ Այդ իսկ պատճառով հիմնական գործառնությունները կատարելագործելուն զուգընթաց, պետք է լուրջ ուշադրություն նվիրել օժանդակ գործառնությունների մեքենայացման մակարդակի բարձրացմանը։

Ինչպես տեսանք, ընդհանուր աշխատանքի մեջ ձեռքի աշխատանքների տեսակարար կշռի նվազեցման մեծ հնարավորություններ կան օժանդակ բնույթի աշխատանքներում և օժանդակ արտադրամասերում։

ՀՍՍՀ արդյունաբերության մեջ հատկապես ցածր է այնպիսի օժանդակ արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանը, ինչպիսին ներգործարանային ու ներարտադրամասային տրանսպորտն է։ 1965 թվականի հունվարի 1-ի դրությամբ, եթե ՍՍՀՄ արդյունաբերության հիմնական ֆոնդերի արժեքի մեջ տրանսպորտային միջոցների արժեքը կազմում էր 5, ապա ՀՍՍՀ-ում այն հազիվ 1,9 տոկոս էր։ ՀՍՍՀ արդյունաբերության առանձին ճյուղերի հիմնական ֆոնդերի կառուցվածքի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տրանսպորտային միջոցների արժեքի աճման տեմպերը ետ են մնում հիմնական ֆոնդերի մնացած մասի և, հատկապես, դրանց ակտիվ մասի աճման տեմպերից։

Ձեռնարկությունների ներգործարանային տրանսպորտը բնութագրվում է տրանսպորտային տեխնիկայի բազմազանությամբ, որոնք ունեն տարբեր արտադրողականություն և դրա հետևանքով արտադրության տարբեր օղակները միմյանց չեն համապատասխանում։ Տրանսպորտային տեխնիկայի բազմազանությունը սահմանափակում է բանվորների պրոֆեսիաների համատեղման հնարավորությունները։

Գործարանային տրանսպորտի ուղիների մեքենայացումն ու լավ կազմակերպումը կհանգեցնի զբաղված բանվորների թվաքանակի կրճատմանը։ Մինչդեռ, արտադրության որոշ ճյուղերում համախառն արտադրանքի աճմանը զուգահեռ ավելացել է տրանսպորտային փոխադրումների աշխատանքներում զբաղվածների տեսակարար կշիռը։ Հանրապետության բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններում, արտադրամասերում աշխատանքը չի կազմակերպված ժամային գրաֆիկով, ամենուրեք չէ, որ կան հումքի, նյութերի, շինվածքների տեղափոխման նախօրոք մշակված երթուղիներ։

Օժանդակ աշխատանքների և օժանդակ արտադրամասերի մեքենայացման ցածր աստիճանի հետևանքով, յոթնամյակի տարիներին գրեթե անփոփոխ է մնացել ամբողջ արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքներում զբաղվածների տեսակարար կշիռը։ 1959 թվականին դրանք կազմում էին բանվորների ընդհանուր թվաքանակի 52,9 տոկոսը, 1962-ին՝ 51,2 տոկոսը, 1965-ին՝ 51,6 տոկոսը, ըստ որում, դրանց բացարձակ թվաքանակը աճել է*։ Ձեռքի աշխատանքներում զբաղված բանվորների թվաքանակը, 1959 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ավելացել է 67,3 տոկոսով։ Այն առանձնապես բարձր տեմպերով է աճել մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության մեջ։ Դրանով են բացատրվում արդյունաբերության այս ճյուղում աշխատանքի արտադրողականության համեմատաբար ցածր տեմպերը։ Ձեռքի աշխատանքներում զբաղված բանվորների թվաքանակը բարձր տեմպերով է աճել նաև գունավոր մետալուրգիայի (81 տոկոս), թեթև արդյունաբերության (51 տոկոս), շինանյութերի արդյունաբերության մեջ (45 տոկոս) և այլն։ Ահա թե ինչու ՀՍՍՀ արդյունաբերության մեջ 1962—1965 թվականներին բանվորների միջին տարակարգը գրեթե մնում է անփոփոխ, իսկ արտադրության մի շարք ճյուղերում, նույնիսկ, իջնում է։

Ինչ վերաբերում է տարակարգ չունեցող և ցածր տարակարգի բանվորներին, ապա դրանց տեսակարար կշիռը ամբողջ արդյունաբերության բանվորների թվաքանակի մեջ, ճիշտ է, քիչ բարձրանում է (1962 թվականի 31,2 տոկոսից 1965 թվականին դարձել է 31,9), բայց բացարձակ թվաքանակը խիստ աճում է։ Օրինակ, այդ ընթացքում տարակարգ չունեցող բանվորների թվաքանակն ավելացել է մոտ 44, ցածր տարակարգ ունեցողները՝ 31,5 տոկոսով։ Հասկանալի է, որ դրանք հիմնականում օժանդակ աշխատանքներում ընդգրկված բանվորներն են, որոնց աշխատանքը մեքենայացված չէ։ Տարակարգ չունեցող բանվորների թվաքանակը առանձնապես աճել է սննդի (52,5 տոկոս), թեթև (46,4), քիմիական (51) և գունավոր մետալուրգիայի արդյունաբերության մեջ, իսկ ցածր տարակարգ ունեցողներինը՝ մեքենաշինության և մետաղամշակման (42,7 տոկոս), քիմիական (44,7), շինանյութերի (31,3), թեթև (32,2) արդյունաբերության ճյուղերում։

Հետազոտություններից բխում է, որ հանրապետության արդյունաբերության մի շարք ճյուղերում բանվորների որակավորման բարձրացումը գերազանցապես կատարվում է հիմնական բանվորների պրոֆեսիաների գծով և, համեմա-

———

* Մինչդեռ հիմնական բանվորների ընդհանուր թվաքանակի մեջ ձեռքի աշխատանքներում ընդգրկվածների տեսակարար կշիռը ճիշտ է դանդաղ, բայց իջնում է։

*տարար, քիչ չափով՝ օժանդակ բանվորների պրոֆեսիաների գծով: Ըստ որում, որպես կանոն օժանդակ բանվորների մասնագիտացումը կատարվում է սահմանափակ պրոֆեսիաների գծով: Մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ լուրջ ուշադրություն չեն դարձնում բարձր որակավորում ունեցող բանվորների աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման հարցերին: Շատ հաճախ, բարձր որակավորում ունեցող բանվորները կատարում են հասարակ աշխատանք, այսինքն՝ այնպիսի աշխատանք, որ կարող են հաջողությամբ կատարել ցածր և միջին որակավորում ունեցող բանվորները:*

*Այսպիսով, Հայաստանի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման ամենակարևոր գործոններից մեկը ձեռքի աշխատանքի և արտադրության օժանդակ պրոցեսների մեքենայացումն է, դրանցում ընդգրկված բանվորների որակավորման աստիճանի հետագա բարձրացումը:*

*Հայաստանի արդյունաբերության մի շարք ճյուղերում արտադրության տարբեր օղակների տեխնիկական հագեցվածության և արտադրության պրոցեսների մեքենայացման աստիճանի տարբերությունների հետևանքով, արտադրության կառուցվածքային ստորաբաժանումներում տեղ են գտել որոշակի անհամամասնություններ: Դա հատուկ է արդյունաբերության այնպիսի ճյուղի, ինչպիսին մեքենաշինությունն է: Դրա հետևանքով էլ առանձին արտադրամասերում ու տեղամասերում անբավարար են օգտագործվում արտադրական կարողություններն ու աշխատուժը: Արդյունաբերության զարգացումը, առաջին հերթին, պետք է ընթանա օժանդակ արտադրությունների արտադրապրոցեսների մեքենայացման ուղիով այն հաշվով, որ վերացվեն դրանց և հիմնական արտադրապրոցեսների միջև գոյություն ունեցող անհամամասնությունները:*

*Արդյունաբերության զարգացման հարցերը վճռելիս, աշխատատար արտադրությունների հետ միասին պետք է լուրջ ուշադրություն դարձնել նորագույն տեխնիկայի արմատավորման, ձեռնարկություններում մեքենազինվածության, էլեկտրազինվածության բարձրացման, չօգտագործված ներարտադրական ռեզերվների բացահայտման և օգտագործման հարցերին:*

Վ. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ, Լ. ՀԱԿՈԲՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածուներ



# ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ԿԱԶՄԻ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ

Տեխնիկական առաջադիմությունը որակական փոփոխություններ է մտցնում արդյունաբերության մեջ աշխատող բանվորների պրոֆեսիոնալ կազմում: Աստիճանաբար վերանում են իրենց դարն ապրած նեղ բնույթի և ցածրորակ, ծանր ֆիզիկական աշխատանքների հետ կապված պրոֆեսիաներն ու մասնագիտությունները, իսկ դրանց փոխարեն առաջ են գալիս բանվորական նոր պրոֆեսիաներ, որոնք լայն կիրառում են ստանում արդյունաբերության տարբեր ճյուղերում: Տեխնիկական առաջադիմության բազայի վրա արտադրության նորանոր ճյուղեր են առաջանում, իսկ եղածները տրոհվում են ավելի նեղ մասնագիտացված ճյուղերի, որոնք հին պրոֆեսիաների փոխարեն կյանքի են կոչում նոր պրոֆեսիաներ ու մասնագիտություններ:

Բանվորների պրոֆեսիոնալ կազմի փոփոխությունը օբյեկտիվ և օրինաչափ պրոցես է, ինչպես արտադրության ու տեխնիկայի զարգացումը: Հին պրոֆեսիաների անհետացումը և նորերի ձևավորումը բարդ պրոցես է: Այսպես, օրինակ՝ դարբնի պրոֆեսիան դարերի պատմություն ունի, այն պահպանվում է արտադրության ներկա պայմաններում: Բոլոր արտադրական ձեռնարկություններում գործում են դարբնոցներ և դարբիններ, սակայն այլ բնույթով ու ձևով: Այլևս չկան ոչ մրոտ փուքսեր, ոչ ձեռքի ծանր ֆիզիկական աշխատանք գործադրող մուրճահարներ, այսինքն՝ դարբիններ մեր նախկին պատկերացմամբ: Այժմյան դարբնի պրոֆեսիայի էությունն այն է, որ մետաղը վայրկենապես շիկանում է բարձր հաճախականությամբ էլեկտրավառարաններում և դարբինը հատուկ սարքավորումների միջոցով ցանկացած չափ ու ձև է տալիս նրան:

Աշխատանքի պրոֆեսիոնալ բաժանումը բանվորի աշխատանքային գործունեության ոլորտը որոշակի սահմանափակում է, որն կգալի չափով նպաստում է արտադրության զարգացմանն ու մասնագիտացմանը, արտադրության նոր ճյուղերի և դրանց հետ կապված պրոֆեսիաների առաջացմանը: Օրինակ, արտադրողական ուժերի զարգացման որոշ աստիճաններում, երբ առաջացավ մետաղամշակությունը, որպես արտադրության ինքնուրույն բնագավառ, կյանքի կոչեց մետաղագործի պրոֆեսիան: Աշխատանքի բաժանումը ձեռնարկության ներսում մետաղագործի պրոֆեսիան տրոհեց՝ փականագործի, խառատի, դարբնի, ֆրեզերագործի և այլ առանձին պրոֆեսիաների:

Արտադրողական ուժերի զարգացման ցածր մակարդակի պայմաններում գոյություն չուներ պրոֆեսիաների բաժանում՝ առանձին մասնագիտությունների: Արհեստավորն ինքն էր միայնակ կատարում արտադրանքի պատրաստման հետ կապված բոլոր գործողությունները: Նա օգտվում էր ձեռքի ընդհանուր գործիքներից և նրա աշխատանքի արտադրողականությունը գերազանցապես կախված էր բնական ուժերից ու ճարպկությունից, գործիքներից օգտվելու ունակություններից: Մեքենայական ինդուստրիայի ստեղծմամբ տրոհվեցին ոչ միայն պրոֆեսիաները, այլև մասնագիտությունները:

Արտադրության զարգացման արդի պայմաններում առանձնահատուկ նշանակություն է ստանում բանվորների պրոֆեսիոնալ կազմի փոփոխության ուսումնասիրությունը:

Արդյունաբերության պահանջներին համապատասխան նոր աշխատուժի պատրաստումը և ռացիոնալ օգտագործումն անհրաժեշտ է դարձնում բանվորների պրոֆեսիոնալ կազմի փոփոխությունների գիտական վերլուծությունը, «պրոֆեսիա» հասկացության ըմբռնումն ու բնորոշումը: Պրոֆեսիան բնութագրվում է գիտելիքների և հմտությունների մի ամբողջ կոմպլեքսով, որը ձեռք է բերվում ուսուցման և գործնական աշխատանք կատարելու միջոցով:

Պետք է որոշակիորեն կանավանել պրոֆեսիան մասնագիտությունից: Պրոֆեսիան որպես մարդու զբաղմունք, աշխատանքային գործունեությունը բնութագրող հասկացություն ավելի լայն է և իր մեջ կարող է ներառել բազմաթիվ մասնագիտություններ: Այսպես, օրինակ, փականագործի, խառատի, ֆրեզերագործի, էլեկտրամոնտյորի և շատ ուրիշ պրոֆեսիաներից յուրաքանչյուրը ընդգրկում են մի շարք կանավան մասնագիտություններ: Պրոֆեսիան մարդու աշխատանքային գործունեության լայն ու կայուն բնագավառն է, որտեղ աշխատանքի բաժանումը կատարվում է ըստ արտադրական ճյուղերի: Այդ տեսակետից էլ պրոֆեսիան բնութագրելու ժամանակ հիմք է ընդունվում աշխատանքի բաժանման արտադրական սկզբունքը: Այսպես, լեռնային աշխատանքներին համապատասխանում են լեռնային պրոֆեսիաներ, մեքենաշինությանը՝ մեքենաշինական, քիմիական արդյունաբերությանը՝ քիմիական և այլն:

Մասնագիտություն ասելով ի նկատի ունենք աշխատանքի բաժանման որոշակի աստիճանը՝ պրոֆեսիայի սահմաններում, արտադրական տարբեր գործողություններ կատարելու համար, որտեղ բնորոշ ցուցանիշ են օգտագործվող արտադրության այն գործիքները, որոնց միջոցով բանվորը անմիջականորեն ներգործում է աշխատանքի առարկայի վրա:

Պրոֆեսիաների ստեղծման ու տրոհման հիմքը կայմում է աշխատանքի միջոցների արտադրության կարգացումը: Քանի դեռ մեզ մոտ չկար հաստոցաշինական արդյունաբերություն, չկար նաև հաստոցավարի պրոֆեսիան: Իսկ երբ ստեղծվեց և արագ թափով զարգացավ հաստոցաշինությունը, ծնունդ առան նաև հաստոցավարի բազմապիսի պրոֆեսիաներ ու մասնագիտություններ: Բավական է ասել, որ եթե 1926 թ. մինչև 1959 թ. մեխանիկ բանվորների, հարմարաբերողների սարքավորումներ կառավարողների թիվը աճել է 29 անգամ, էլեկտրամոնտյորներինը՝ 42, տեքստիլագործներինը՝ 13, ապա հաստոցավարներինը՝ 97 անգամ: Դա արդյունք է այն բանի, որ միայն 1945—1965 թթ. հանրապետությունում արտադրվող բոլոր տիպի մետաղահատ հաստոցների թիվը ավելացել է ավելի քան 262,6 անգամ:

Մասնագիտացված հաստոցների արտադրության կարգացմամբ լայն կիրառում ստացան կարուսելագործի, հղկողի, հորիզոնական ներտաշողի, շառավղային շաղափողի, պտուտահան, ռանդող, ատամնահան և այլ տիպի խառատային հաստոցների համապատասխան մասնագիտությունները:

Տեխնիկական առաջադիմությանը կուգընթաց ունիվերսալ պրոֆեսիաները տրոհվում են ավելի նեղ պրոֆեսիաների: Այդ պրոցեսը ակնհայտ է դառնում հատկապես հարահոս-կոնվեյերային սիստեմի արտադրության ժամանակ: Երբ կիրառվում են ունիվերսալ մեքենաներ ու հաստոցներ՝ դրանց համապատասխան էլ կյանքի են կոչվում ունիվերսալ պրոֆեսիաներ, օրինակ՝ փականագործի, խառատի, ֆրեզերագործի և այլն: Ի տարբերություն նեղ պրոֆիլի պրոֆեսիաների, որտեղ բանվորը կատարում է սահմանափակ գործողություններ, ունիվերսալ պրոֆեսիաները ընդգրկում են բազմապիսի գործողություններ: Ունիվերսալ մեքենաների վրա տարբեր տեսակի գործողություններ կատարելը բանվորից պահանջում է աշխատանքային հմտությունների և ունակությունների որոշակի մակարդակ: Սակայն այդ մակարդակը չի պարունակում հանրակրթական և տեխնիկական բարձր գիտելիքներ, աշխատանքի մեքենայի բազմակողմանի տիրապետում և այլն:

Ունիվերսալ և նեղ պրոֆիլի պրոֆեսիաների նյութական հիմքը հանդիսանում է առանձին մեքենան: 1937 թվականի տվյալներով ունիվերսալ պրոֆեսիաներն այնքան էին տրոհվել նեղ մասնագիտությունների, որ միայն մետաղագործ բանվորների ավելի քանի 2 հազար պրոֆեսիա և մասնագիտություն կար: Միայն փականագործի պրոֆեսիայի անվան տակ կային ավելի քան 150 կանավան մասնագիտություններ, որոնք բանվորից պահանջում էին գիտելիքներ և հմտություններ մասնակի գործողությունների համար: Պրոֆեսիոնալ բաժանման նեղ մասնագիտացումը հանդիսանում է արտադրության տեխնիկայի զարգացման անցողիկ էտապը: Նրանց փոխարեն ծնունդ են առնում այնպիսի պրոֆեսիաներ, որոնք իրենց էությամբ ապահովում են բանվորների բազմակողմանի զարգացումը:

Տեխնիկական առաջադիմությունն արմատական փոփոխություններ մտցելով բանվորների պրոֆեսիոնալ կազմում՝ կյանքի է կոչում նոր տիպի պրոֆեսիաներ, փոխվում են հին պրոֆեսիաների բովանդակությունը և անհետանում են մի շարք պրոֆեսիաներ՝ իրենց նյութական հիմքի հետ միասին: Վերացել են միանիվ ձեռնասայլակները, հողային աշխատանքներից դուրս են մղվել բահն ու բրիչը: Հողափորը դարձել է էքսկավատորավար, բեռնակիրը՝ վերամբարձ կռունկի մեքենավար և այլն: Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման հետևանքով առաջ են եկել լայն պրոֆիլի պրոֆեսիաներ, որտեղ ձեռքի պրիոմների ու հմտությունների վարպետության փոխարեն որոշիչ դեր են կատարում գիտելիքները, մտավոր ունակությունները:

Եթե ունիվերսալ և նեղ պրոֆիլի պրոֆեսիաների համար աշխատանքի միջոցներ են հանդիսանում առանձին մեքենաները, ապա լայն պրոֆիլի պրոֆեսիաների համար՝ մեքենաների սիստեմը, ամբողջ ավտոմատ գծերը:

Մեքենայացված ու ավտոմատացված արտա-



ՀԱՎԵԼՎԱԾ

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ

# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ԴՊՐՈՑ

ՀՈԿՏԵՄԲԵՐ
1966



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է (1921—1925)

**ՆՎԱՃՎԱԾ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ: ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ X ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ:**

*1921 թվականի սկիզբը: Ռելսերով սուրում են զինվորական էշելոնները: Նրանց տեսքին ու աղմուկին, տաքացվող ապրանքավագոններից թխածող երգերին մարդիկ ընտելացել էին իմպերիալիստական պատերազմի չորս տարիներին և քաղաքացիական պատերազմի երեք տարիներին: Բայց այժմ այդ գնացքները սովորական չեն. նրանք ռազմաճակատ չեն գնում: Այլևս ռազմաճակատ չկա ո՛չ երկրի հյուսիսում, ո՛չ արևմուտքում, ո՛չ էլ Ղրիմում: Սկսվեց բանակի մասնակի զորացրումը: Թեև խնտերվենտներն ու նրանց կամակատարները դեռևս տեր ու տնօրինություն էին անում Հեռավոր Արևելքում, շարունակում էին զինված պրովոկացիաները Անդրկովկասում և Միջին Ասիայում, քաղաքացիական պատերազմը հիմնականում ավարտված էր:*

*— Ընկերնե՛ր, մենք առաջին անգամ ենք համագումարի հավաքվում այնպիսի պայմաններում, երբ սովետական հանրապետությունում ամբողջ աշխարհի կապիտալիստների ու իմպերիալիստների կողմից պահվող թշնամական զորքեր չկան:*

*Այդպիսի խոսքերով դիմեց Լենինը ՌԿ(բ)Կ X համագումարի պատգամավորներին՝ կոմունիստների գրեթե 740 հազարանոց ջոկատի ներկայացուցիչներին: Այդ համագումարը, որն ընթացավ 1921 թվականի մարտի 8—16-ը, պատմության մեջ մտավ որպես երկրի զարգացման, կուսակցության կյանքի կարևոր ուղենիշ:*

*Սովետական պետության միջազգային դրությունը փոխվել էր: Լենինը դեռ մինչև համագումարը նշում էր, որ քաղաքացիական պատերազմում տարած հաղթանակը ապահովել է գլխավորը՝ «պրոլետարական իշխանության և սովետական հանրապետության գոյության հնարավորությունը, նույնիսկ սոցիալիստական հեղափոխությունն ամբողջ աշխարհում ձգձգվելու դեպքում...»*

*Մենք նվաճեցինք մեզ համար պայմաններ, որոնց առկայությամբ կարող ենք գոյություն ունենալ կապիտալիստական տերությունների կողքին, որոնք ստիպված են այժմ առևտրական հարաբերությունների մեջ մտնել մեզ հետ» (4-րդ հրատ., հատոր 31, էջ 515, 516)։*

*Նորմալ դիվանագիտական հարաբերություններ հաստատելով արտասահմանյան մի շարք պետությունների հետ, սովետական կառավարությունը 1921 թվականի մարտին (համագումարի նիստերի օրերին) առևտրական համաձայնություն կնքեց Անգլիայի հետ, որը դրանով իսկ փաստորեն ճանաչեց սովետական իշխանությունը։ Շուտով այդ ուղու վրա կանգնեցին նաև այլ երկրներ։ Եվ ապա մեկ տարի անց սովետական կառավարությունը պաշտոնապես հրավիրվեց միջազգային տնտեսական կոնֆերանսին Ջենովայում (Իտալիա), իսկ այնուհետև հասավ նոր հաղթանակի՝ Գերմանիայի հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատելու պայմանագրի կնքմանը։ Այսպես, արևմուտքի տերությունները կանգնեցին սովետական իշխանությունը իրավաբանորեն ճանաչելու ուղու վրա։*

*Հենց որ քաղաքացիական պատերազմում վճռական հաղթանակներ տարանք, կուսակցությունը սկսեց գլխավոր ուժերը փոխադրել տնտեսական ավերվածության դեմ պայքարի ասպարեզը։ Լենինը ընդգծում էր X համագումարում՝*

*— Ռուսաստանը պատերազմից դուրս եկավ այնպիսի դրությամբ, որ նրա վիճակն ամենից շատ նման է այն մարդու վիճակին, որին ծեծելով կիսամահ են արել. յոթ տարի թակել են նրան, իսկ հիմա, աստված տա, անթացուպերով շարժվի։ Ահա մենք ինչ դրության մեջ ենք։*

*Պատգամավորները լսում էին Իլյիչին, և նրանց մտահայացքի առջև ծավալվում էր պատերազմով խոշտանգված երկրի համապատկերը՝ պայթեցված կամուրջներ, հանգած գործարաններ, ջրածածկ հանքեր, մարած դոմնաներ, աճած մոլախոտեր, խրամահատված դաշտեր։ Խոշոր արդյունաբերական արտադրանքը կրճատվել էր ավելի քան 7 անգամ։ Ածուխի և նավթի հանույթի չափերով երկիրը հետ մղվեց XIX դարը, իսկ չուգունի արտադրությամբ՝ այն մակարդակին, որի վրա նա գտնվում էր Եկատերինա II-ի ժամանակներում։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը նվազեց գրեթե 2 անգամ, իսկ ապրանքայինը՝ 4 անգամ։ Պակասում էր հացը, աղը, լուցկին։ Շաքարի արտադրությունը կրճատվեց գրեթե 45 անգամ։ Մի կտոր օճառը դարձավ թանկարժեք իր։ Օտարերկրյա ինտերվենցիան և տնտեսական բլոկադան տարան մինչև 1918 թվականը երկրի ունեցած ազգային հարստության ոչ պակաս քառորդ մասը։ Ավերվածությանն ավելացան մասսայական համաճարակներն ու սովը։*

*Դժվարությունները դրանով չէին սպառվում։ Կուսակցական մամուլում ավելի ու ավելի հաճախ էին առկայծում «քաղաքական ճգնաժամ» տագնապալից խոսքերը։ Գյուղացիությունն ավելի լրջորեն էր դժգոհություն արտահայտում պարենմասնատրման և առևտրի արգելման հանդեպ։ «Այդ առաջին անգամն էր,— ասում էր Լենինը,— Սովետական Ռուսաստանի պատմության մեջ, և հույս ունեմ վերջինը կլինի, երբ գյուղացիության հոծ զանգվածներ, ոչ գիտակցաբար, այլ բնազդորեն, ըստ իրենց տրամադրության դեմ էին մեզ» (4-րդ հրատ., հատոր 33, էջ 500)։ Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը թուլացավ։ Որոշակի դժգոհություն երևաց նաև բանվոր դասակարգի մոտ, որն ամենից շատ էր զրկանքներ կրել պատերազմի տարիներին (բանվորների կենսամակարդակը իջել էր մոտավորապես 3 անգամ)։ Բանվոր դասակարգը թվապես նվազել էր։ Շատ բանվորներ իրենց գլուխը պահելու համար մեկնում էին գյուղ, դառնում տնայնագործներ։ Այսպիսով, տեղի էր ունենում բանվոր դասակարգի ապադասակարգայնացում։ Դրանով իսկ սեղմվում էր սովետական իշխանության սոցիալական բազան։*

*Լենինը չէր թաքցնում դժվարությունները։ Դաժան իրականությունն էր երևում համագումարում ունեցած նրա ելույթներում։*

*Բանը հասավ խռովությունների՝ գյուղում և գործադուլների՝ քաղաքում։ Դրանց գլխավորում էին կուլակները, էսեռները, մենշևիկները և բոլշևիզմի մյուս թշնամիները։ Նրանք փոխ առան կադետական «Սովետներ առանց կոմունիստների» լոզունգը, որն արտահայտում էր դասակարգային թշնամու նոր տակտիկան, մի տակտիկա, որը հույս ուներ, թե իշխանությունը բոլշևիկների ձեռքից նախահեղափոխական շրջանի տերերին «կանցնի» ոչ թե ձախողված բացահայտ ինտերվենցիայի և քաղաքացիական պատերազմի միջոցով, այլ սովետական կարգը ներքուստ պայթեցնելու միջոցով։*

*Խռովություններն ընդգրկեցին Սիբիրի, Ուկրաինայի մի մասը, Տամբովի նահանգը և երկրի մի շարք այլ շրջաններ։ Իսկ 1921 թվականի մարտի սկզբին, համագումարի նախօրեին, խռովություն բռնկեց Կրոնշտադտում։ Իրադրությունն այնքան լուրջ էր, որ Պետրոգրադի պատգամավորությունը հնարավոր չգտավ Մոսկվա մեկնել. խռովությունը լիկվիդացնելու համար մոբիլիզացվեց մյուս շրջաններից համագումար եկած պատգամավորների մի մասը։*

*Մի շարք տեղական կուսակցական կազմակերպություններ նույնպես այնտեղ ուղարկեցին կոմունիստներին։ Խռովարարների դեմ ուղարկված զորքերի հրամանատար նշանակվեց Մ. Ն. Տուխաչևսկին։ Ամրոցը գրավվեց միաժամանակյա հարվածով հարավից՝ Օրանիենբաումից և հյուսիսից՝ Սեստրորեցկայից։ Զորքերի հարավային խումբը, որի կազմի մեջ էին X կուսհամագումարի պատգամավորները, գործում էր կուսակցության ականավոր ռազմական մասնագետներից մեկի՝ Ա. Ի. Սեդյակինի հրամանատարությամբ։ Խմբի կոմիսարն էր Կ. Ե. Վորոշիլովը։ Հյուսիսային խումբը կազմված էր կարմիր ռազմական կուրսանտներից։ Նրանց հրամանատարն էր Ե. Ս. Կազանսկին, կոմիսարը՝ Ե. Ի. Վեգերը։*

*Ծանր հրետանու և գնդացիրների կրակի տակ ֆիննական ծովախորշի սառույցի վրայով գնում էին հեղափոխության վետերաններ, կուսակցության ականավոր աշխատողներ Ա. Ս. Բուբնովը, Վ. Պ. Զատոնսկին և համագումարի երիտասարդ պատգամավորներ՝ Ալեքսանդր Ֆադեևը՝ ապագա գրողը, Իվան Կոնևը՝ Սովետական Միության ապագա մարշալ, Իվան Թյուլենևը՝ ապագա ժողկոմ և ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ...։ Բեկորներն ու գնդակները չեն խնայում մարտիկներին։ Սպանվեց բժիշկ, 1904 թվականից կուսակցության անդամ Ի. Վ. Ռուսակովը. ընկավ սառույցի վրա կուսակցության համագումարի պատգամավոր, պոետ, կոմերիտմիության Իվանովո-Վոզնեսենսկի նահանգկոմի քարտուղար Գերասիմ Ֆեյգինը և շատ ուրիշներ։*

*Խռովություններն առավել սուր էին արտացոլում պարենմասնատրման*

նկատմամբ դժգոհությունը։ Անհրաժեշտ դարձավ շուտափույթ վերանայելու տնտեսության և հասարակական կյանքի ղեկավարման այն մեթոդները, որ առաջացել էին պատերազմի տարիներին։

Սակայն այդ հարցում կուսակցության մեջ այն ժամանակ կարծիքների միասնություն չկար։ Մինչև համագումարը մի քանի ամիս շարունակ սուր ներկուսակցական դիսկուսիա էր գնում սովետական հասարակությունում արհմիությունների դերի վերաբերյալ։ Փաստորեն խոսքը վերաբերում էր սոցիալիզմի կառուցման ընթացքում ժողովրդական մասսաների նկատմամբ կուսակցական ղեկավարության մեթոդներին։ Հիմնական պայքարը մղվում էր երեք՝ լենինյան, տրոցկիստական և անարխո-սինդիկալիստական պլատֆորմների միջև։

Կուսակցության անդամների և X համագումարի պատգամավորների ճնշող մեծամասնությունը պաշտպանում էին առաջինը, որին անվանում էին 10-ի պլատֆորմ, որովհետև այն ստորագրել էին Կենտկոմի 10 անդամներ և անդամության թեկնածուներ՝ Լենինը, Զինովևը, Տոմսկին, Ռուձուտակը, Կալինինը, Կամենևը, Լոզովսկին, Պետրովսկին, Արտյոմը (Սերգեև), Ստալինը։

Այդ պլատֆորմի հիմքում ընկած էր արհմիությունների՝ որպես կառավարման դպրոցի, տնտեսավարման դպրոցի, կոմունիզմի դպրոցի լենինյան գաղափարը։ Քննարկելուց և խմբագրական փոքր ճշտումներ մտցնելուց հետո համագումարը հաստատեց լենինյան պլատֆորմը որպես համագումարի բանաձև «Արհմիությունների դերի և խնդիրների մասին»։

Տրոցկիստները հանդես էին գալիս արհմիությունները «պետականացնելու», դրանք տնտեսական օրգանների հետ ձուլելու «ձախ» լոզունգներով։ Բացահայտելով Տրոցկու դիրքորոշման էությունը, Լենինն ընդգծում էր, որ այն «տեսականորեն սխալ է... քաղաքականապես անտակտ և վնասակար (5-րդ հրատ., հատոր 42, էջ 392)։ Համագումարը մերժեց տրոցկիստների պլատֆորմը։

Նույն բախտը վիճակվեց նաև այսպես կոչված «բանվորական օպոզիցիային», որն ընկել էր հակառակ ծայրահեղության մեջ։ Այն գլխավորում էին Շլյապնիկովը, Կոլոնտայը և ուրիշներ։ Նրանց առաջարկությունները անարխո-սինդիկալիստական բնույթ ունեին։ Անարխո-սինդիկալիզմը մանրբուրժուական մի հոսանք էր միջազգային արհմիութենական շարժման մեջ, որը գտնվում էր անարխիստական գաղափարների ազդեցության տակ։ Անարխո-սինդիկալիստները արհեստակցական միությունները (ֆրանսերեն՝ «սինդիկատները») հռչակում էին որպես միակ կազմակերպությունը, որը կարող է ապահովել հաղթանակը կապիտալիստների նկատմամբ, իսկ նրանց տապալումից հետո՝ դառնալ արտադրությունն ու բաշխումը կառավարող օրգան։ Այսպիսով, անարխո-սինդիկալիստները ժխտում էին կոմունիստների կուսակցության և պրոլետարիատի դիկտատուրայի մեծ վերափոխիչ դերը։ Հենց այդ ուղու վրա էլ ըստ էության կանգնեց «բանվորական օպոզիցիան»։ Վերջինս պահանջում էր տնտեսության կառավարումը սոցիալիստական պետության ձեռքից վերցնել և տալ «արտադրողների համագումարին», որտեղ մեծ մասամբ կլինեին գյուղացիներ, տնայնագործներ, արհեստավորներ, որոնք երկրի բնակչության գերակշռող մասն էին կազմում։ Դա կհասցներ նրան, որ բանվոր դասակարգը և նրա կազմակերպությունները կլուծվեին մանրբուր-



ժուական տարրերի ծովում, հետևապես և կկործանվեր պրոլետարիատի դիկտատուրան։ Լենինը «բանվորական օպոզիցիայի» առաջարկությունն անվանեց դեմագոգիա, որով օգտվում են մանրբուրժուական, անարխիստական, հակահեղափոխական տարրերը։ Դրա հետ միասին Լենինը համագումարում նշեց՝ «որքանով որ «բանվորական օպոզիցիան» պաշտպանել է դեմոկրատիան, որքանով որ նա առողջ պահանջներ է դրել, մենք կանենք առավելագույնը նրա հետ մերձենալու համար...» (հ. 43, ռուս., էջ 55)։

Ներկուսակցական հարցերի առթիվ համագումարի ընդունած որոշումների նշանակությունն այն էր, որ պահպանվի կուսակցության միասնությունը՝ նրա ուժի և ազդեցության գլխավոր պայմանը։ ՌԿ(բ)Կ X համագումարը ընդունեց Լենինի «Կուսակցության միասնության մասին» բանաձևը, գտնելով, որ պետք է անհապաղ ցրվեն բոլոր ֆրակցիաները։ Դասակարգային սուր պայքարի, տնտեսական ավերվածության պայմաններում Լենինը «անթույլատրելի շռայլություն» էր համարում արհմիությունների վերաբերյալ դիսկուսիան։ Վերջինս կուսակցության ուշադրությունն ու ուժերը շեղել էր տնտեսությունը վերականգնելու անհետաձգելի գործերից։ «Կուսակցության միասնության մասին» բանաձևով համագումարը կազմակերպական երաշխիքներ ստեղծեց ֆրակցիոնականության դեմ։ Կենտկոմին հատուկ լիազորություններ տրվեցին միասնության համար մղվող պայքարում։ Կենտկոմն իրավունք ստացավ կուսակցությունից հեռացնելու Կենտկոմի անդամներին կարգապահությունը խախտելու և ֆրակցիոն գործողությունների համար։ Այդ որոշումը բացառիկ դեր խաղաց կուսակցության կյանքում, հետագա օպոզիցիաները կազմակերպչորեն ջախջախելու գործում։

Այն իրադրությունը, որ ստեղծվել էր երկրում 1921 թվականի գարնանը, պահանջում էր նաև ուրիշ այլ անհետաձգելի որոշումներ։ Գլխավոր խնդիրը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդումն էր։ Լենինն այդ դաշինքը համարում էր «ամենակախարդական ուժն աշխարհում»։ Բանվորների ու գյուղացիների դաշինքի ամրապնդումն ու զարգացումը հնարավոր էր միայն տնտեսական հիմքի վրա։ Կուսակցությունը պետք է որոշեր հետևյալ հարցը. սոցիալիզմ կառուցել առանց ապրանքա-դրամական հարաբերությունները (որպիսիք, շատ կոմունիստների կարծիքով, հատուկ էին միայն կապիտալիզմին օգտագործելո՞ւ, թե՞ տնտեսական հաշվարկը, ապրանքաշրջանառությունը օգտագործելու հիման վրա։ Լենինն ուրվագծեց այդ պրոբլեմի լուծումը, նոր հասարակությունը պետք է կառուցել «Ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա... Այսպես ասաց մեզ կյանքը» (4-րդ հրատ., հատոր 33, էջ 46, 47)։

Համագումարի ուշադրության կենտրոնում գտնվեց մի հարց, որը սկզբնապես հրապարակված օրակարգում նշված չէր. դա պարենմասնատրումը պարենհարկով փոխարինելու հարցն էր։ Այդ հարցի լուծումը հասունացել էր կուսակցության նախնական մեծ աշխատանքի ընթացքում։

Նէպի որոշ գծեր Լենինը նախատեսել էր դեռևս 1918 թվականի գարնանը իր «Սովետական իշխանության հերթական խնդիրները» աշխատությունում։ Նա էականապես զարգացրեց այդ գծերը կուսակցության X համագու-

մարի նախապատրաստման ընթացքում և համագումարում տված իր զեկուցումներում՝ Կենտկոմի քաղաքական հաշվետվությունում և պարենհարկի մասին զեկուցման մեջ։

Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ պարենմասնատրումը արտադրությունում գյուղացիներին զրկում էր տնտեսական խթանից, որովհետև այն, անկախ տնտեսական արդյունքներից, գյուղացիներին թողնում էր արտադրանքի սոսկ նվազագույնը, որն անհրաժեշտ էր ընտանիքի անձնական սպառման համար։ Իսկ պարենհարկը, նախ՝ մասնատրումից պակաս էր և, երկրորդ, հայտարարվում էր նախապես (ցանքի նախօրյակին)։ Այն չէր կարող ավելացվել տարվա ընթացքում։ Հետևապես, արտադրանքի ամբողջ ավելցուկը հարկը տալուց հետո մնում էր գյուղացուն։

Բայց դա գյուղատնտեսության մեջ նյութական խթաններ ստեղծելու պրոբլեմի սոսկ մի մասն էր։ Հիրավի, գյուղացին ինչպե՞ս կարող էր իրացնել իր արտադրության ավելցուկը։ Միայն առևտրի ճանապարհով։ Այստեղ ցայտուն կերպով դրսևորվեց էկոնոմիկայի հարցին Լենինի մոտեցման ստեղծագործական բնույթը։ Համագումարում Լենինը վճռականապես հայտարարեց, որ պետք է անցնել «շրջանառության ազատությանը»։

Պատգամավորները տեղում քարացան այդ խոսքերը լսելով։ Ինչպե՞ս թե։ Ոմանց դա թվաց նվաճված դիրքերի անհիմն հանձնում, սոցիալիզմի հիմնական հասկացությունների կործանում։ Շատերը չէին հասկանում, որ քաղաքացիական պատերազմի պայմաններում ապրանքա-դրամական հարաբերությունների կծկումը հարկադրական էր։ Առևտրի արգելումը բացահայտվում էր արտադրության կրճատումով և այդ պատճառով էլ պարենային, հումքի և այլնի սահմանափակ միջոցների կենտրոնացված բաշխում մտցնելու անհրաժեշտությամբ։ Բնական է, որ ռազմական կոմունիզմի տարիներին կուսակցության ու պետության բոլոր որոշումներն ուղղված էին «առևտրի ազատության» դեմ։ Պատգամավորները հիշում էին, թե ինչպես մի տարուց քիչ ավելի առաջ էսեռական «առևտրի ազատություն» լոզունգի առթիվ ինքը Իլյիչը ասում էր՝ «...մենք դրան երբեք չենք համաձայնվի, ավելի շուտ բոլորս մարտում կընկնենք, քան դրանում զիջումներ կանենք» (4-րդ հրատ., հատոր 30, էջ 277)։ Այն պահին առևտրի ազատությունը կբարդացներ սովետական իշխանության ծանր դրությունը։ Բայց երբ արդեն բուրժուազիան պարտություն է կրել պատերազմում, կուսակցությունը կարող էր ձեռնամուխ լինել տնտեսության վերականգնմանն ու զարգացմանը։ Իսկ դա հնարավոր չէր առանց նյութական խթաններ ստեղծելու արտադրությունում, մասնավորապես՝ առանց ապրանքա-դրամական հարաբերությունների վերածնման ու ընդլայնման։ Լենինի, որպես տեսաբանի ու քաղաքագետի մեծությունն էլ հենց այն էր, որ նա հին հետևությունը դոգմա չէր դարձնում, այլ հիմնավորում էր այն միտքը, որ անցումը կապիտալիզմից սոցիալիզմին ոչ միայն չի նշանակում հրաժարումն ապրանքա-դրամական հարաբերություններից, այլ, ընդհակառակը, պահանջում է դրանք թույլատրել և զարգացնել։ Միայն այդպես կարելի էր վերստեղծել համառուսաստանյան ներքին շուկա, առանց որի անհնարին էր էկոնոմիկան առաջ շարժել։

Պատգամավորներին ամենից շատ հուզում էր կապիտալիզմի անխուսա-



փելի աշխուժացումը մասնավոր առևտուրը վերականգնելու դեպքում։ Այդ հին հարցին Լենինն իր զեկուցման մեջ շատ տեղ հատկացրեց։

— Կարելի՞ է արդյոք մինչև մի որոշ աստիճան վերականգնել առևտրի ազատությունը, կապիտալիզմի ազատությունը մանր հողագործների համար, դրանով իսկ չքայքայելով պրոլետարիատի քաղաքական իշխանության արմատները...։ Կարելի է, որովհետև հարցը չափի մեջ է։

Եվ Լենինը բացատրում էր, որ հրամանատարական բարձունքները սոցիալիստական պետության ձեռքում պահպանելու դեպքում ազատ առևտուրը կօգնի աշխուժացնել տնտեսությունը և արդյունաբերությունը վերականգնելու համար ստանալ անհրաժեշտ քանակությամբ պարեն և հումք։ Հետևաբար, ընդգծում էր Լենինը, մենք որպես պետություն մեր քաղաքական իշխանությանը կավելացնենք տնտեսական իշխանություն։ Իսկ դա կհասցնի պրոլետարիատի դիկտատուրայի ամրապնդմանը։

Պարենմասնատրումը հարկով փոխարինելուն համաձայնեցին բոլորը, բայց Լենինի միտքն իր ամբողջ ծավալով միանգամից չըմբռնվեց։ Այսպես, պարենավորման ժողովրդական կոմիսար Ա. Դ. Ցյուրուպան, Լենինի մերձավորագույն զինակիցներից մեկը, որը շուտով նրա տեղակալը դարձավ ժողկոմսովետում, սկզբում կարծում էր, թե կոոպերացիան, օրինակ, առաջվա նման պետք է կազմակերպորեն ենթարկվի պետությանը ի դեմս պարենժողկոմատի։ Դա, իհարկե, կխանգարեր կոոպերացիայի՝ որպես մասսաների ինքնուրույն տնտեսական կազմակերպության զարգացմանը, մի կազմակերպություն, որը պետության հետ միասին կարող էր մասնավորի դեմ պայքար մղել շուկայում։ Այդպիսի պատկերացումների հիմքում ընկած էին ռազմական կոմունիզմի իդեալականացումը և այն սխալ պատկերացումը, թե առևտուրն իբր թե միայն կապիտալիստական էկոնոմիկայի գործիք է։

Շուտով ակնառու դարձավ Լենինի իրավացիությունը։ Կուսակցությունը վճռականապես պաշտպանեց նոր տնտեսական քաղաքականության ուղիներով սոցիալիզմի կառուցման նրա հռչակած կուրսը։ Ամրապնդվեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Աճեց կուսակցության հեղինակությունը։ «Ժողովրդական մասսայի մեջ մենք, այնուամենայնիվ, մի կաթիլ ենք ծովում և մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ, երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը» (4-րդ հրատ., հատոր 33, էջ 360—361)։

Բազմազգ սովետական երկրում միասնական պետական քաղաքականություն կիրառելը հսկայական չափով կախված էր հետամնաց ազգային ծայրամասերի աշխատավորներին սոցիալիստական շինարարության մեջ ներգրավելուց։ X համագումարում դրվեց ազգությունների գործերի ժողկոմ Ստալինի զեկուցումը՝ «Կուսակցության հերթական խնդիրներն ազգային հարցում»։ Համագումարն ընդգծեց, որ ազգային հարցը օրակարգից չի հանվում։ Այժմ այդ հարցի էությունը ժողովուրդների սոցիալ-տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման մակարդակում կապիտալիզմից մնացած փաստական անհավասարության վերացումն է։ Այդ խնդրի լուծումը սերտորեն կապված էր ժողովրդական տնտեսության վերականգնման, նրա սոցիալիստական վերակառուցման հետ։

Ազգային հարցի հաջող լուծումն անհնարին էր առանց պրոլետարական

ինտերնացիոնալիզմից կատարվող շեղումները հաղթահարելու: Համագումա-
րը վճռականապես դատապարտեց տեղական նացիոնալիզմը՝ առաջին պլանի
վրա ազգային, այլ ոչ թե աշխատավորների դասակարգային շահերի առաջ-
մղումը: Այն ժամանակվա պայմաններում գլխավոր վտանգը մեծապետա-
կան շովինիզմն էր, ժողովուրդների ազգային առանձնահատկությունների
անտեսումը: Համագումարը նշեց, որ «կոմունիզմում նացիոնալիստական և
առաջին հերթին գաղութատիրական տատանումների վերացումը կուսակցու-
թյան կարևորագույն խնդիրներից մեկն է ծայրամասերում»:

X համագումարը քննարկեց տնտեսական, սոցիալական, քաղաքական,
ներկուսակցական կարևորագույն հարցեր: Կուսակցական-դաստիարակչական
աշխատանքին նվիրեց իր զեկուցումը բոլշևիզմի վետերաններից մեկը՝ Մ. Ս.
Օլմինսկին: «Կանցնի մի քիչ ժամանակ,— ասաց նա,— և երիտասարդ կո-
մունիստները կհարցնեն՝ «Իսկ ի՞նչ բան է Փետրվարյան հեղափոխությունը:
Իսկ ի՞նչ բան է Հոկտեմբերյան հեղափոխությունը»»: Առանց ՌԿ(բ)Կ պատ-
մությունն ուսումնասիրելու անհնարին է «հասկանալ կուսակցության հոգին»:

«Դեպի մասսաներ».— ահա X համագումարի գլխավոր լոզունգը: Այդ
խոսքերով ավարտվեց համագումարի ընտրած Կենտկոմի առաջին պլենումի
դիմումը կուսակցությանը: Կուրսը մշակված էր: Հարկավոր էր այն կենսա-
գործել:

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

«Իսկ ի՞նչ ենք կառուցում», իրենց հարց էին տալիս որոշ
կոմունիստներ, նայելով բոլոր ծերպերից դուրս սողա-
ցող մասնավոր ձեռնարկատերերին: Շրջադարձն այնքան
անդամնե-
շեշտակի էր, որ կուսակցության ոչ բավականաչափ հասունացած
րը և շատ անկուսակցականներ սխալ կերպով նէպը բացատրում էին որպես
նահանջում,
չարդարացված զիջում կապիտալին, չնկատելով նոր տնտեսական քաղաքա-
կանության էությունը՝ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամ-
րապնդումը: «Մենք այժմ նահանջում ենք, կարծես թե ետ ենք նահանջում,
բայց մենք դա անում ենք, որպեսզի... հետո վազենք և ուժգնորեն առաջ ցատ-
կենք»: Այդպես էր բնութագրում Լենինը «նահանջի» իմաստը:

Ոչ պակաս վտանգավոր մոլորություն էր նէպի մասին այն պատկերացու-
մը, թե դա կուսակցության քաղաքականության մեջ տակտիկական մի խիստ
կարճատև միջոցառում է: Ռազմական կոմունիզմի տրադիցիաները կենսու-
նակ էին: Նրանց դեմ մղվող պայքարը շատ ուժ ու ժամանակ էր պահանջում:

Կուսակցությունը մշտապես, իսկ այդ բեկումային ժամանակաշրջա-
նում հատկապես, շատ էր ուշադրություն դարձնում իր քաղաքականությու-
նը պարզաբանելու վրա: Այդ բանում հսկայական դեր էին խաղում Լենինի
հոդվածները, բրոշյուրները, ելույթները: 1921 թվականի ապրիլին նա ավար-
տեց «Պարենային հարկի մասին» աշխատությունը, որին ձեռնամուխ եղավ
X համագումարից հետո: Նրանում տրված է նոր
տնտեսական քաղաքականության օբյեկտիվ անհրաժեշտության գիտական
հիմնավորումը: Դրան էին նվիրված Լենինի հետագա մի շարք հոդվածներն ու
զեկուցումները, այն է՝ «Հոկտեմբերյան հեղափոխության չորսամյա տարե-
դարձի առթիվ», «Ոսկու նշանակության մասին այժմ և սոցիալիզմի լիակա-
տար հաղթանակից հետո», «Ռուսաստանի հեղափոխության հինգ տարին և
համաշխարհային հեղափոխության հեռանկարները» և այլ աշխատություններ:



Ամբողջ 1921 թվականը Լենինը բնորոշեց որպես «տնտեսական ռազմա-
կանության ոռնումների» տարի: 1921 թվականի գարնանը ամենուրեք կայա-
ցան կուսակցական կոնֆերանսներ ու ժողովներ, որտեղ քննարկվում ու
կոնկրետացվում էին ՌԿ(բ)Կ X համագումարի որոշումները: Նէպի մի քա-
նի ամսվա պրակտիկան մեծ նյութ տվեց: Վերջինս վերլուծման ենթարկվեց
Համառուսաստանյան X կոնֆերանսում, որը հրավիրվեց ժամկետից շուտ,
1921 թվականի մայիսին: Հենց այստեղ նէպի, որպես կարճատև միջոցի մասին
սխալ պատկերացումների հետ ունեցած բանավեճում Լենինը հիմնավորեց
այն հետևությունը, որ նէպը մի «քաղաքականություն է, որը պետք է կիրառ-
վի լրջորեն և երկար ժամանակով»:

Կյանքը պատասխանեց նաև այն հարցին, որը մինչև վերջ պարզված
չէր X համագումարում. որո՞նք են «տնտեսական շրջանառության» սահման-
ներն ու բնույթը: Սկզբում ենթադրվում էր, թե առևտուր կանեն միայն մաս-
նավոր ապրանքարտադրողները (գյուղացիները, արհեստավորները): Իսկ սո-
ցիալիստական ձեռնարկությունների տնտեսական հարաբերությունները մի-
մյանց հետ և մանրապրանքային գյուղացիության հետ նկատի էր առնվում
կառուցել ուղղակի ապրանքափոխանակության հիման վրա, առանց փողի և
առանց առևտրի:

Բայց արդեն 1921 թվականի հոկտեմբերին Լենինը նշեց, որ ապրանքա-
փոխանակությունը ձախողվեց, «մասնավոր շուկան մեզնից ուժեղ դուրս
եկավ, և ապրանքափոխանակության տեղը սովորական առուծախ, առևտուր
ստացվեց» (4-րդ հրատ., հատոր 33, էջ 95): Այստեղից հետևում էր այն
եզրակացությունը, որ «նահանջը» ռազմական կոմունիզմից դեպի առևտուրը՝
միայն մասնավոր սեկտորում, բավական չէ: Հարկավոր է ապրանքա-դրա-
մական հարաբերությունների անցնել նաև ժողովրդական տնտեսության սո-
ցիալիստական սեկտորում: Լենինը հիմնավորում էր այն միտքը, որ փողը և
առևտուրը սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման անհրաժեշտ լծակ-
ներն են: Նոր տնտեսական քաղաքականության հիմնական բովանդակությու-
նը, հետևաբար, ամենևին էլ գյուղացիների մասնավոր սեփականատիրա-
կան ձգտումներին զիջում անելը չէր: Գլխավորն այն էր, որ ամրապնդվեն ու
զարգանան տնտեսական շինարարության տնտեսական խթանները: Դա պայ-
մաններ էր ստեղծում տնտեսության մեջ սոցիալիստական կացութաձևի, այ-
սինքն՝ պետական ֆաբրիկաների, սովխոզների, կոլտնտեսությունների և այլնի
առողջացման ու զարգացման համար: Դրանով իսկ տնտեսական հիմք էր
պատրաստվում կապիտալիստական տարրերի նկատմամբ նոր հարձակման
համար: Բայց այժմ այդ հարձակումը ծավալվում էր պայքարի տնտեսական
միջոցների կատարյալ սպառազինությամբ:

Կուսակցությունն իր խնդիրը մշտապես համարել է պայքարը հանուն
ժողովրդի շահերի: Այն պահին գլխավորը աշխատավորների դրության թե-
թևացումն էր արդյունաբերության և գյուղատնտեսության մթերքների արտա-
դրությունը վերականգնելու միջոցով:

Տնտեսական ու քաղաքական բոլոր հիմնական հարցերի լուծումն այն
ժամանակ դեմ էր առնում գյուղացիական տնտեսության վերելքին: Պարեն-
հարկն այդ բանի համար ավելի բարենպաստ իրադրություն ստեղծեց:
Էկոնոմիկայի աշխուժացումն սկսվեց նէպի առաջին իսկ տարում: Այն

ավելի ակնհայտ կլիներ, եթե չլիներ նոր, ծանր դժբախտությունը՝ 1921 թվականի երաշտը և սովը. խանձված դաշտեր, անմարդաբնակ գյուղեր։ Իրենց մշտական բնակավայրերից սովահար զանգվածները շարժվեցին հաց փնտրելու։ Սով էր ապրում 34 նահանգ. Պովոլժիեն, Հյուսիսային Կովկասը, Ուկրաինայի մի մասը և ուրիշ այլ շրջաններ՝ 30 միլիոն մարդ։ 1921 թվականի գարնանը մոտ 1 միլիոն մարդ մահացավ սովից։ Երկիրը լարել էր բոլոր ուժերը դժբախտությունը հաղթահարելու համար։ Շտապ կերպով պարենային ռեզերվներ էին ստեղծվում երաշտի չենթարկված շրջաններում։ Միջոցներ էին հավաքվում սովյալներին օգնելու նպատակով։ Միջոցներ էին ձեռք առնվում արտասահմանում հաց գնելու համար։ Կուսակցության և պետության արտակարգ ջանքերի շնորհիվ միայն հաջողվեց մեծ դժվարությամբ անցկացնել այդ սոսկալի տարերային աղետը։ 1922 թվականը բերքառատ էր, և գյուղը քիչ-քիչ սկսեց ոտքի կանգնել։

Կուսակցությունը շարունակում էր կատարելագործել և զարգացնել իր տնտեսական քաղաքականությունը։ XI կուսկոնֆերանսը (1921 թվականի դեկտեմբեր) տնտեսական աշխատանքի ղեկավարությունը կուսակցության հիմնական խնդիրը համարեց։ Կոնֆերանսը կոչ արեց քաղաքականությունը վարել այն ուղղությամբ, որպեսզի հաշվի նստելով շուկայի օրենքների հետ, իշխել այդ օրենքներին և խստորեն կշռադատված ճանապարհով, «շուկայի պրոցեսի ճիշտ հաշվառման հիման վրա կառուցված տնտեսական միջոցառումներով իր ձեռքը վերցնել շուկայի և դրամական շրջանառության կարգավորումը» (ՍՄԿԿ... բանաձևերում, մաս I, Հայպետհրատ, 1954 թ. էջ 751)։

Այն նորը, որ հայտնվեց կուսակցության աշխատանքում նէպի առաջին տարվա ընթացքում, ամփոփեց ՌԿ(բ)Կ XI համագումարը, որ կայացավ 1922 թվականի մարտի 27—ապրիլի 2-ը։ Բացի Կենտկոմի, վերստուգիչ հանձնաժողովի, ԿՎՀ-ի, կոմինտերնում ՌԿ(բ)Կ պատվիրակության հաշվետվություններից, համագումարը քննարկեց արհեստակցական միությունների, կարմիր բանակի, ֆինանսական քաղաքականության, կուսակցության ամրապնդման վերաբերյալ հարցեր։ Կենտկոմի քաղաքական հաշվետվության մեջ Լենինը արտահայտեց գլխավոր հանրագումարը՝

— Մենք մի տարի նահանջեցինք։ Այժմ մենք պետք է կուսակցության անունից ասենք՝ բավակա՛ն է։ Այն նպատակը, որը հետապնդվում էր նահանջով, նվաճված է։ Այդ ժամանակաշրջանը վերջանում է կամ վերջացել է։

Հարձակման խնդիր դնելով, Լենինը, հասկանալի է, չէր հորդորում վերադառնալ ռազմական կոմունիզմի դիրքերը, այնպես, ինչպես որ «նահանջը» սոցիալիստական շինարարության դադարեցում չէր նշանակում։ Կապիտալիզմի վրա հարձակումը կարելի էր ծավալել միայն նոր հիմունքով՝ նէպի հիման վրա։ Դա պահանջում էր կազմակերպորեն, տեսականորեն և նույնիսկ հոգեբանորեն «վերազինել» այն կոմունիստներին, որոնք սխալ կերպով առևտուրը և սոցիալիզմը անհամատեղելի էին համարում։ Լենինն այդ խնդիրն արտահայտեց «Կոմունիստները պետք է սովորեն առևտուր անել» հայտնի լոզունգով։ Միայն այդպես կարելի էր տնտեսապես ամրապնդել ու ընդլայնել սոցիալիստական կացութաձևը ժողովրդական տնտեսությունում, մի կացութաձև, որի հետ կապվում էր երկրի ամբողջ ապագան։



Վ. Ի. Լենինը կոմունիստներին սովորեցնում էր լրջախոհ, ինքնաքննադատաբար կշռադատել իրադրությունը։ Նա XI համագումարում ասաց՝

— Պրոլետարիատը չի վախենում խոստովանել, որ հեղափոխության մեջ այսինչ կամ այնինչ բանըստացվեց հիանալի, իսկ այսինչ կամ այնինչ բանը չստացվեց։ Բոլոր հեղափոխական պարտիաները, որոնք մինչև այսօր կործանվել են, կործանվել են նրանից, որ գոռոզացել են և չեն կարողացել տեսնել, թե ինչումն է իրենց ուժը, և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին։ Իսկ մենք չենք կործանվի, որովհետև չենք վախենում խոսել սեփական թուլությունների մասին և սովորում ենք հաղթահարել դրանք։

Աշխատանքի նոր պայմաններին համեմատ (տնտհաշվարկ, դրամաշրջանառություն և այլն) բոլոր կուսակցական և տնտեսական օրգանների վերակառուցումը ավարտվեց հիմնականում 1922 թվականի երկրորդ կեսին։ Այն թելադրվում էր սոցիալիզմի համար մղվող պայքարի, կենաց ու մահու պայքարի խնդիրներով։

«Հարկավոր է այդ ամենին նայել զգաստ՝ ով ում», այդպես էր դնում հարցը Լենինը։

Կուսակցությունը հոգ էր տանում իր շարքերի միաձուլության համար։ XI համագումարի ժամանակ նա ուներ 532 հազար մարդ՝ մոտավորապես քառորդ մասով պակաս, քան մեկ տարի առաջ։ Դա արդյունք էր առաջին կուսակցական մասսայական զտման, որն սկսվեց 1921 թվականի երկրորդ կեսին։ Զտումը դիպավ նրանց, ովքեր արտահայտում էին մանրբուրժուական հայացքներ, ինչպես նաև կարիերիստական տարրերին, որոնք շտապել էին կուսակցության մեջ մտնել այն բանից հետո, երբ նա կառավարող դարձավ։

Խնդիրների բարդացումը պահանջում էր ուշադրություն դարձնել կուսակցական և պետական ապարատների կառուցվածքի հարցերին, ավելի հստակորեն սահմանազատել կուսակցական և սովետական օրգանների գործունեությունը։ Այդ մասին Լենինը գրել էր համագումարից առաջ, նշելով, որ հարկավոր է «կուսակցության վրա թողնել միասին վերցրած բոլոր պետօրգանների աշխատանքի ընդհանուր ղեկավարությունը, առանց այժմյան չափից դուրս հաճախակի, ոչ կանոնավոր, հաճախ մանր միջամտության» (4-րդ հրատ., հատոր 45, էջ 61)։ Տեղի էր ունենում ֆունկցիաների ներքին սահմանազծում նաև կուսակցության ղեկավարության մեջ։ Ընդ որում քաղբյուրոյի և կազմբյուրոյի հետ միասին ժամանակի ընթացքում մեծանում էր Կենտկոմի քարտուղարության նշանակությունը։ XI համագումարից հետո Կենտկոմի առաջին պլենումում Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրվեց քաղբյուրոյի անդամ Ի. Վ. Ստալինը։

Կուսակցությունը որոշեց նաև այլ կազմակերպական-քաղաքական պրոբլեմներ։ Օրվա հարց դարձավ մեկ միասնական պետության մեջ սովետական հանրապետությունների միավորման խնդիրը։

### ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

Պատմության մեջ բազմազգ պետությունները քիչ չեն եղել։ Բայց դրանց մեջ չի եղել և ոչ մեկը, որտեղ բոլոր ժողովուրդները իրավահավասար լինեին։ Այդպիսի պետություն առաջին անգամ ստեղծվեց Մեծ Հոկտեմբերի հաղթանակի հետևանքով։ Բոլշևիկյան կուսակցությունը ոչ միայն հռչակեց, այլև գործնականորեն իրականացրեց իր ազգային ծրագրի արմատական

սկզբունքը՝ ազգերի ինքնորոշման իրավունքը, ընդհուպ մինչև անջատում ու ինքնուրույն պետություններ կազմելը։ Հսկայական երկրի տերիտորիայում առաջացան մի շարք ինքնավար և ինքնուրույն սովետական ազգային հանրապետություններ։ Նրանց միջև ամուր կապեր հաստատվեցին։ «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում,— գրում էր Լենինը,— այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա»։ Լենինը նախազգուշացնում էր, որ «այդ միությունը չի կարելի միանգամից իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ» (4-րդ հրատ., հատոր 30, էջ 368)։ Ազգերի միություն հաստատելու համար անհրաժեշտ պայմաններ կային։ Ժողովուրդները սերտ միասնության մեջ կատարեցին հեղափոխություն։ Նրանք ունեին մեկ նպատակ՝ սոցիալիզմ։ Միասնության կարևոր գործոնը ընդհանուր կոմունիստական կուսակցությունն էր՝ ՌԿ(բ)Կ-ն։ Հանրապետությունների կոմունիստական կուսակցությունները գործում էին որպես կոմունիստ-լենինյանների այդ բանակի ջոկատներ։

ՌՍՖՍՀ-ն այդ կենտրոնն էր, որի շուրջ համախմբվում էին սովետական հանրապետությունները։ Սովետական Ռուսաստանը տվեց ազգային-պետական շինարարության առաջին օրինակը։ Նա հաստատվեց որպես սոցիալիստական ազգային ինքնավարության հիման վրա միավորված ժողովուրդների ազատ միություն։

Պաշտպանելով հեղափոխության նվաճումները, այդ թվում իր ազգային անկախությունը, ՌՍՖՍՀ-ն և մյուս սովետական հանրապետությունները քաղաքացիական պատերազմի տարիներին միմյանց միջև կնքեցին մի շարք երկկողմանի պայմանագրեր, այդպիսով ստեղծելով սերտ ռազմա-քաղաքական միություն։ Հանրապետությունների միջև կապերը տարեց-տարի ամրանում էին։ Այսպես, ըստ 1920 թվականի վերջում ստորագրված պայմանագրի, միացան ՌՍՖՍՀ-ի և ՈւՍՍՀ-ի մի շարք պետական օրգաններ՝ ռազմական և ծովային գործերի, արտաքին առևտրի, ֆինանսների, հաղորդակցության ճանապարհների, փոստի և հեռագրի, աշխատանքի ժողովրդական կոմիսարիատները, ԺՏԳԽ-ն։ Այնուհետև ՌՍՖՍՀ-ի հետ երկկողմանի պայմանագրեր կնքեցին Բելոռուսիան և Անդրկովկասի հանրապետությունները։ Դա կարևոր էտապ է ազգային-պետական շինարարության բնագավառում։

Այսպիսով, 20-ական թվականների կեսերին երևան եկան սոցիալիստական ֆեդերացիայի երկու հիմնական ձևեր. մեկը հենվում էր ինքնավարության վրա (ՌՍՖՍՀ), մյուսը արտահայտվում էր ՌՍՖՍՀ-ի և մյուս ինքնուրույն սովետական հանրապետությունների միջև կնքված երկկողմանի պայմանագրերով։

Անցումը նէպին ուժեղացրեց հանրապետությունների սերտ միավորման ձգտումը, նպաստեց տնտեսական կապերի զարգացմանը նրանց միջև։ Տնտեսական խնդիրների ավելի ու ավելի առաջին պլանը մղվելու համեմատ պարզ էր դառնում, որ կապերի նախկին պայմանագրային ձևերն արդեն բավարար չեն։ Դրանք կարող էին միայն ապահովել հանրապետությունների տնտեսական գործունեության կոորդինացումը այն ժամանակ, երբ էկոնոմի-



կայի վերածնման համար պահանջվում էր միասնական պետության շրջանակներում երկրի բոլոր միջոցների միավորում։ Այդ պայմաններում ժողովուրդների միավորիչ շարժումը, որին գլխավորում էր կոմունիստական կուսակցությունը, որակական նոր աստիճանի բարձրացավ։

1922 թվականի գարնանը Ադրբեջանական, Հայկական և Վրացական սովետական հանրապետությունները, օգտագործելով սովետական ֆեդերատիվ կապերի փորձը, միավորվեցին։ Այդպես առաջացավ Անդրկովկասյան Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը (ԱՍՖՍՀ), որը գոյություն ունեցավ մինչև 1936 թվականը։

1922 թվականի գարնանը Ուկրաինայի, Բելոռուսիայի և Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունները, քննարկելով ՌՍՖՍՀ-ի հետ ավելի սերտորեն միավորվելու ուղիները, խնդրանքով դիմեցին ՌԿ(բ)Կ Կենտկոմին՝ մշակել միասնական սովետական պետության սկզբունքներն ու ձևերը։ Դա բարդ խնդիր էր։

Նոր պետական միավորման նախագիծ մշակելու համար կուսակցության Կենտկոմը ստեղծեց մի հանձնաժողով, որի մեջ մտան նաև ՈւՍՍՀ-ի, ԲՍՍՀ-ի և ԱՍՖՍՀ-ի ներկայացուցիչները։ Լենինն այդ հանձնաժողովին չմասնակցեց. նա հիվանդ էր։ Հանձնաժողովի աշխատանքի պրոցեսում Ստալինն առաջ քաշեց «ավտոնոմիզացիայի» պլան։ Միակողմանիորեն գնահատելով ՌՍՖՍՀ-ի և մյուս սովետական հանրապետությունների պրակտիկան, նա առաջարկում էր բոլոր սովետական հանրապետությունները միավորել ՌՍՖՍՀ-ի շրջանակներում՝ ինքնավարության իրավունքով և Ռուսաստանի հանրապետության պետական օրգանները միասնական պետության բարձրագույն օրգաններ ճանաչելով։ Այդ պլանը սխալ էր. այն բովանդակում էր մեծապետական շովինիզմի տարրեր։

Ուկրաինայի, Բելոռուսիայի և Վրաստանի կուսակցական կազմակերպությունները «ավտոնոմիզացիայի» պլանը չպաշտպանեցին։ Լուրջ տարաձայնություններ դրսևորվեցին հայացքներում։ Սակայն ոչ ոք բոլորի համար ընդունելի առաջարկություններ չմտցրեց այն ժամանակ։ Հանձնաժողովը որպես հիմք ընդունեց «ավտոնոմիզացիայի» նախագիծը և այն ներկայացրեց Կենտկոմի պլենումին։

Վ. Ի. Լենինը, չնայած հիվանդությանը, ծանոթացավ ազգային հարցի վերաբերյալ հանձնաժողովի փաստաթղթերին։ 1922 թվականի փետրվարի 26-ին նա քաղբյուրոյի անդամներին ուղարկեց մի նամակ, որի մեջ խիստ քննադատության ենթարկեց «ավտոնոմիզացիայի» նախագիծը և ձևակերպեց իրավահավասար սովետական հանրապետությունների միություն ստեղծելու գաղափարը։ Հանրապետությունների՝ ՌՍՖՍՀ-ի մեջ «մտնելու» ձևակերպումը նա առաջարկեց փոխարինել միութենական սովետական սոցիալիստական պետության մեջ «ՌՍՖՍՀ-ի հետ միասին նրանց միավորվելու» սկզբունքով՝ լիակատար իրավահավասարության հիման վրա։ Լենինն ընդգծեց ընդհանուր-միութենական, ՌՍՖՍՀ-ից նույն չափով, ինչ չափով մյուս հանրապետություններից վեր կանգնած օրգաններ ստեղծելու անհրաժեշտությունը։ Պաշտպանելով միավորվող սովետական ազգային հանրապետությունների լիակատար իրավահավասարության սկզբունքը, նա գրում էր՝ «...մենք մեզ իրավահավասար ենք ճանաչում Ուկրաինական ՍՍՀ-ի և մյուսների հետ և

սկզբունքը՝ ազգերի ինքնորոշման իրավունքը, ընդհուպ մինչև անջատում ու ինքնուրույն պետություններ կազմելը։ Հսկայական երկրի տերիտորիայում առաջացան մի շարք ինքնավար և ինքնուրույն սովետական ազգային հանրապետություններ։ Նրանց միջև ամուր կապեր հաստատվեցին։ «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում,— գրում էր Լենինը,— այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա»։ Լենինը նախազգուշացնում էր, որ «այդ միությունը չի կարելի միանգամից իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ» (4-րդ հրատ., հատոր 30, էջ 368)։ Ազգերի միություն հաստատելու համար անհրաժեշտ պայմաններ կային։ Ժողովուրդները սերտ միասնության մեջ կատարեցին հեղափոխություն։ Նրանք ունեին մեկ նպատակ՝ սոցիալիզմ։ Միասնության կարևոր գործոնը ընդհանուր կոմունիստական կուսակցությունն էր՝ ՌԿ(բ)Կ-ն։ Հանրապետությունների կոմունիստական կուսակցությունները գործում էին որպես կոմունիստ-լենինյանների այդ բանակի ջոկատներ։

ՌՍՖՍՀ-ն այդ կենտրոնն էր, որի շուրջ համախմբվում էին սովետական հանրապետությունները։ Սովետական Ռուսաստանը տվեց ազգային-պետական շինարարության առաջին օրինակը։ Նա հաստատվեց որպես սոցիալիստական ազգային ինքնավարության հիման վրա միավորված ժողովուրդների ազատ միություն։

Պաշտպանելով հեղափոխության նվաճումները, այդ թվում իր ազգային անկախությունը, ՌՍՖՍՀ-ն և մյուս սովետական հանրապետությունները քաղաքացիական պատերազմի տարիներին միմյանց միջև կնքեցին մի շարք երկկողմանի պայմանագրեր, այդպիսով ստեղծելով սերտ ռազմա-քաղաքական միություն։ Հանրապետությունների միջև կապերը տարեց-տարի ամրանում էին։ Այսպես, ըստ 1920 թվականի վերջում ստորագրված պայմանագրի, միացան ՌՍՖՍՀ-ի և ՈւՍՍՀ-ի մի շարք պետական օրգաններ՝ ռազմական և ծովային գործերի, արտաքին առևտրի, ֆինանսների, հաղորդակցության ճանապարհների, փոստի և հեռագրի, աշխատանքի ժողովրդական կոմիսարիատները, ԺՏԳԽ-ն։ Այնուհետև ՌՍՖՍՀ-ի հետ երկկողմանի պայմանագրեր կնքեցին Բելոռուսիան և Անդրկովկասի հանրապետությունները։ Դա կարևոր էտապ է ազգային-պետական շինարարության բնագավառում։

Այսպիսով, 20-ական թվականների կեսերին երևան եկան սոցիալիստական ֆեդերացիայի երկու հիմնական ձևեր. մեկը հենվում էր ինքնավարության վրա (ՌՍՖՍՀ), մյուսը արտահայտվում էր ՌՍՖՍՀ-ի և մյուս ինքնուրույն սովետական հանրապետությունների միջև կնքված երկկողմանի պայմանագրերով։

Անցումը նէպին ուժեղացրեց հանրապետությունների սերտ միավորման ձգտումը, նպաստեց տնտեսական կապերի զարգացմանը նրանց միջև։ Տնտեսական խնդիրների ավելի ու ավելի առաջին պլանը մղվելու համեմատ պարզ էր դառնում, որ կապերի նախկին պայմանագրային ձևերն արդեն բավարար չեն։ Դրանք կարող էին միայն ապահովել հանրապետությունների տնտեսական գործունեության կոորդինացումը այն ժամանակ, երբ էկոնոմի-



կայի վերածնման համար պահանջվում էր միասնական պետության շրջանակներում երկրի բոլոր միջոցների միավորում։ Այդ պայմաններում ժողովուրդների միավորիչ շարժումը, որին գլխավորում էր կոմունիստական կուսակցությունը, որակական նոր աստիճանի բարձրացավ։

1922 թվականի գարնանը Ադրբեջանական, Հայկական և Վրացական սովետական հանրապետությունները, օգտագործելով սովետական ֆեդերատիվ կապերի փորձը, միավորվեցին։ Այդպես առաջացավ Անդրկովկասյան Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը (ԱՍՖՍՀ), որը գոյություն ունեցավ մինչև 1936 թվականը։

1922 թվականի գարնանը Ուկրաինայի, Բելոռուսիայի և Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունները, քննարկելով ՌՍՖՍՀ-ի հետ ավելի սերտորեն միավորվելու ուղիները, խնդրանքով դիմեցին ՌԿ(բ)Կ Կենտկոմին՝ մշակել միասնական սովետական պետության սկզբունքներն ու ձևերը։ Դա բարդ խնդիր էր։

Նոր պետական միավորման նախագիծ մշակելու համար կուսակցության Կենտկոմը ստեղծեց մի հանձնաժողով, որի մեջ մտան նաև ՈւՍՍՀ-ի, ԲՍՍՀ-ի և ԱՍՖՍՀ-ի ներկայացուցիչները։ Լենինն այդ հանձնաժողովին չմասնակցեց. նա հիվանդ էր։ Հանձնաժողովի աշխատանքի պրոցեսում Ստալինն առաջ քաշեց «ավտոնոմիզացիայի» պլան։ Միակողմանիորեն գնահատելով ՌՍՖՍՀ-ի և մյուս սովետական հանրապետությունների պրակտիկան, նա առաջարկում էր բոլոր սովետական հանրապետությունները միավորել ՌՍՖՍՀ-ի շրջանակներում՝ ինքնավարության իրավունքով և Ռուսաստանի հանրապետության պետական օրգանները միասնական պետության բարձրագույն օրգաններ ճանաչելով։ Այդ պլանը սխալ էր. այն բովանդակում էր մեծապետական շովինիզմի տարրեր։

Ուկրաինայի, Բելոռուսիայի և Վրաստանի կուսակցական կազմակերպությունները «ավտոնոմիզացիայի» պլանը չպաշտպանեցին։ Լուրջ տարաձայնություններ դրսևորվեցին հայացքներում։ Սակայն ոչ ոք բոլորի համար ընդունելի առաջարկություններ չմտցրեց այն ժամանակ։ Հանձնաժողովը որպես հիմք ընդունեց «ավտոնոմիզացիայի» նախագիծը և այն ներկայացրեց Կենտկոմի պլենումին։

Վ. Ի. Լենինը, չնայած հիվանդությանը, ծանոթացավ ազգային հարցի վերաբերյալ հանձնաժողովի փաստաթղթերին։ 1922 թվականի փետրվարի 26-ին նա քաղբյուրոյի անդամներին ուղարկեց մի նամակ, որի մեջ խիստ քննադատության ենթարկեց «ավտոնոմիզացիայի» նախագիծը և ձևակերպեց իրավահավասար սովետական հանրապետությունների միություն ստեղծելու գաղափարը։ Հանրապետությունների՝ ՌՍՖՍՀ-ի մեջ «մտնելու» ձևակերպումը նա առաջարկեց փոխարինել միութենական սովետական սոցիալիստական պետության մեջ «ՌՍՖՍՀ-ի հետ միասին նրանց միավորվելու» սկզբունքով՝ լիակատար իրավահավասարության հիման վրա։ Լենինն ընդգծեց ընդհանուր-միութենական, ՌՍՖՍՀ-ից նույն չափով, ինչ չափով մյուս հանրապետություններից վեր կանգնած օրգաններ ստեղծելու անհրաժեշտությունը։ Պաշտպանելով միավորվող սովետական ազգային հանրապետությունների լիակատար իրավահավասարության սկզբունքը, նա գրում էր՝ «...մենք մեզ իրավահավասար ենք ճանաչում Ուկրաինական ՍՍՀ-ի և մյուսների հետ և

նրանց հետ միասին ու իրավահավասար մտնում ենք նոր միության, նոր ֆեդերացիայի մեջ» (5-րդ հրատ., հատոր 45, էջ 211)։

ՌԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը, իսկ այնուհետև հանրապետությունների կուսակցական, սովետական օրգանները միահամուռ կերպով ընդունեցին Լենինի պլանը։ Այդ պլանի հիման վրա էր կատարվում Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միություն կազմակերպելու վերաբերյալ Դեկլարացիան և Միութենական պայմանագիրը նախապատրաստելու ամբողջ գործնական աշխատանքը։ 1922 թվականի դեկտեմբերի 30-ին սովետների Համառուսաստանյան համագումարում հաստատվեցին այդ պատմական փաստաթղթերը։ Հետևյալ տարում ՍՍՀՄ Կենտգործկոմի սեսիան ընտրեց առաջին միութենական կառավարությունը՝ ՍՍՀՄ Ժողովրդական կոմիսարների սովետ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։ Սովետների Համամիութենական II համագումարում ընդունվեց ՍՍՀՄ կոնստիտուցիան։ Այսպես դրվեցին նոր տիպի բազմազգ պետության միութենական սոցիալիստական պետության օրենսդրական հիմքերը, մի պետություն, որը ցեմենտավորվում է շարքերի միասնությամբ, նպատակների ընդհանրությամբ, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, եղբայրական համագործակցության, սովետական բոլոր ժողովուրդների իրավահավասարության և նրանց պետական միավորման լիակատար կամավորության սկզբունքներով։

### ԱՌԱՋՆՈՐԴԻ ՊԱՏԳԱՄՆԵՐԸ։ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

1922 թվականի նոյեմբերի 20-ի երկուշաբթին ոչնչով չէր առանձնանում աշխատանքային առօրյա շղթայից։ Երբ Մոսկվայի վրա սկսեց բարձրանալ ցուրտ աղջամուղջը, Մեծ թատրոնի շենքում ընդլայնված պլենումի էին հավաքվել Մոսկվայի սովետի դեպուտատները։ Նրանց հոգնատանջ կենտրոնացած դեմքերը, խոնջացած ձեռքերը, ճմրթված կուրտկաները, այդ ամենը վկայում էին այն դժվարությունների մասին, որ կրում էր ժողովուրդը։

Հանկարծ դահլիճն ասես թե կերպարանափոխվեց։ Ծափահարությունների փոթորիկն ու «Ինտերնացիոնալի» հզոր որոտը փողոց էին հասնում։ Դեպուտատների առջև, գլխահակ, անհամբեր սպասելով, մինչև հանդարտվի օվացիան, կանգնել էր Վլադիմիր Իլյիչ Լենինը։ Եվ ահա սակված դահլիճը լսում է կուսակցության առաջնորդին։

— Առաջ կոմունիստն ասում էր՝ «Ես տալիս եմ կյանքս», և դա նրան շատ հասարակ էր թվում, թեև դա ամեն անգամ այդպես հեշտ չէր։ Իսկ այժմ մեր, կոմունիստներիս առաջ միանգամայն այլ խնդիր է ծառացած։ Այժմ մենք պետք է ամեն ինչ հաշվի առնենք, և մեզնից յուրաքանչյուրը պետք է սովորի հաշվենկատ լինել։

Մարդիկ տոգորվում էին Լենինի մտքերով, և դա նրանց սեփականությունն էր դառնում, լուսավորում էր ապագայի ուղին։ Ոչ ոք այն ժամանակ չէր ենթադրում, որ դա Լենինի վերջին հրապարակային ելույթն է։ Վերջացրեց նա իր ճառը ամբողջ աշխարհը թևածող մարգարեական խոսքերով՝

— Այժմ սոցիալիզմը հեռավոր ապագայի հարց չէ... Մենք սոցիալիզմը քաշեցինք ամենօրյա կյանքի մեջ... Նէպական Ռուսաստանը կդառնա սոցիալիստական Ռուսաստան։

Լենինն իր աշխատություններում, հատկապես վերջին աշխատություններում, որոնք գրվել են նրա ծանր հիվանդության ժամանակ, ցույց է տվել, թե ինչպես պետք է սոցիալիզմ կառուցել։ Զրկանքների, ընդհատակի, բանտի, աքսորի, էմիգրացիայի տարիներն անհետևանք չանցան։ 1918 թվականի չարանենգ վիրավորելը և կուսակցության ու երկրի ղեկավարության գործում ուժերի հսկայական լարումն իրեն ցույց տվեց։ Վլադիմիր Իլյիչի նույնիսկ ի բնե ամուր օրգանիզմը չդիմացավ։

Դեկտեմբերի 13-ի առավոտյան մեկը մյուսի հետևից հաջորդեցին հիվանդության երկու նոպա։ Բժիշկները պնդում էին, որ պետք է պահպանել լրիվ հանգիստ, անկողնային ռեժիմ։ Լենինը դրան համաձայնվեց այն պայմանով, որ նրան հնարավորություն տան ավարտելու անհետաձգելի հարցերի լուծումը և բժիշկների գնալուց անմիջապես հետո շարունակում էր աշխատել, ընդունում էր մարդկանց, թելադրում էր նամակներ ուղղված Կենտկոմին, Ժողկոմխորհին, վերլուծում էր ստացված պատասխանները։ Հաջորդ օրն աշխատանքը ընթանում էր նույն ռիթմով։ 14-ի լույս 15-ի գիշերը Լենինը աչք չփակեց։ Իսկ առավոտյան նորից համակում են գործերը։

Լույս 16-ի գիշերը հիվանդության նոր նոպա, լույս 23-ի գիշերը աջակողմյան անդամալուծություն է վրա հասնում։ Լենինն արդեն չի կարողանում ինքնուրույն կերպով գրել։ Նա չէր մխիթարվում պատրանքներով և շրջապատողներին ասում էր՝ պետք է շտապել։

Եվ Լենինը շտապում է։ Յուրաքանչյուր րոպե պայքարելով հիվանդության դեմ, նա լարված մտածում էր սոցիալիզմի կառուցման ուղիների, կուսակցության ամրապնդման, աշխարհում հեղափոխական շարժման մասին։ Նույն 23-ի երեկոյան Լենինը թելադրում է «Նամակ համագումարին»՝ կուսակցության միասնության ամրապնդման մասին։ Նա կարողացավ աշխատել միայն 4 րոպե։ Բայց հաջորդ օրը նորից հրավիրեց սղագրուհուն։ Բժիշկները առարկում էին, սակայն Վլադիմիր Իլյիչը անդրդվելի էր։ 1922 թ. դեկտեմբերը (նույնիսկ դեկտեմբերի 31-ը), ամբողջ հունվարը, փետրվարի զգալի մասը, 1923 թվականի մարտի սկիզբն անցնում են լարված աշխատանքով։ Այդ ժամանակում ստեղծվեցին հետևյալ աշխատությունները՝ «Նամակ համագումարին», «Պետպլանին օրենսդրական ֆունկցիաներ տալու մասին», «Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը», «Մի էջ օրագրից», «Կոոպերացիայի մասին», «Մեր հեղափոխության մասին», «Ինչպես կազմակերպել Բանգյուղտեսչությունը», «Ավելի լավ է քիչ, բայց լավ», նամակներ կուսակցական գործիչներին։ Թվում էր թե հիվանդությունը նահանջել է այդ մարդու անձնազոհության և կամքի առջև։ Լենինի վերջին աշխատություններում արտահայտված է կոմունիստական կուսակցությանը ուղղված նրա պատգամը։

Լենինը շատ էր խորհում ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի նախադրյալների և պայմանների մասին։ Իսկ ի՞նչ նախադրյալներ են դրանք։ Պատահական չէր, որ նա իր վերջին աշխատություններն սկսեց կուսակցական ղեկավարությունն ամրապնդելու մասին կուսակցության հերթական համագումարին ուղղված նամակը թելադրելուց։ Միայն ուժեղ միաձույլ կուսակցությունը կարող է իր դրոշի ներքո համախմբել աշխատավորներին և հաղթահարել նոր հասարակություն ստեղծելու ճանապարհին ծառացած հսկայական դժվարությունները։ Այդ միտքը կարմիր թելի պես անցնում է Լենինի ամբողջ կտակի, նոր տիպի կուսակցության մասին նրա ամբողջ ուսմունքի միջով։

Լենինը ընդգծում էր կոլեկտիվ ղեկավարության և վերահսկողության անհրաժեշտությունը։ Կոլեկտիվությունը պահպանելու միջոցառումներից մեկն էր համարում նա Կենտկոմի և ԿՎՀ-ի կազմի ընդլայնումը առաջավոր բանվորների հաշվին, որոնք «անկախ անձնավորություններից», պետք է հետևեն, որպեսզի «ոչ-ոքի, ոչ գլխավոր քարտուղարի, ոչ էլ Կենտկոմի մյուս անդամների հեղինակությունը չկարողանա խանգարել նրանց հարցապնդում անելու, ստուգելու փաստաթղթերը և առհասարակ հասնելու անպայման իրազեկության և գործերի խստագույն կարգապահության» (5-րդ հրատ., հատոր 45, էջ 387, 4-րդ հրատ., հատոր 33, էջ 577)։

Լենինը մատնանշում էր, որ սոցիալիզմի կառուցման համար կան բոլոր անհրաժեշտ պայմանները՝ թե՛ քաղաքական (պրոլետարիատի դիկտատուրա), թե՛ տնտեսական (արտադրության միջոցների սոցիալիստական սեփականություն), թե սոցիալական (բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինք)։ Դրա համար բարենպաստ են ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, պետության աճող պաշտպանական հզորությունը, մյուս երկրների աշխատավորության աջակցությունը։ Լենինի հետևությունը հսկայական նշանակություն ուներ։ Նրա պատգամների հիմնական բովանդակությունը Ռուսաստանում սոցիալիզմի կառուցման կոնկրետ ուղիների բացահայտումն էր։ Ընդ որում հատկապես մատնանշվում էր ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության այնպիսի գլխավոր ուղղություններ, ինչպիսին երկրի ինդուստրացումն էր, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, կուլտուրական հեղափոխությունը։

Ինդուստրացումը կոչված էր ստեղծելու սոցիալիզմի նյութատեխնիկական բազան։ Ահա թե ինչու այն կարևորագույն տեղ է գրավում լենինյան պլանում։ Խոշոր ինդուստրիան, ասում էր Լենինը, կարող է «վերակառուցելու նաև հողագործությունը», որտեղ այն ժամանակ իշխում էր անհատական գյուղացիական արտադրությունը։ Գյուղատնտեսության վերափոխումն ամենադժվար խնդիրն էր իշխանությունը բանվոր դասակարգի կողմից նվաճվելուց հետո, այն հանդիսանում էր, Լենինի խոսքերով, «դայթակղության քարը շատ ու շատ սոցիալիստների համար»։ Այդ խնդիրը լուծելու համար Լենինն առաջարկում էր օգտագործել կոոպերացիան՝ որպես գյուղացիական տնտեսության սոցիալիստական վերափոխության միջոց։ Այդ միջոցի էությունն այն էր, որ աստիճանական անցում կատարվի կոոպերացիայի ամենապարզ ձևերից դեպի ավելի բարդ ձևերը, այսինքն՝ գյուղացիները սկզբում միացնեն իրենց միջոցների մի մասը, իսկ այնուհետև՝ արտադրության հիմնական միջոցները։ Ընդ որում Լենինը հատկապես նախազգուշացնում էր, որ այդպիսի անցումը պետք է կատարվի միայն սեփական փորձի հիման վրա, կամավորական սկզբունքներով։

Երկրի ինդուստրացման և Լենինի կոոպերատիվ պլանի կենսագործումը նշանակում էր սոցիալիզմի տնտեսական հիմքի ստեղծում։

Բայց սոցիալիզմը միայն առաջավոր էկոնոմիկա չէ, այլ նույնքան զարգացած և բարձր կուլտուրա։ Ահա թե ինչու է կուլտուրական հեղափոխության վերաբերյալ ուսմունքը համարվում սոցիալիստական շինարարության լենինյան ծրագրի բաղկացուցիչ մասը։ Սոցիալիստական ձեռնարկությունները հաջողությամբ կառավարելու, ամենաառաջավոր հասարակություն կառուցելու և



զարգացնելու համար հարկավոր էր շեշտակիորեն բարձրացնել ամբողջ ժողովրդի կուլտուրական-տեխնիկական մակարդակը, հասնել համատարած գրագիտության, պատրաստել գիտության բոլոր նվաճումների բարձրության վրա կանգնած և սոցիալիզմին նվիրված անհրաժեշտ քանակության մասնագետ կադրեր։ Լենինը մի անգամ նկատել է, որ «սոցիալիզմի հաղթանակը կարող է ամրապնդել միայն դպրոցը»։ Երբ նրան հարցրել են, թե դա շատ թունդ չի ասված արդյոք, նա պատասխանել է՝ «Ես ուզում էի դրանով ասել, որ ապագա սերունդների դաստիարակությամբ ամրապնդվում է այն ամենը, ինչ նվաճել է հեղափոխությունը»։

Լենինի վերջին աշխատությունները անխզելիորեն շաղկապված են։ Դրանք, ըստ էության, ներկայացնում են մի միասնական երկ, որի մեջ նա, զարգացնելով Մարքսի և Էնգելսի հետևությունները, ավարտեց ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման պլանի վրա կատարած իր աշխատանքը։ Դա Լենինի քաղաքական պատգամն էր, նրա վերջին մեծ սխրագործությունը։

Կուսակցությունը մեծագույն ուշադրությամբ ուսումնասիրում էր Վլադիմիր Իլյիչի հոդվածները։ 1923 թվականի ապրիլի 17—25-ը կայացավ ՌԿ(բ)Կ XII համագումարը, Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո առաջին համագումարը, որին կուսակցության առաջնորդը անմիջականորեն մասնակցել չկարողացավ։ «Միասնության կամք»՝ այդպես բնորոշեց համագումարը կուսակցության մեջ գերիշխող տրամադրությունը։

Կյանքը հաստատեց Լենինի մշակած քաղաքականության ճշմարտացիությունը. առաջ ընթացավ գյուղատնտեսությունը, վերականգնվում էին գործարանները, ամրացավ բանվոր դասակարգը՝ սովետական հասարակության առաջատար ուժը։ Բայց ապրանքա-դրամական արտադրության պայմաններում տնտեսություն վարելու փորձը դեռ շատ քիչ էր։ Ի՞նչ հարաբերակցության մեջ պետք է գտնվեն պետական կենտրոնացված պլանավորումը և փոփոխվող շուկայական պահանջարկը (կոնյուկտուրան)։ Պլանը և շուկան արդյո՞ք էկոնոմիկայում հակամարտ ուժեր են հանդիսանում, թե կարելի է հօգուտ արտադրության դրանք միացնել։ Պատմության մեջ առաջին անգամ կուսակցությունը պետք է պատասխան տար այդ բոլոր հարցերին։

XII համագումարն ընդգծեց պլանային սկզբունքի առաջատար դերը սովետական էկոնոմիկայում, մի բան, որ պայմանավորված է արտադրության հիմնական միջոցների սոցիալիստական սեփականությամբ։ Պլանավորումը սոցիալիստական տնտեսավարման արմատական գիծն է և հիմնական առավելություններից մեկը։ Դրա հետ միասին համագումարը նշեց, որ սոցիալիստական տնտեսության պլանը «չի կարող սահմանվել ապրիորի (այսինքն՝ պրակտիկայից կտրված։— Խմբ.), տեսականորեն կամ բյուրոկրատական ճանապարհով»։ Իրական լինելու համար պլանը պետք է հաշվի առնի արտադրության օբյեկտիվ պահանջմունքներն ու հնարավորությունները։ Իսկ դրանք արտացոլվում էին արտադրանքի արժեքի և, մասնավորապես, շուկայական պահանջարկի մեջ։ Այդ պատճառով էլ համագումարը նախատեսում էր «ղեկավար տնտեսական ապարատը, նրա հիմնական առաջադրանքները, նրա մեթոդները, նրա պրակտիկան մշտապես և զգոն կերպով հարմարեցնել շուկայական երևույթներին ու հարաբերություններին»։ Դա նախ և առաջ նշանակում էր ձեռնարկությունների անցումն տնտհաշվարկի։ Այդ միջոցառումը

համապատասխանում էր ինչպես ամբողջ հասարակության, այնպես էլ առանձին ձեռնարկությունների ու նրանց աշխատողների շահերին։ «Արդյունաբերության մասին» բանաձևում համագումարը նշեց, որ «պետությունը պարտավոր է առանձին ձեռնարկությունների տնտեսական գործունեությանն անհրաժեշտ ազատություն տալ շուկայում, չփորձելով այդ ազատությունը փոխել վարչական նկատառումով»։ Հասկանալի է, որ տնտեսական գործունեության ազատությունը թույլատրելի էր միայն ընդհանուր պլանի սահմաններում։ Այդպես էր էկոնոմիկայում կենսագործվում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը։ Սոցիալիստական պետությունը, հանձին տնտհաշվարկային տրեստների ու մյուս միավորումների, ուներ «իր ծառայական օրգանները, որոնց օգնությամբ նա շոշափում է շուկան ամբողջությամբ վերցրած և դրանով իսկ հնարավոր է դարձնում մի շարք գործնական միջոցառումներ, որոնք գերազանցում են առանձին ձեռնարկությունների կամ միավորումների շուկայական կողմնորոշումը»։

Կոնկրետացնելով կուսակցության տնտեսական քաղաքականությունը, XII համագումարը քննարկեց նաև գյուղատնտեսության պրոբլեմները։ Անդրադառնալով գյուղում կիրառվող հարկային քաղաքականությանը, Մ. Ի. Կալինինը նշեց, որ նէպը թեթևացնում է գյուղի դրությունը, նրան թույլ է տալիս ավելի լիովին բավարարելու քաղաքի պահանջմունքները գյուղատնտեսական մթերքների նկատմամբ։ Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդումը կուսակցության կարևորագույն քաղաքական խնդիրն էր։ Օգտագործելով պատկերավոր արտահայտություն, Կալինինն ասել է, որ բանվոր դասակարգը և գյուղացիությունը «ամբողջ ռուսական հեղափոխության ընթացքում... որպես երկու եղբայր քաշում են մեծագույն ծանրությունը, և այդ երկու եղբայրները սրտագին նայում են միմյանց, թե այդ ծանրությունը չափից ավելի մյուսի վրա չի՞ ընկել արդյոք»։

Համագումարը որոշում ընդունեց պարենհարկից դրամական հարկի անցնելու, գյուղի հարկադրման սիստեմը կանոնավորելու մասին։ Մի քանի հարկերի փոխարեն մտցվեց միասնական գյուղատնտեսական հարկ։

Գլխավոր ուշադրությունը կենտրոնացնելով սոցիալիստական շինարարության տնտեսական պրոբլեմների վրա, կուսակցության համագումարն ընդգծեց երիտասարդությունից որակյալ տնտեսական կադրեր ստեղծելու խնդիրը. «Տեխնիկայի ուսուցումը նոր սերունդների համար պետք է լինի ոչ միայն մասնագիտացման հարց, այլև հեղափոխական պարտքի գործ։ Այն ամբողջ խանդավառությունը, որն առաջ բանվոր երիտասարդությունը ծախսում էր հեղափոխական-քաղաքական պայքարի վրա, բանվորական պետության պայմաններում պետք է գործադրվի գիտությունն ու տեխնիկան տիրապետելու վրա... Սոցիալիստական տնտեսության կազմակերպումը կարիերա չէ պրոլետարական ավանգարդի համար, այլ սխրագործություն»։

Նոր տնտեսական քաղաքականությունը յուրահատուկ ձևով էր արտացոլվում ազգային շրջաններում, որոնց զարգացումը դեռևս լրջորեն ետ էր մնում։ Ուստի XII համագումարը քննարկեց Ստալինի զեկուցումը՝ կուսակցական ու պետական շինարարության մեջ ազգային մոմենտների մասին։ Համագումարում ըստ պատգամավորությունների հրապարակվեց «Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջ» Լենինի նամակը, որ թելադրել էր նա



1922 թվականի դեկտեմբերի վերջին։ Այդ նամակում լուսաբանվում էին ՍՍՀՄ-ում ազգային քաղաքականության կարևորագույն պրոբլեմները։

Լենինի առաջարկությունները արտացոլվեցին համագումարի ազգային հարցի վերաբերյալ բանաձևում։ Համագումարն ընդգծեց կուսակցության ազգային քաղաքականության միջազգային նշանակությունը, մատնանշեց հին Ռուսաստանի ծանր ժառանգությունը՝ ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական անհավասարությունը հաղթահարելու գծով աշխատանքի ուժեղացման անհրաժեշտությունը, կուսակցությունը կոչ արեց վճռական պայքար մղել մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի դեմ։

Խնդիր դնելով բարելավելու բոլոր պետական ու տնտեսական մարմինների աշխատանքը, համագումարը նշեց, որ «ինքը կուսակցությունն էլ աստիճանաբար վերակառուցվում է, ինքնազտվում է, վերախմբավորում է իր շարքերը, փորձով ստուգում ընդունված որոշումները և կրկին ձևակերպում իր մի շարք հիմնական խնդիրները՝ նէպի ամբողջ անցումային դարաշրջանին համեմատ»։ XII համագումարի սկզբին կուսակցության մեջ կար 386 հազար կոմունիստ՝ ավելի քիչ, քան նախորդ հետպատերազմական համագումարների ժամանակ։ Դա բացատրվում էր կուսակցության զտումով, նրան ազատելով այն խորթ տարրերից, ովքեր համաձայն չէին կուսակցության հետ, քայքայում էին նրա միասնությունը։

Լենինի դրույթներին համապատասխան համագումարը հիմնադրեց կուսակցական-պետական միացյալ օրգաններ, որոնց խնդիրն էր ուսումնասիրել թերությունների պատճառները և միջոցներ փնտրել դրանք կանխելու համար։

Ստեղծելով միասնական կուսակցական-պետական վերահսկողություն, կուսակցությունը նրա ղեկավար նշանակեց հեղինակավոր աշխատող, պրոֆեսիոնալ հեղափոխական Վ. Վ. Կույբիշևին։ Նրա գիտելիքների բազմակողմանիությունը, հետաքրքրությունների լայնությունը, բարձր պահանջկոտությունն իր և շրջապատողների նկատմամբ, հաստատակամությունն ու շրջահայացությունը՝ նրա այս հատկություններն անհրաժեշտ էին այդպիսի բարդ աշխատանքում։ Բնութագրելով վերահսկիչների խնդիրները, Կույբիշևն ասել է, որ նրանք պետք է իրենց մեջ զարգացնեն կիրք՝ ոչնչացնելու մեր կյանքի անկատարելիությունները։ Այդ գիծը հատուկ էր իրեն Կույբիշևին։ Նրան, որպես մարդու և կոմունիստի, լավ են բնութագրում հետևյալ տողերը, որ գրել է նա 1922 թվականին. «Ես ամբողջությամբ և առանց մնացորդի տեղի ունեցող պայքարի մեջ եմ։ Ոչ միայն ընդունում եմ այն իր ամբողջությամբ, կոպտությամբ, դաժանությամբ անխնայությամբ այն ամենի նկատմամբ, ինչ նրան խոչընդոտում է, ոչ միայն ընդունում եմ, այլև ինքս նրա մեջ եմ ամբողջությամբ, իմ էությամբ, իմ ամբողջ մտահղացումներով։ Բոլոր հույսերը, հավատը, խանդավառությունը նրա՝ պայքարի, մեջ են։ Այն ամենը, ինչ կապված չէ նրա հետ, խորթ է ինձ. ես սիրում եմ, ինձ մոտիկ է միայն այն, ինչ ձուլված է պայքարի հետ»։ Այդպիսին նա մնաց ամբողջ կյանքում։ Այդպես էին լենինյան գվարդիայի մյուս ներկայացուցիչները ևս։ Կուսակցությունը ձգտում է, որ յուրաքանչյուր կոմունիստ հենց այդպես դաստիարակվի։ Էլ ինչպե՞ս չհիշես, որ դեռ Մարքսը, «Ձեր պատկերացումը երջանկության մասին» հարցին պատասխանել է մեկ բառով՝ «Պայքար»։

*Կյանքի նկատմամբ կոմունիստների այդպիսի վերաբերմունքը, նվիրվածությունը գործին, վստահությունը հաղթանակի նկատմամբ՝ կուսակցությանն օգնում են լուծելու ամենաբարդ հարցերը։*

*Սոցիալիզմը կառուցվեց դժվարին պայմաններում։ Ժամանակ առ ժամանակ միջազգային իրադրությունը շիկանում էր, իմպերիալիստները նորից էին զենք շաչեցնում։ Այդպես պատահեց 1923 թվականի մայիսին, ՌԿ(բ)Կ XII համագումարից քիչ անց։ Անգլիայի արտաքին գործերի մինիստր լորդ Քերզոնը սովետական կառավարությանը նոտա ներկայացրեց, պահանջելով դադարեցնել իբր «հակաբրիտանական քաղաքականությունը»։ Դրանից երեք օր անց Շվեյցարիայում սպանվեց սովետական դիվանագետ, կուսակցության ականավոր գործիչներից մեկը՝ Վ. Վ. Վորովսկին։ Ջպարտությունը, պրովոկացիաները, բոլշևիկների դեմ «խաչակրաց արշավանքի» կոչերը խիստ սրեցին ՍՍՀՄ միջազգային դրությունը։*

*1923 թվականին վրա հասավ տնտեսական ճգնաժամը։ Դա յուրահատուկ ճգնաժամ էր։ Նախորդ տարիների տնտեսական դժվարությունները բացատրվում էին արտադրության չափերի կրճատումով։ 1923 թվականի ճգնաժամը առաջացավ այնպիսի պայմաններում, երբ ժողովրդական տնտեսությունն ամբողջությամբ վերցրած զարգանում էր։ Սակայն այդ զարգացումը տեղի էր ունենում անհավասարաչափ. գյուղատնտեսությունը, որն ավելի քիչ կապիտալ ներդրումներ էր պահանջում, քան արդյունաբերությունը, ավելի արագ էր աճում։ Նրա արտադրանքի գները իջան։ Մինչդեռ շատ արդյունաբերական ձեռնարկություններ գործում էին թերբեռնվածությամբ, որպիսի հանգամանքը բանվորներին զրկում էր խթանից աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում։ Դրա հետևանքով արդյունաբերության մեջ արտադրական ծախքերը բարձր էին, հետևապես և բարձր էր արտադրանքի ինքնարժեքը։ Զգտելով, որ ձեռնարկությունները շահութաբեր լինեն, արդյունաբերության որոշ ղեկավարներ սկսեցին բարձրացնել արդյունաբերական արտադրանքների գները։ Այդպես առաջացավ և ավելի ու ավելի ուժեղանում էր արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքների գների տարբերությունը («գների մկրատը»)։*

*Նէպի իրադրության մեջ որոշ անցանկալի տենդենցներ առաջացան։ Նշելով, որ «կուսակցության նկատմամբ* պրոլետարական մասսաների *վստահությունն աճել է», կուսակցությունը դրա հետ միասին բացահայտեց նաև թերություններ՝ առանձին աշխատողների «տեսադաշտի գերատեսչական նեղացում», «սոցիալիստական շինարարության հեռանկարները կորցնելու վտանգ»։ Դրությունը բարդացավ տրոցկիստների և մյուս օպորտունիստների ելույթներով՝ այս անգամ արդեն կուսակցական ապարատի դեմ։ Տրոցկիստներն իրենց գրոհները ձեռնարկեցին կուսակցության XII համագումարում և ավելի ուշ։ Նրանք կուսակցության կադրերին հախուռն մեղադրում էին այլասերման մեջ և նրանց հակադրում էին սովորող երիտասարդությանը, որին անվանում էին կուսակցության «բարոմետր»։ 1923 թվականի նոյեմբեր—1924 թվականի հունվարին տեղի ունեցած դիսկուսիայի ընթացքում օպոզիցիան նորից պարտություն կրեց։ Հօգուտ նրա քվեարկեցին կուսակցության անդամների 1,3 տոկոսը։*

*Օպոզիցիայի նկատմամբ հաղթանակն ամրապնդեց XIII կուսկոնֆե-*



*րանսը, որ կայացավ 1924 թվականի հունվարի 16-ից մինչև 18-ը։ Կոնֆերանսը, եկավ այն եզրակացության, որ «հանձին ներկայիս օպոզիցիայի մենք մեր առջև ունենք ոչ միայն բոլշևիզմը ռևիզիայի ենթարկվելու փորձ, ոչ միայն ուղղակի հեռացում լենինիզմից, այլև ցայտուն կերպով արտահայտված* մանրբուրժուական թեքում։ *Ոչ մի տարակուսանքի ենթակա չէ, որ այդ օպոզիցիան օբյեկտիվորեն արտացոլում է մանր բուրժուազիայի ճնշումը պրոլետարական կուսակցության դիրքերի և նրա քաղաքականության վրա»։*

*Երկիրն ուշադրությամբ հետևում էր ներկուսակցական դիսկուսիայի ընթացքին։ Վերջինս հոգս էր պատճառում նաև ծանր հիվանդ Լենինին։ Ն. Կ. Կրուպսկայան ամեն օր ինֆորմացիա էր տալիս նրան XIII կուսկոնֆերանսի ընթացքի մասին։*

*Հունվարի 19-ին Վլադիմիր Իլյիչի անհանգստությունը սահման չուներ. նա գիտեր, որ կոնֆերանսն ավարտվել է, բայց նրա որոշումները դեռ չէին ստացել։ Եվ ահա վերջապես ստացվեցին։ Հունվարի 19-ի շաբաթ օրը և հունվարի 20-ի կիրակի օրը անցան բանաձևերի ընթերցանության վրա։ Դրանք վերջին կուսակցական փաստաթղթերն էին, որոնց վերաբերմամբ մտածում էր բոլշևիկյան կուսակցության ստեղծողն ու առաջնորդը։*

*Հետևյալ օրը, հունվարի 21-ին, նրա առողջությունը անսպասելի և խիստ վատացավ, և ժամը 18 անց 50 րոպեին, չապրելով 54 տարի, Վլադիմիր Իլյիչ Լենինը մահացավ Մոսկվայի Գորկայում։*

*Կենտկոմի անդամները, որոնք գիշերն արտակարգ պլենումի էին հավաքվել, չկարողացան արցունքները զսպել։ «Ես առաջին անգամ էի տեսնում, թե ինչպես էին հին բոլշևիկները լաց լինում»,— պատմում էր այդ ժողովի մասնակից Ե. Մ. Յարոսլավսկին։ Պլենումը կուսակցությանը և բոլոր ընկերներին ուղղված դիմում ընդունեց։ Նրանում մարմնավորված է Լենինի վեհ կերպարը, ընդգծված է նրա գործի անմահությունը. «Այն ամենը, ինչ հիրավի մեծ է ու հերոսական պրոլետարիատի մեջ,— անվեհեր միտքը, երկաթե, անճկուն, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը դեպի ստրկությունն ու ճնշումը, լեռներ շարժող հեղափոխական կամքը, անսահման հավատը մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ, հսկայական կազմակերպական հանճարը,— այս բոլորը իր հոյակապ մարմնացումը գտավ Լենինի մեջ, որի անունը դարձել է նոր աշխարհի խորհրդանիշը՝ արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս։*

*...Բայց նրա ֆիզիկական մահը նրա գործի վախճանը չէ'։ Լենինն ապրում է մեր կուսակցության ամեն մի անդամի հոգում։ Մեր կուսակցության ամեն մի անդամ Լենինի մի մասնիկն է։ Մեր ամբողջ կոմունիստական ընտանիքը Լենինի կոլեկտիվ մարմնացումն է։*

*Լենինն ապրում է յուրաքանչյուր ազնիվ բանվորի սրտում։*

*Լենինն ապրում է յուրաքանչյուր չքավոր գյուղացու սրտում։*

*Լենինն ապրում է միլիոնավոր գաղութային ստրուկների մեջ։*

*Լենինն ապրում է այն ատելության մեջ, որ տածում է մեր թշնամիների բանակը լենինիզմի, կոմունիզմի, բոլշևիզմի հանդեպ։*

*Այժմ, երբ մեր կուսակցությանը հասել է ամենածանր հարվածը—Իլյիչի մահը—մենք պետք է առանձին հաստատակամությամբ կատարենք նրա հիմնական պատգամները»։*

Վլադիմիր Իլյիչից բաժանվելու դառն օրերին ավելի ու ավելի պարզորոշ
կերպով մասսաների առաջ ծառանում էր մի հարց՝ ինչո՞վ փոխարինել կո-
րուստը: Կուսակցական կազմակերպություններում բանվորների դիմումներ
տեղացին կոմունիստական կուսակցության մեջ ընդունվելու խնդրանքով:
Կուսակցությունն առաջ էլ հատուկ հոգս էր ցուցաբերում իր շարքերն առա-
ջավոր բանվորներով համալրելու համար: XII համագումարն անհրաժեշտ հա-
մարեց այնպիսի միջոցներ ձեռնարկել, որոնք հեշտացնում են արդյունաբե-
րական բանվորների ընդգրկումը կուսակցության մեջ: Եվ այդ միջոցառումները
կենսագործվեցին. Ուրալում, օրինակ, 1923 թվականին բանվորներին կոչ ար-
վեց մտնելու կուսակցության շարքերն ի պատիվ Հոկտեմբերի վեցերորդ տա-
րեդարձի: Բայց կուսակցության մեջ բանվորների մտնելը 1924 թվականին
մասսայական շարժման բնույթ ընդունեց ամբողջ երկրում: Բանվորների տրա-
մադրություններին լիովին համապատասխան կուսակցության Կենտկոմը 1924
թվականի հունվարի վերջին որոշում ընդունեց հաստոցի բանվորներին ՌԿ(բ)Կ
շարքերն ընդունելու լենինյան կոչի մասին: Հունվարի 22-ից մինչև մայիսի 15-ը
մոտ 300 հազար դիմում տրվեց: Այդ դիմումները քննարկվում էին դռնբաց
կուսակցական ժողովներում:

Իր կազմը բարելավելու ուղղությամբ կուսակցությունը միաժամանակ
անցկացրեց նաև այլ միջոցառումներ՝ ոչ պրոլետարական բջիջների զտումներ
և այլն: Լենինյան կոչը կուսակցության թվական կազմը մեծացրեց ավելի քան
40 տոկոսով: Աճեց նրա բանվորական խավը. 1924 թվականի հունվարի 1-ի
դրությամբ բանվորական ծագում ունեցողների թիվը կուսակցության մեջ
կազմում էր 44 տոկոս, իսկ 1925 թվականի հունվարի 1-ի դրությամբ՝ 58 տո-
կոս:

Այդպիսի շարժում սկսվեց նաև կոմերիտմիությունում: Նրա շարքերը մը-
տան ավելի քան 150 հազար երիտասարդ բանվորներ: 1924 թվականից նա
սկսեց կոչվել Լենինյան կոմունիստական երիտասարդական միություն:

Է՛լ ավելի սերտորեն համախմբվելով կոմունիստական կուսակցության
շուրջը սովետական մարդիկ շարունակում էին վստահորեն առաջ ընթանալ
Լենինի ցույց տված ուղիով:

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ: ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ԱՎԱՐՏՈՒՄԸ

Մոսկվա, 1924 թվականի մայիսի 23: Մինչև XIII հա-
մագումարի բացումը մնացել է մի քանի րոպե: Քար-
տուղարությունն ավարտել է պատգամավորների գրան-
ցումը, պատգամավորներ, որոնք ներկայացնում են կու-
սակցության ավելի քան 735 հազար անդամներ և 128
հազար անդամության թեկնածուներ:

Պատգամավորները շարունակում են զրուցել, հին ընկերներն ամուր
կերպով միմյանց ձեռք են սեղմում: Հաճախ չի պատահում, որ հանդիպեն.
կուսակցության աշխատանքը մարդկանց հաճախ է նետում հսկայական երկ-
րի տարբեր անկյուններ: Ընդհանուր տրամադրությունն անսասան է. գործերն
ամբողջությամբ վերցրած լավ են գնում՝ վերացվել է վառելիքի ճգնաժամը,
բարելավվել է տրանսպորտի աշխատանքը: Պատգամավորները գրավում են
իրենց տեղերը, նորից են կարդում օրակարգը: Եվ սուր ցավ են զգում սրտե-
րում. «Կենտկոմի հաշվետվությունը»՝ տպագրված է օրակարգում, իսկ Լենինը
արդեն չկա...



Դանդաղ, խստադեմ ու ծանրաբարո
Ինչ-որ մեկը աղմուկն ընդհատեց...
— Համագումարի մեր, օրակարգը...
Եղբայրնե՜ր... ձախողո՜ւմ կրեց:
Խոսքեր՝ կերկերուն, դողը՝ ծնկներին,
Մոլորված թախիծ աչքի լճակում.
Հաշվետվությունը՝ Կենտկոմի...
Լենինը... Լենինը չի կարդում:

Պատգամավորները խնամքով պահում էին «Պրավդա»-ի այն համարը,
որտեղ զետեղված էր Ալեքսանդր Բեզիմենսկու այս բանաստեղծությունը:

Համագումարը մանրամասն քննարկեց մի շարք կենսահույզ տնտեսական
հարցեր: Նշելով, որ նէպը ապահովել է ժողովրդական տնտեսության վերել-
քը, կուսակցությունը հայտարարեց իր «հերթական խնդիրը՝ նոր տնտեսական
քաղաքականության հիման վրա սիստեմատիկաբար աշխատանք տանել հա-
մաժողովրդական տնտեսության մեջ սոցիալիստական տարրերն ուժեղացնելու
ուղղությամբ»: Դրան համապատասխան համագումարը դիրեկտիվ տվեց մե-
տալուրգիան, վառելիքի արդյունաբերությունը, տրանսպորտը զարգացնելու,
ֆինանսական տնտեսությունը կազմակերպելու մասին:

Համագումարում առանձնապես մանրամասն քննարկվեցին ներքին առև-
տրի, գյուղի դրության, մանր արտադրողների կոոպերացման պրոբլեմները:
Այդ հարցերի առթիվ ընդունված որոշումները զարգացնում էին Լենինի ցու-
ցումը բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման մա-
սին:

«Կոոպերացիայի մասին» և «Գյուղում կատարվող աշխատանքի մասին»
համագումարի որոշումների հիմքում դրվեց Լենինի կոոպերատիվ պլանը: Հա-
մագումարն ընդգծեց, որ «աշխատանքի ներկայիս գործիքների առկայությամբ
արտադրության պրոցեսների կոոպերացման բնագավառում իսկական մաս-
սայական հաջողություններ ձեռք բերվել կարող են միայն մի շարք տարինե-
րի ընթացքում: Հենց այդ պատճառով էլ համագումարը նախազգուշացնում է,
որ չի կարելի թույլ տալ անհաշվենկատ շտապողականություն, ավելորդ ռեգ-
լամենտացիա, ընկնել ձևի ու թվի հետևից, որոնք հաճախ կարող են կանխել
գյուղացիության իսկական կոոպերացումը»:

Այսպիսով, XIII համագումարը, ինչպես և նախորդ բոլոր համագումար-
ները, քաղաքական գիծը որոշելիս հիմնվում էր Լենինի ուղղակի ցուցումնե-
րի վրա: Բայց արդեն այս համագումարին, ինչպես և հաջորդներին, վիճակ-
վեց հարցերը լուծել առանց Լենինի, բայց լենինիզմի այն կոլեկտիվ ըմբռնման
հիման վրա, որ մշակել էր կուսակցությունը: Հենց այդ պատճառով էլ XIII
համագումարն իր որոշումներում հաստատակամորեն ընդգծում էր լենինյան
գաղափարները պրոպագանդելու միտքը:

Համագումարն իր որոշման մեջ կոչ արեց լայն կուսակցական-դաստիա-
րակչական աշխատանք տանել, մի աշխատանք, որն «ազատ լինի ամեն տե-
սակ տիրացությունից»: Կուսակցական կազմակերպությունների առաջ խնդիր
էր դրվում երիտասարդ կոմունիստներին ծանոթացնել «մեր կուսակցության
պատմության հիմնական էտապներին, կապված այդ պատմության մեջ ընկ.
Լենինի ղեկավար գաղափարների բացառիկ նշանակության հետ»:

Շատ մեծ էր կուսակցության երիտասարդ անդամների, բոլոր կոմունիստների, ինչպես և տասնյակ հազարավոր բանվորների ու գյուղացիների ձգտումը դեպի գիտելիքները։ Իսկ կուլտուր-լուսավորական աշխատանքի հնարավորությունները սահմանափակված էին երկրի ընդհանուր աղքատության հետևանքով. պակասում էին թուղթը, մատիտը, դասագրքերը։ Ն. Կ. Կրուպսկայան համագումարում պատմում էր, որ շուկայում մեկ մատիտին տալիս էին 4 կիլոգրամ հաց, այբբենարանին 16, իսկ Պոկրովսկու գրած պատմության դասագրքին՝ մոտ 50 կիլոգրամ հաց։

Կոմունիստների տնտեսական ուսուցման գործում առանձնահատուկ դեր էր խաղում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի ուսումնասիրությունը։ 1920—1924 թվականներին հրատարակվեց Լենինի երկերի առաջին ժողովածուն (այդ ժողովածուի վերջին, լրացուցիչ հատորը հրատարակվեց 1926 թվականին)։ Լենինի երկերի առաջին հրատարակությունը լույս տեսավ 26 գրքով և ընդգրկում էր 1,5 հազար աշխատություններ։ Կուսակցության XIII համագումարը որոշում ընդունեց Մարքսի և Էնգելսի երկերի ժողովածուն հրատարակելու մասին։ Այդ ամենը նպաստեց կուսակցության գաղափարական ամրապնդմանը։

Ներկուսակցական իրադրությունն իր կնիքը դրեց XIII համագումարի պատգամավորների կողմից բոլոր հարցերի, մասնավորապես, Լենինի «Նամակ համագումարին» փաստաթղթի քննարկման վրա։ Կրուպսկայայի վկայությամբ, Լենինը հատատ ցանկություն է հայտնել, որպեսզի այդ գրանցումը, որը թելադրվել է 1922 թվականի դեկտեմբերի վերջին—1923 թվականի հունվարի սկզբին, «նրա մահից հետո ի գիտություն հաղորդվի հերթական կուսակցական համագումարին»։ Յուրաքանչյուր պատվիրակություն նամակն ընթերցեց առանձին։

Լենինը կուսակցության միասնության համար կարևոր պայման էր համարում կայուն Կենտրոնական կոմիտե ստեղծելը։ Այդ նպատակով նա առաջարկում էր Կենտկոմի անդամների կազմը հասցնել մինչև 50—100 մարդու ի հաշիվ առաջավոր բանվորների։ Այդ ուղիով ընթացավ դեռևս նախորդ կուսակցական համագումարը։ ՌԿ(բ)Կ XIII համագումարը Կենտկոմում ընտրեց 87 մարդ, իսկ ԿՎՀ-ում՝ 151։

«Նամակ համագումարին» փաստաթղթում Վ. Ի. Լենինը տվել է Կենտկոմի որոշ անդամների՝ Զինովևի, Կամենևի, Տրոցկու, Բուխարինի, Պյատակովի, Ստալինի լակոնիկ, բայց խոր և սուր բնութագրությունը։ Ստալինի վերաբերյալ դիտողությունն առաջարկություն էր պարունակում՝ մտածել Կենտկոմի գլխավոր քարտուղարի պոստից նրան «փոխադրելու եղանակի» և այնպիսի գործիչով փոխարինելու մասին, «որը մյուս բոլոր տեսակետներից ընկ. Ստալինից տարբերվի միայն մեկ առավելությամբ, այն է՝ ավելի համբերատար, ավելի լոյալ, ավելի քաղաքավարի ու ավելի ուշադիր լինի ընկերների հանդեպ, ավելի քիչ քմահաճություն և այլն» (4-րդ հրատ., հատոր 36, էջ 689)։

Լենինի նամակը քննարկվեց այն ժամանակ, երբ հազիվ էին հանդարտվել կատաղի վեճերը տրոցկիստների հետ, որոնք ձգտում էին տապալել Կենտկոմի՝ Լենինի օրոք կազմավորված ղեկավար միջուկը։ Ստալինն անհաշտ կերպով պայքարում էր տրոցկիզմի դեմ։ Լայն տարածում էին ստացել նրա տեսական աշխատությունները, ամենից առաջ «Լենինիզմի հիմունքների մասին»



նրա դասախոսությունները, որոնք նվիրված էին լենինյան կոչի կոմունիստ-
ներին։ Դրանք տպագրվեցին «Պրավդա»-ում 1924 թվականի ապրիլ-մայիսին
և համագումարի նախօրյակին լույս տեսան առանձին գրքով։ Համագումարի
պատգամավորները, կշռադատելով այդ բոլոր հանգամանքները և հույս ունե-
նալով, որ Ստալինը կուղղի Լենինի մատնանշած թերությունները, հնարավոր
գտան նրան թողնել գլխավոր քարտուղարի պոստում։

Ժողովրդական տնտեսության վերականգնումն ավելի արագ էր տեղի
ունենում, քան սպասվում էր սկզբում։ Բարելավվեց նաև միջազգային դրու-
թյունը։ 1924—1925 թվականները պատմության մեջ մտան որպես ՍՍՀՄ-ի
«ճանաչման գոտի»։ Եվրոպայի երկրների մեծ մասը, Ասիայի մի շարք երկր-
ներ դիվանագիտական հարաբերություններ հաստատեցին ՍՍՀՄ-ի հետ։ Խո-
շոր երկրներից միայն ԱՄՆ-ը համառաբար հրաժարվում էր ճանաչել սովե-
տական պետությունը։

Սովետական երկրում սոցիալիստական շինարարության հաջողություն-
ներին ուրախությամբ էր հետևում միջազգային պրոլետարիատը։ 1924 թվա-
կանի ամռանը Մոսկվայում կայացավ Կոմինտերնի V կոնգրեսը, որը որոշում
ընդունեց բանվորական շարժման մեջ միասնական ճակատի տակտիկան
ավելի զարգացնելու և կոմունիստական կուսակցություններն ուժեղացնելու
մասին։ Քննարկելով Սովետական Միությունում սոցիալիզմի կառուցման
պրոբլեմները, կոնգրեսը դատապարտեց տրոցկիստների ֆրակցիոն գործու-
նեությունը։

Կուսակցությունը կանգնած էր հետագա խնդիրները կոնկրետացնելու ան-
հրաժեշտության առաջ։ Դա հեշտությամբ չստացվեց։ Հարկ եղավ հաղթահա-
րել զգալի դժվարություններ, շատ աշխատողների քարացած մտածողությունը։
Հարկ եղավ մղել նոր դիսկուսիա, որ սանձազերծել էր Տրոցկին, համառաբար
պնդելով, թե «հիմնովին սխալ է», հենվելով գերազանցապես ներքին ուժերի
վրա, հարց դնել սոցիալիզմի կառուցման հնարավորության մասին նույնիսկ
կես դարի ընթացքում, էլ չխոսելով արդեն ավելի կարճ ժամկետի մասին, որ
մատնանշում էր Լենինը (10—20 տարի)։ Մեր երկրի հնարավորությունները,
պնդում էր Տրոցկին, երբ կպառվեն սոցիալիզմի սոսկ միայն մի քանի «տար-
րեր» ստեղծելով, որի վրա պետք է երկար տասնամյակներ ծախսվեն։ Սովե-
տական Միությունում սոցիալիզմի բուն հաղթանակը նա ուղղակի կախման
մեջ էր դնում առավել զարգացած կապիտալիստական երկրների հեղափոխու-
թյուններից։ Սոցիալիզմի կառուցման ուղղությամբ կուսակցության ունեցած
փորձն արդեն հերքում էր այդպիսի պնդումները։

Դիսկուսիան սկսվեց Տրոցկու «Հոկտեմբերի դասերը» հոդվածի կապակ-
ցությամբ, որտեղ հայտարարվում էր, որ բոլշևիզմն իբր հետևողական դար-
ձավ միայն 1917 թվականից սկսած, այն բանից, հետո, երբ նա վերազինվեց
տրոցկիստական գաղափարների հիման վրա։ Տրոցկիստները դիսկուսիայում
խորտակիչ պարտություն կրեցին։ ՌԿ(բ)Կ Կենտկոմի և ԿՎՀ-ի միացյալ պլե-
նումը (1925 թվականի հունվար) ընդգծեց, որ նրանց ելույթները մի փորձ էր
«լենինիզմը նենգափոխել տրոցկիզմով, այսինքն... մենշևիզմի այլատեսա-
կությամբ»։ Տրոցկին հանվեց ՍՍՀՄ ռազմհեղխորհրդում զբաղեցրած իր պոս-
տից։ Ռազմհեղխորհրդի նախագահ նշանակվեց սովետական աչքի ընկնող
զորավար, կուսակցության ականավոր գործիչ Մ. Վ. Ֆրունզեն։

Սոցիալիզմի կառուցման լենինյան կուրսի հաղթանակի, նրա կենսագործման համար կուսակցությանը մոբիլիզացնելու բնագավառում հսկայական դեր խաղաց XIV կուսկոնֆերանսը (1925 թվականի ապրիլ)։

Նա կոնկրետացրեց լենինյան դրույթները մեր երկրում սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի մասին, քննարկելով այդ պրոբլեմի երկու՝ ներքին և արտաքին (միջազգային) կողմերը։ Սոցիալիստական հասարակություն կառուցելու համար պահանջվում էր տնտեսական հաղթանակ տանել ներքին բուրժուազիայի դեմ, բազմամիլիոն աշխատավոր գյուղացիությունը փոխադրել կոլեկտիվ սոցիալիստական տնտեսության ուղին, վերացնել վերջին շահագործողական դասակարգերը։ Սակայն սոցիալիզմի այդպիսի հաղթանակը վերջնական չէր։ Դեռ գոյություն ուներ միջազգային իմպերիալիզմի ուժերով կապիտալիզմը ռեստավրացիայի ենթարկելու (վերականգնելու) վտանգը։ Չէ՞ որ մեր երկիրը միակ սոցիալիստական պետությունն էր աշխարհում։ Իր որոշումներում կոնֆերանսն արձանագրեց, որ սոցիալիզմի վերջնական հաղթանակի միակ երաշխիքը հաղթական սոցիալիստական հեղափոխությունն է մի շարք երկրներում։

Լենինյան տեսության և միջազգային հեղափոխական շարժման ամփոփված փորձի հիման վրա կուսակցությունն ուղղում մտցրեց համաշխարհային հեղափոխության տեմպի, ինչպես նաև նրա «երթուղու» վերաբերյալ նախորդ պատկերացումների մեջ։ XIV կոնֆերանսի բանաձևում արտահայտվում էր այն միտքը, որ համաշխարհային հեղափոխությունը ՍՍՀՄ-ից հետո անպայման չէ, որ կանցնի կոնտինենտալ Եվրոպայի առաջավոր երկրներով։ Այն կարող է շարժվել «և՛ Հեռավոր Արևելքով, և՛ Բալկաններով, և՛ Եվրոպայի հարավ-արևելքով»։ Կոնֆերանսը նշեց նաև ազգային-ազատագրական շարժումների աճման համաշխարհային-պատմական նշանակությունը։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցումն աշխարհի հեղափոխական վերափոխման կարևորագույն մասն է։ Կուսակցության ամբողջ աշխատանքը, «սկսած մյուս երկրներում հեղափոխական շարժումներին ուղղակի աջակցություն ցույց տալուց, մինչև սեփական երկրում գյուղացիության համար էժան չիթ արտադրելը», ինչպես ընդգծում էր կուսկոնֆերանսը, հանդիսանում էր համաշխարհային հեղափոխական պրոցեսի մի կարևորագույն մասը։ Պրոլետարիատի դիկտատուրայի առաջին երկրի ազգային և ինտերնացիոնալ խնդիրները հարմոնիկ կերպով համընկնում էին։

Կոնֆերանսը քննարկեց նաև մեր երկրի տնտեսական զարգացման հարցերը, ընդգծելով նոր տնտեսական քաղաքականության սկզբունքների անխախտելիությունը։ Կուսակցության կողմից հռչակված «Երեսներս դեպի գյուղ» կուրսին համապատասխան XIV կուսկոնֆերանսը նախատեսեց և հավանություն տվեց մի շարք այնպիսի միջոցառումների, որոնք բարելավում էին գյուղացիների նյութական դրությունը։ Խիստ քննադատության ենթարկվեցին ռազմական կոմունիզմի մնացուկները տնտեսական քաղաքականության մեջ և վարչական պրակտիկայում. սովետական օրգաններին հանձնարարվեց թույլատրել հողի վարձակալությունը, ինչպես նաև վարձու աշխատանքի կիրառումը գյուղացիական տնտեսության մեջ՝ պահպանելով աշխատանքի մասին սովետական օրենքները։ Որոշում ընդունվեց գյուղատնտեսական հարկը իջեց-



նելու մասին և այլն։ Դա նպաստեց բանվոր դասակարգի և գյուղի հիմնական (միջակային) զանգվածի դաշինքի ամրապնդմանը։

XIV կուսկոնֆերանսի որոշումներով կարևոր միջոցառումներ էին նախատեսված մասնավոր կապիտալի դեմ տնտեսական պայքար մղելու ուղղությամբ, ուժեղացվում էր կոոպերացիայի դերը, որը կոչված էր գյուղացիներին աստիճանաբար մոտեցնել սոցիալիզմին։

Կուսակցությունն առանձնապես լարված ուշադրություն էր դարձնում սոցիալիզմի հիմնական բազայի՝ ծանր արդյունաբերության զարգացման վրա։ Այդ ուղղությամբ ևս կոնֆերանսը նոր քայլ կատարեց XIII համագումարից հետո։ Ֆ. Է. Ձերժինսկու զեկուցման առթիվ հատուկ որոշում ընդունվեց մետաղարդյունաբերության արտադրական ծրագիրն էականորեն (ավելի քան քառորդ մասով) ընդլայնելու մասին։ Իսկ շուտով սկզբնական պլանը գրեթե կրկնապատկվեց։

Այսպիսով, XIV կուսկոնֆերանսը պաշտպանեց և զարգացրեց Լենինի հետևությունը՝ ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման հնարավորության մասին։ Կուսակցության կողմից իր խնդիրների իմացության պարզությունն առանձնապես անհրաժեշտ էր նէպի բարդ և հակասական իրադրության մեջ։ Բանն այն է, որ նէպի վրա աշխուժացած կապիտալիստական տարրերը ձգտում էին ավելի զարգանալ, քան այն շրջանակները, որ սահմանել էր պետությունը, իսկ սովետական տնտեսական ու առևտրական կազմակերպությունները հաճախ ընկրկում էին շուկայական տարերքի հանդեպ։

Նէպի հակասությունները պայմանավորված էին նաև միջին խավերի, նախ և առաջ ամբողջ միջակ գյուղացիության տատանումներով։ Վերջիններիս ամենասուր արտահայտությունը հանդիսացավ Վրաստանի Գուրիի գավառում 1924 թվականին տեղի ունեցած ապստամբությունը, որտեղ նախկին ազնվականներին հաջողվեց հակասովետական ապստամբության հրահրել գյուղացիների մի մասին, որոնք դժգոհ էին գյուղատնտեսական և արդյունաբերական ապրանքների գների հարաբերակցությունից։ Թեև մի քանի օրվա ընթացքում ապստամբության օջախները վերացվեցին, քանի որ դրա նախաձեռնողները մասսայական աջակցություն չունեին, կուսակցությունն անհրաժեշտ համարեց լուրջ քաղաքական հետևություններ անել այդ իրադարձություններից։ Կուսակցության Կենտկոմը նշեց, որ տեղական որոշ կուսակցական ու սովետական կազմակերպություններ կտրվել են մասսաներից, վարչարարություն են թույլ տվել գյուղացիների հետ ունեցած հարաբերություններում։ Դա բարենպաստ հող էր ստեղծում հակահեղափոխական ագիտացիայի համար։ 1924 թվականի դեպքերի առթիվ կուսակցության գլխավոր հետևությունը ձևակերպվեց «սովետների աշխուժացում» լոզունգի ձևով։ Գյուղացիների լայն զանգվածներին երկրի կառավարման մեջ ներգրավելը, պետական օրգանների աշխատանքին նրանց մասնակցությունը օգնեց վերացնելու այն թերությունները, որոնք դժգոհություն էին առաջացնում։

20-ական թվականների կեսերին երկիրն ընդհուպ մոտեցել էր արտադրության նախահեղափոխական մակարդակին։ Կյանքն առաջ քաշեց սոցիալիզմի կառուցման նոր, բարդ հարցեր։ Խոսքը վերաբերում էր այդ կառուցման հետագա ձևերին, ուղիներին, գյուղացիության տարբեր խավերի նկատմամբ ունենալիք վերաբերմունքին, պետական սոցիալիստական արդյունաբերության դե-

րին։ Սակայն այդ հարցերի գնահատման մարզում կուսակցության մեջ լիակատար միասնություն չկար։ Նէպի հակասությունները, նրա տարբեր կողմերը գնահատվում էին տարբեր կերպ։

1925 թվականին հանդես եկավ այսպես կոչված «նոր օպոզիցիան»՝ Զինովևի և Կամենևի գլխավորությամբ, որոնք այն ժամանակ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ էին։ Նա սկսեց Կենտկոմի մեծամասնությանը մեղադրանքներ բարդել Տրոցկու նկատմամբ լիբերալիզմ ցուցաբերելու մեջ։ Այդ օպոզիցիայի «հակատրոցկիստական» դրոշը սկզբում խաբեց տրոցկիզմի դեմ ակտիվորեն պայքարող շատ կոմունիստների։ Դրանով է բացատրվում առաջին էտապում Լենինգրադի կազմակերպության շատ կոմունիստների աջակցությունը օպոզիցիային։ Ներկուսակցական պայքարը հատկապես շիկացավ կուսակցական հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում, նախքան ՌԿ(բ)Կ XIV համագումարը։

Սոցիալիզմի կառուցման հարցը օպոզիցիան համարում էր «ակադեմիական», հայտարարելով, թե նա իբր գործնական նշանակություն չունի երկրի տեխնիկա-տնտեսական և կուլտ-կենցաղային հետամնացության պատճառով, հետամնացություն, որին իբր թե հնարավոր չէ վերջ տալ առանց մյուս երկրների պրոլետարիատի հաղթական հեղափոխությունների ուղղակի աջակցության։ Ըստ էության դա մի արշավանք էր XIV կուսկոնֆերանսի որոշումների դեմ, չնայած օպոզիցիոներները հայտարարում էին, թե համաձայն են այդ որոշումներին։ Այդպիսով, կուսակցությանը հուզող հիմնական հարցում, «նոր օպոզիցիան» փաստորեն անցավ տրոցկիզմի կողմը։

Զինովևականները ըստ էության տրոցկիստական հայացքներ էին զարգացնում նաև նէպը բնութագրելիս, պնդելով, թե «նէպը՝ նահանջ է»։ «Երբ կհասունանա պրոլետարական հեղափոխությունը մյուս երկրներում և արևմուտքի պրոլետարիատը մեզ օգնության կգա, այն ժամանակ մենք նորից կսկսենք հարձակումը,— հայտարարում էր Զինովևը։— Առայժմ մենք միայն դադար ունենք»։ Ամբողջ սովետական կարգը, մասնավորապես պետական սոցիալիստական արդյունաբերությունը, զինովևականները բնութագրում էին որպես պետկապիտալիզմ։ Նրանք Կենտկոմին մեղադրում էին նաև կուլակությանը զիջումներ անելու մեջ, որը «վերաճել է ահեղ ուժի»։ Նրանց «փաստարկներից» մեկը ՍՍՀՄ-ի կենտրոնական վիճակագրական վարչության՝ օպոզիցիայի կողմից ճիշտ համարվող այն հաշվարկն էր, որի տվյալներով այնպես էր ստացվում, թե իբր նէպի տարիներին տեղի է ունեցել կուլակության բացառիկ արագ աճ, որն իբր կազմում էր գյուղացիական տնտեսությունների 14 տոկոսը (համարյա ինչպես մինչև հեղափոխությունը) և որը կենտրոնացրել էր իր ձեռքերում ամբողջ գյուղացիական ապրանքային հացի համարյա երկու երրորդը։

Սակայն ԿՎՀ-ի հանձնաժողովը Կույբիշևի ղեկավարությամբ մանրազնին ստուգելով նյութերը, գտավ, որ կուլակային տնտեսությունների քանակությունը և նրանցում կուտակված ապրանքային հացի քանակը այդ հաշվարկով չափազանց բարձրացվել են։

Կուսակցության խնդիրը ոչ թե գյուղացիության վրա վարչարարական ճնշման ուժեղացումն էր, ինչպես պահանջում էր օպոզիցիան, այլ, ընդհակառակը, չհիմնավորված արգելքների վերացումը։ Կուսակցության Կենտկոմը



գտնում էր, որ այն ժամանակվա պայմաններում գլխավորը միջակներին բանվոր դասակարգի շուրջը համախմբելն էր։ XIV կուսկոնֆերանսի կողմից գյուղացիությանն արած զիջումները ամբողջովին պարփակվում էին նէպի շրջանակներում։

Արդեն փաստորեն ծավալված ներկուսակցական դիսկուսիայի ընթացքում (1925 թվականի հոկտեմբեր) Կենտկոմի պլենումը ամրապնդեց կուսակցության գիծը, ընդգծելով կուսակցության քաղաքականությունից կատարված երկու թեքումների՝ աջ թեքման (նէպի բացասական կողմերի՝ մասնավորապես կուլակային վտանգի թերագնահատում) և «ձախ» թեքման (նէպի անհրաժեշտության ըմբռնում, շփոթություն կուլակի հանդեպ և միջակի շահերի մոռացում) դեմ պայքարելու անհրաժեշտությունը։

Ժողովրդական տնտեսության հաջող վերականգնման կապակցությամբ կուսակցությունը հարց է դնում առավելապես վերականգնման խնդիրների լուծումից անցնել ժողովրդական տնտեսության անմիջականորեն լայն վերակառուցմանը։ Ընդ որում նա ելնում էր սոցիալիստական շինարարության տեմպերն արագացնելու հիմնական սկզբունքից։ Սկսվում էր նէպի նոր ստադիան։

Տնտեսական գլխավոր հանրագումարն այն էր, որ չնայած թույլատրվեց կապիտալիստական տարրերի գոյությունը, սոցիալիստական տնտեսաձևը կազմում էր սովետական էկոնոմիկայի հիմքը։ Նոր տնտեսական քաղաքականությունն օգնեց գլխավորապես հենց այդ տնտեսաձևի ամրապնդմանը, վերափոխելով այն ներգործության վճռական լծակի արտադրության մնացած բոլոր սեկտորների նկատմամբ։

Աստիճանաբար փոխվում էր նաև տնտեսության առանձին ճյուղերի, մասնավորապես արդյունաբերության, ստրուկտուրան։ Դեռևս էլեկտրիֆիկացիայի պլանը, որն ընդունվել էր 1920 թվականի վերջին, ելնում էր արտադրության միջոցների արտադրության գերակշռող զարգացման հիմնական սկզբունքից։ 1925 թվականին ընդհանուր արդյունաբերության արտադրանքի մեջ արտադրության միջոցների տեսակարար կշիռը գերազանցեց նախահեղափոխական մակարդակը։

Գյուղի սոցիալական կառուցվածքը նույնպես այլ էր դառնում։ Թեև գյուղատնտեսական արտադրությունը հիմնականում մնում էր մասնավոր սեփականատիրական, աշխատավոր գյուղացիությանը պետական օգնություն ցույց տալու քաղաքականությունը և կապիտալիստական տարրերի սահմանափակումը պայմաններ էին ստեղծում գյուղի դասակարգային շերտավորման բովանդակությունը փոփոխելու բնագավառում։ Հեղափոխությունից հետո միջակ գյուղացիությունը դարձավ գյուղատնտեսության հիմնական դասակարգային և արտադրողական ուժը։

Իրադրությունը գյուղում փոխվում էր նաև լենինյան կոոպերատիվ պլանի աստիճանաբար իրականացման ընթացքում։ Ամենապարզ (առևտրական) կոոպերացիան ընդգրկում էր գյուղացիության ավելի ու ավելի լայն շրջաններ։ Տնտեսական փորձ էին կուտակում նաև դեռևս ոչ մեծաքանակ կոլտնտեսությունններն ու սովխոզները։

Փոխվեց նաև առևտրի բնույթը։ Արտաքին առևտրի բնագավառում կուսակցությունը անշեղորեն պահպանում էր պետական մենաշնորհի սկզբունքը։ Ծավալվում էր սոցիալիստական ներքին (պետական և կոոպերատիվ) առև-

տուրը: Նա ներքին մեծածախ շուկայում առաջ շարժվեց և վճռական տեղ ու առավել ամուր դիրքեր գրավեց մանրածախ շրջանառության մեջ:

Այսպիսով, ժողովրդական տնտեսության վերականգնումը չէր սահմանափակվում արտադրության նախապատերազմյան ծավալին հասնելով: Խոսքը, հասկանալի է, այնպիսի տնտեսության վերականգնման մասին չէր, որին կգերիշխեին շահագործողները: ՍՍՀՄ-ում էկոնոմիկայի հիմնական դիրքերը գտնվում էին սոցիալիստական պետության ձեռքում: Տնտեսության՝ 1913 թվականի մակարդակին մոտենալու համեմատ կուսակցության առաջ ավելի ու ավելի հրամայաբար ծառանում էր սոցիալիստական շինարարության հետագա հեռանկարային կոնկրետացման անհրաժեշտությունը:

Հարցեր զրույցի համար

1. Կուսակցության X համագումարը: Նոր տնտեսական քաղաքականության էությունը:
2. ՍՍՀՄ կազմավորումը կուսակցության լենինյան արտաքին քաղաքականության մարմնավորումն է:
3. Սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը և դրա միջազգային նշանակությունը:



Պատվեր 2441

Տիրաժ 9710

Հանձնված է արտադրության 22/IX 1966 թ.:
Ստորագրված է տպագրության 29/IX 1966 թ.:
Թուղթ՝ 70×108 1/16: Տպագր. 2 մամ.=հրատ. 1,5 մամ.:

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:

գրության պայմաններում հաճախ փոխվում է խառատի, ձուլողի, եռակցողի, փականագործի և այլ պրոֆեսիաների հասկացության բովանդակությունը: Ձևավորվում են նոր հասկացություններ՝ մեխանիկ-բանվորի, կարգավորողի, մեքենավարի և այլ պրոֆեսիաների, որոնց տիրապետող բանվորները լավ գիտեն և խառատի և ձուլողի և ֆրեզերագործի աշխատանքները, ծանոթ են էլեկտրական հանգույցներին և ավտոմատ սարքավորումների ամբողջ սիստեմին: Հենց դրանումն է այն սկզբունքային տարբերությունը, որ գոյություն ունի ունիվերսալ և լայն պրոֆիլի պրոֆեսիաների միջև:

Արտադրական պրոցեսների մեքենայացմամբ և ավտոմատացմամբ առաջանում է կարգավորողի պրոֆեսիան, որը կենտրոնական տեղ է գրավում և համարվում է արտադրության հիմնական դեմքը: Կարգավորող բանվորի պրոֆեսիան համատեղում է մի շարք պրոֆեսիաների գործունեություն: Այսպես, օրինակ, մետաղի մշակման ավտոմատ գծի կարգավորողը համատեղում է ֆրեզերագործի, խառատի, շաղափողի, կառուսելագործի, ձուլողի, էլեկտրիկի և շատ օժանդակ բանվորների աշխատանքները: Արտադրության տեխնիկայի բարդացման, կատարելագործման պրոցեսում սիստեմատիկաբար կրճատվում է հաստոցավար բանվորների թիվը և ավելանում կարգավորողների քանակը: Հաստոցավարները կարգավորողներով փոխարինելու պրոցեսը հատկապես լավ է երևում առանձին ավտոմատ գծերի օրինակով: Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի № 14 արտադրամասում շարք մտած գեներատորների հենոցների մեխանիկական մշակման ավտոմատ գծերը լուրջ փոփոխություններ մտցրին բանվորների պրոֆեսիոնալ կազմում և նրանց աշխատանքում: Եթե նախկինում հենոցները մշակվում էին կառուսելային, ֆրեզերային, շաղափող հաստոցների վրա, երեք հերթափոխում զբաղեցնելով 24 կառուսելագործ, ֆրեզերագործ և շաղափող, ապա այժմ բոլոր հաստոցների փոխարեն դրված է բազավորման մեկ հաստոց, որը հենոցների ավտոմատ մշակման ընթացքում կատարում է տարբեր բնույթի տասնյակ գործողություններ: Այդ ավտոմատ գիծը սպասարկում են ոչ թե տարբեր պրոֆեսիայի բազմաթիվ բանվորներ, այլ 5 ավտոմատ կարգավորողներ, որոնք լավ գիտեն խառատի, կառուսելագործի, ֆրեզերագործի, շաղափողի և այլ պրոֆեսիայի բանվորների աշխատանքները:

Բանվորների պրոֆեսիոնալ կազմում տեղի ունեցող որակական փոփոխությունների վառ արտահայտություններից մեկն էլ այն է, որ արտադրության նյութա-տեխնիկական բազայի փոփոխության ու զարգացման հետևանքով լայն պրոֆիլի պրոֆեսիաների հետ միաժամանակ առաջ են գալիս այսպես կոչված փոխհասկից պրոֆեսիաներ: Փոխհասկից պրոֆեսիաները ժամանակակից արտադրության պահանջները բավարարող լայն պրոֆիլի այն պրոֆեսիաներն են, որոնք ընդհանուր են արտադրության բոլոր բնագավառների համար և որոնց հանդիպում ենք արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում: Այսպես, օրինակ, գազա-էլեկտրաեռակցողի, դարբնի, մեքենավարի, կարգավորիչի, փականագործի, խառատի, լաբորանտի, էլեկտրամոնտյորի և շատ ուրիշ պրոֆեսիաների կարելի է հանդիպել արտադրության ամեն մի բնագավառում: Տեխնիկական առաջադիմությունը փոխհասկից պրոֆեսիաների լայն կիրառման համար նյութական հիմք է ստեղծել արդյունաբերության բոլոր ճյուղերում:

Արդյունաբերության մեջ տեխնիկական առաջադիմությունն առաջ է բերում փոխհասկից պրոֆեսիաների թվաքանակի բացարձակ և հարաբերական աճ: Եթե 1959 թ. վիճակագրական տվյալներով հանրապետության արդյունաբերության մեջ փոխհասկից պրոֆեսիաների թիվը կազմում էր 136, ապա 1965 թվականին այն հասել է 205-ի կամ աճել է ավելի քան 50 տոկոսով: Փոխհասկից պրոֆեսիաների թվի աճը ուղեկցվում է արդյունաբերության մեջ գործող մյուս բոլոր պրոֆեսիաների ընդհանուր թվաքանակի կրճատմամբ:

Աշխատանքի և աշխատավարձի հարցերի գծով ՍՍՀՄ Մինիստրների սովետի պետական կոմիտեն ուսումնասիրելով բանվորների աշխատանքի բնույթի և բովանդակության մեջ կատարված լուրջ փոփոխությունները, անհրաժեշտ համարեց փոխհասկից պրոֆեսիաների միասնական ցանկ մշակելիս միացնել պրոֆեսիաների անվանումները և վերացնել ավելորդ մասնատվածությունները, հատկապես ֆունկցիաների արհեստական բաժանման ասպարեզում: Եվ նախկինում եղած ավելի քան 2888 պրոֆեսիաներ ու մասնագիտություններ, որոնք ընդգրկում էին բոլոր բանվորների 67,2 տոկոսը, խմբավորվեց 187 պրոֆեսիաների և 127 մասնագիտությունների մեջ:

Տեխնիկական առաջադիմության ներկա պայմաններում հանրապետության արդյունաբերության մեջ և՛ քանակապես և՛ որակապես աճում է փոխհասկից պրոֆեսիաների բանվորների քանակը:

Անցած յոթնամյակի տարիներին հանրապետության արդյունաբերության աճի հետ միասին էական փոփոխություն է կատարվել բանվորների պրոֆեսիոնալ կազմում: Արագորեն աճել է առաջատար փոխհասկից պրոֆեսիաների թիվը: Այսպես, օրինակ, 1959—1965 թթ. ընթացքում ապարատավարների թիվը ավելացել է ավելի քան 42,5 անգամ, գազա-էլեկտրաեռակցողներինը և զոդողներինը՝ 3,6, կարգավորողներինը՝ 2,6, հաստոցավարներինը՝ 2,5, էլեկտրամոնտյորներինը՝ 3,5 և

այլն։ Առաջատար պրոֆեսիաների բանվորների թվաքանակի աճը զուգակցվել է ձեռքի աշխատանքի հետ կապված մի շարք պրոֆեսիաների թվի նվազմամբ։ Եթե դարբինների թիվը ընդհանուր առմամբ աճել է 14 տոկոսով, ապա ձեռքով աշխատող մուրճահար դարբինների թիվը կրճատվել է 40,3 տոկոսով, լցնող բանվորներինը՝ 40, հնոցապաններինը՝ 28,2 տոկոսով և այլն։ Զգալի փոփոխություն է կատարվել կանանց պրոֆեսիոնալ կազմում։ Եթե 1962—1965 թթ. բոլոր պրոֆեսիաների կանանց թիվը ավելացել է 32,8 տոկոսով, ապա կարգավորող կանանց թիվը ավելացել է 3 անգամ, մետաղ կտրողներինը՝ 8, օպերատորներինը՝ 0,5, եռակցողներինը՝ 3,4, ավտոմատ կառավարման մեքենաների վրա աշխատողներինը՝ 3,6 անգամ և այլն։ Դրան հակառակ իջել է կանանց պրոֆիլին չհամապատասխանող պրոֆեսիայի աշխատողների թիվը։ Այսպես օրինակ՝ բեռնող-բեռնաթափող կանանց թիվը կրճատվել է 5 անգամ, լցնողներինը՝ 8, ամբարձիչավարներինը՝ 3,6 անգամ և այլն։ Այս օրինաչափ պրոցեսը առավել ցայտուն ձևով տեղի կունենա հետագա տարիներին և կանայք ամբողջապես կընդգրկվեն այնպիսի աշխատանքներում, որոնք իրենց բնույթով ու բովանդակությամբ համապատասխանում են նրանց արտադրական ունակությանը։

Արմատական փոփոխություններ են կատարվել պրոֆեսիաների բնույթի ու բովանդակության մեջ։ Առաջատար պրոֆեսիաների բանվորների աշխատանքներն ամբողջությամբ մեքենայացված են, իսկ մյուս պրոֆեսիաներում աշխատանքի մեքենայացման աստիճանը բացարձակ գերակշռություն է ձեռք բերել։

Լայն պրոֆիլի պրոֆեսիաների և ունիվերսալ պրոֆեսիաների բանվորների կազմի փոփոխությունը կախված է արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման աստիճանից։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այն տեղամասերում, որտեղ տեղադրված են ավտոմատ և կիսավտոմատ գծեր, այնտեղ չկան այնպիսի ունիվերսալ պրոֆեսիայի բանվորներ, ինչպիսիք են խառատները, ֆրեզերագործները և այլն։ Իսկ հակառակ դրան, կարգավորող բանվորները բացարձակ մեծամասնություն են կազմում։ Այդ պրոցեսը տեղի է ունենում նաև տարբեր տիպի հաստոցների սարքավորումների սպասարկման դեպքում։ Այսպես, Մոսկվայի աշխատանքի գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով ունիվերսալ, կիսավտոմատ և ավտոմատ հաստոցների սարքավորումների սպասարկման պայմաններում բանվորների պրոֆեսիոնալ կազմը փոփոխվել է հետևյալ կերպ.

Բանվորների պրոֆեսիոնալ կազմի փոփոխությունը տարբեր տեսակի սարքավորումներ սպասարկելու դեպքում[1]:

| Բանվորների պրոֆեսիոնալ խմբերը | Տարբեր տեսակի սարքավորումներ սպասարկող բանվորների տեսակարար կշիռը | | |
|---|---|---|---|
| | ունիվերսալ | կիսաավտոմատ | ավտոմատ |
| Հաստոցավարներ | 80,6 | 66,5 | 55,0 |
| Կարգավորողներ | 3,4 | 16,4 | 29,6 |
| Նորոգող բանվորներ | 7,4 | 9,9 | 13,8 |
| Օժանդակ բանվորներ | 8,6 | 7,2 | 1,6 |
| Ընդամենը | 100,0 | 100,0 | 100,0 |

Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ ավտոմատ սարքավորումների կիրառմամբ զգալի չափով իջել է հաստոցավարների և օժանդակ բանվորների տեսակարար կշիռը, իսկ դրան հակառակ բարձրացել է կարգավորող և նորոգող բանվորների տեսակարար կշիռը։ Այդ օրինաչափությունը առավել ցայտուն կերպով է երևում կոմպլեքսային ավտոմատացման դեպքում։

Հետևությունն այն է, որ արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման պայմաններում աշխատուժի ճիշտ պլանավորման կարևոր պայմաններից մեկը բանվորների պրոֆեսիոնալ կազմի փոփոխության գիտական ուսումնասիրությունն է։ Դա անհրաժեշտ է ոչ միայն այս կամ այն պրոֆեսիայի տեղն ու դերը բացահայտելու, այլև բանվորների աշխատանքի բնույթի և բովանդակության փոփոխության հետ կապված մի շարք հոգեբանական և ֆիզիոլոգիական երևույթների ճանաչման և կարգավորման համար։ Հետևապես, բանվորների պրոֆեսիոնալ կազմի քանակական և որակական փոփոխության բազմակողմանի ուսումնասիրությունը ներկա պայմաններում կարևոր նշանակություն է ձեռք բերում և անհրաժեշտ պայման է հանդիսանում բանվորական ուժի գիտական պլանավորման, ռացիոնալ տեղաբաշխման և ճիշտ օգտագործման համար։ Դրա համար անհրաժեշտ է ամեն տարի հաշվառում անցկացնել բանվորների պրոֆեսիոնալ կազմի վերաբերյալ և այն գիտականորեն ամփոփել՝ որոշակի ուսումնասիրություններ կատարելու նպատակով։

Նպատակահարմար է բանվորների պրոֆեսիոնալ կազմի հաշվառումը անցկացնելիս օգտագործել պրոֆեսիաների հայերեն անվանումները, որոնք դեռ շատ պակասավոր են։

Այսպիսով, կատարված ուսումնասիրությունները հնարավորություն են տալիս հանգելու այնպիսի եզրակացության, որ արդյունաբերության բոլոր ճյուղերում այս կամ այն չափով տեղի է ունենում միևնույն պրոցեսը. այսինքն՝ արդյունաբերության բազմակողմանի զարգացումը, տեխնիկական առաջադիմությունը զգալի ազդեցություն են գործում բանվորների պրոֆեսիոնալ կազմի քանակական և որակական փոփոխության վրա։ Արտադրության նյութատեխնիկական բազայի փոփոխմամբ փոխվում է նաև բանվորների պրոֆեսիոնալ կազմը։ Մի կողմից աստիճանաբար վերանում են ծանր ֆիզիկական և ցածրորակ աշխատանքի հետ կապված պրոֆեսիաները, իսկ մյուս կողմից առաջանում են նոր պրոֆեսիաներ։

Տեխնիկայի զարգացումը և արտադրության մասնագիտացումը կյանքի են կոչում և անհրաժեշտ են դարձնում մի շարք պրոֆեսիաների ու մասնագիտությունների համատեղում, առանց որի անհնար է իրականացնել ժամանակակից արտադրության նորմալ ընթացքը։

Բանվորների պրոֆեսիոնալ կազմի փոփոխությունը վերջին հաշվով պայմանավորում է նրանց կուլտ-տեխնիկական մակարդակի բազմակողմանի բարձրացումը։

Թ. ԶԱԼՅԱՆ



[1] Տե՛ս Е. И. Капустин, Качество труда и заработная плата, М., 1964, էջ 222։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ՏՐԱԴԻՑԻԱՆԵՐԸ ԲՅՈՒՐԵՂԱՆՈՒՄ ԵՆ

Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը հիմնադրվել է Հայրենական պատերազմի ծանր տարիներին, կառուցվել ռեկորդային կարճ ժամանակամիջոցում: Այդ գործարանի ծնունդը տնտեսական-քաղաքական աչքի ընկնող իրադարձություն եղավ ոչ միայն Հայաստանի կյանքում: Այն փաստորեն էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջնեկն է ամբողջ Անդրկովկասում:

Գործարանի կոլեկտիվն իր ստեղծագործական աշխատանքի ու խիզախումների անցած քսանհինգ տարիներին, հաջողությամբ կատարելով պետական առաջադրանքներն, արժանի ներդրում է արել հայրենական էլեկտրական մեքենաշինության զարգացման գործում:

Ներկայումս գործարանում աշխատում են ավելի քան 10 հազար մարդ: Կոլեկտիվի հիմնական կորիզը կազմում են որակյալ բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնք հետևողական պայքար են մղում արտադրական պլանների կատարման և տեխնիկական առաջադիմության համար: Արտադրվող ավելի քան 250 տեսակի մեքենաների մեծ մասը յուրացվել է վերջին, հատկապես յոթնամյակի տարիներին: Ամեն տարի գործարանում յուրացվում և մասսայական արտադրության են հանձնվում ավելի քան 30 նոր տիպի էլեկտրամեքենաներ: Վերջին 15 տարում գործարանի արտադրության ծավալն աճել է ավելի քան 10 անգամ, նրա արտադրանքը ճանաչում է գտել արտասահմանյան ավելի քան 40 երկրներում:

Կուսակցությունը և կառավարությունը բարձր են գնահատում կոլեկտիվի վաստակը, օգնում նրա արտադրական հաջողություններին: Յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1966 թվականի հուլիսի 19-ի հրամանագրով Հայէլեկտրագործարանը պարգևատրվել է «Աշխատանքային կարմիր դրոշի» շքանշանով: Կառավարական բարձր պարգևը նոր լիցք է հաղորդել էլեկտրամեքենաշինարարներին, նրանք աննախընթաց եռանդով են պայքարում 8-րդ հնգամյակի առաջին տարվա առաջադրանքների հաջող կատարման համար:

Միայն արտադրական ցուցանիշներով, թողարկված մեքենաների որակով ու քանակով չէ, որ որոշվում են գործարանի հաջողությունները, նրա դերն ու նշանակությունն հանրապետության կյանքում: Հայէլեկտրագործարանը միաժամանակ տեխնիկական մտքի զարգացման կենտրոն է, էլեկտրամեքենաշի-



նարար բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների որակյալ կադրերի ուսուցման և աճեցման, նրանց գաղափարական կոփման խոշոր դպրոց է: Բազմաթիվ փաստեր վկայում են, թե ինչպես երիտասարդ քաղաքացին, ոտք դնելով գործարան, տեղավորվելով համապատասխան աշխատանքում, կարճ ժամանակում ձեռք է բերում իր ցանկացած մասնագիտությունը, դառնում որակյալ բանվոր, իսկ եթե նա մասնագիտական կրթությամբ է գալիս գործարան՝ դառնում է հմուտ ինժեներ, տեխնիկ, տնտեսագետ:

Գործարանի կուսակցական կազմակերպությունն այս երևույթը համարում է ձեռնարկության լավագույն տրադիցիան, որն ստեղծվել է վերջին երկու տասնամյակում և օր-օրի բյուրեղանում է, և ամեն կերպ ձգտում է բազմապատկել ու պահպանել այդ:

Գործարանի ընդարձակմանը զուգընթաց աճում է բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը, որի մեջ զգալի տեղ է գրավում երիտասարդությունը: Հենց դրա համար էլ կուսկոմի և արտադրամասերի կուսկազմակերպությունների համակողմանի գործունեության մեջ ավելի մեծ տեղ է տրվում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերին:

Կուսկոմը և կուսկազմակերպությունները կադրերի հետ տարվող ամբողջ աշխատանքը, նրանց քաղաքական-գաղափարական դաստիարակության գործը ամենից առաջ ուղղում են ձեռնարկության առաջ կանգնած արտադրական պլանների կատարմանը, ըստ որում կարևոր տեղ է հատկացվում կոմունիստների և բոլոր կադրերի մարքս-լենինյան ուսուցմանը: Անցած ուսումնական տարում ձեռնարկության արտադրամասերում ու բաժիններում գործել են 29 քաղդպրոց և 7 տեսական սեմինար, որտեղ հարյուրավոր էլեկտրամեքենաշինարարներ բարձրացրել են իրենց թեորետիկական մակարդակը: Բացի դպրոցներից և տեսական սեմինարներից, կուսկոմին կից շարունակել է գործել երիտասարդ կոմունիստների դպրոցը: Դժվար է գերագնահատել այդ դպրոցի դերն ու նշանակությունը մեր կուսկազմակերպության կյանքում: Անցած երկու տարում տասնյակ երիտասարդ կոմունիստներ սովորելով այդ դպրոցում, հանգամանորեն ուսումնասիրել են ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը, տիրապետել մարքսիզմ-լենինիզմի հիմունքներին:

1965—1966 թվականները մեզ մոտ եղել են պրոպագանդիստական աշխատանքի հետագա աշխուժացման, նրա գաղափարական մակարդակի բարձրացման տարիներ: Մարքս-լենինյան թեորիան ուսումնասիրողներին օգնելու նպատակով կուսկոմը կազմակերպել է ավելի քան 400 դասախոսություններ՝ կուսակցության պատմության և տեսության, քաղաքատնտեսության և կոնկրետ էկոնոմիկայի, միջազգային դրության, գրականության և արվեստի, կոմունիստական բարոյականության և այլ թեմաների շուրջ:

Կուսկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները լուրջ ուշադրություն են դարձնում պրոպագանդիստների և ագիտատորների ընտրությանը, այդ գործին ներգրավելով առաջին հերթին տեսականորեն պատրաստված կոմունիստներին, ղեկավար կադրերին (արտադրամասերի և բաժինների պետերին, նրանց տեղակալներին, գլխավոր մասնագետներին), որոնք ունեն հարուստ կենսափորձ, տեսական անհրաժեշտ պատրաստականություն: Շնորհիվ դրան պրոպագանդան և ագիտացիան գործարանում դարձել են ավելի նպատակասլաց և ներգործուն: Քաղուսուցման ցանցի մեր բոլոր պրոպագանդիստներն

ունեն բարձրագույն կրթություն, մեթոդական անհրաժեշտ պատրաստակա-
նություն, նրանք ամենուրեք պարապմունքները անց են կացնում գաղափարա-
կան բարձր մակարդակով: Գործարանում բեղմնավոր աշխատանք են տանում
224 ագիտատորներ: Նրանց կեսից ավելին նույնպես ղեկավար աշխատողներ
են՝ ավագ վարպետներ, վարպետներ և այլն:

Պրոպագանդայի և ագիտացիայի կազմակերպման գործում նշանակալից
դեր է խաղում կուսկոմին կից կազմակերպված քաղլուսկաբինետը, որն աշ-
խատում է հասարակական հիմունքներով: Կաբինետին կից ստեղծված է պրո-
պագանդիստական աշխատանքի մեթոդական խորհուրդ, որն իր նիստերում
պարբերաբար քննարկում է քաղուսուցման պարապմունքների արդյունքները,
ցուցումներ տալիս պրոպագանդիստներին՝ վերացնելու բացահայտված թե-
րությունները, կանխելու սխալները, բարելավելու պարապմունքների բովան-
դակությունը:

Կարելի է ավելի հանգամանորեն խոսել առանձին պրոպագանդիստների
լավ աշխատանքի մասին: Գործարանի լավագույն պրոպագանդիստներից է,
օրինակ, ՍՄԿԿ անդամ Սարգիս Հարությունյանը, որը վարում է կապիտալ շի-
նարարության բաժնի պետի տեղակալի պաշտոնը: Ընկ. Ս. Հարությունյանը
շուրջ 25 տարի է, ինչ անխոնջ կերպով պրոպագանդում է մարքս-լենինյան
տեսությունը: Նա սրտանց սիրում է այդ աշխատանքը և այն համարում է կու-
սակցական պատասխանատու հանձնարարություն յուրաքանչյուր կոմունիս-
տի համար: Պետք է լսել և տեսնել, թե պրոպագանդիստ Ս. Հարությունյանն
ինչպես է անցկացնում խոշոր էլեկտրական մեքենաների արտադրամասի
մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պարապմունքները: Նա գրավիչ
կերպով պատմում է թեմայի բովանդակությունը, ունկնդիրների ուշադրու-
թյունը սրում հանգուցային հարցերի վրա, տեսական դրույթները կապում կո-
մունիստական շինարարության պրակտիկայի և առաջին հերթին գործարանի
առջև կանգնած խնդիրների հետ, վերլուծություններ կատարում, հետևու-
թյուններ անում... Այս ամենն ապահովում են պարապմունքների աշխույժ ըն-
թացքը, հետաքրքրություն բորբոքում յուրաքանչյուր ունկնդրի մոտ:

Ասում են, որ պրոպագանդիստը միաժամանակ ուսուցիչ է, իսկ ուսուցչի
համար մեծ երջանկություն է գիտելիքների նկատմամբ իր սաների ունեցած
հարաճուն պահանջմունքների բավարարումը: Սարգիս Սանդրովիչը հենց այն
պրոպագանդիստներից է, որը իրավամբ վայելում է իր ունկնդիրների ջերմ
սերն ու հարգանքը: Պատահական չէ, որ խոշոր էլեկտրամեքենաների արտա-
դրամասի կոմունիստներն ու աշխատողները ամեն ուսումնական տարվա
նախօրյակին խնդրում են կուսկոմին չփոխել իրենց պրոպագանդիստին:
Ուշագրավ է նաև այն, որ ընկ. Ս. Հարությունյանը պրոպագանդիստական
բեղմնավոր գործունեության համար բազմիցս արժանացել է պարգևների և
հասարակական մեծարման:

Աշխատավորների քաղաքական-գաղափարական դաստիարակման գոր-
ծում կուսկոմին ու կուսկազմակերպություններին մեծ օգնություն է ցույց
տալիս գործարանի դասախոսական խմբի ղեկավար Ալբերտ Մելիք-Սահակ-
յանը, որը կոլեկտիվի կողմից հարգված կոմունիստներից է, վարում է ար-
տադրական-դիսպետչերական բաժնի պետի տեղակալի պաշտոնը: Ընկ.
Ա. Մելիք-Սահակյանը անձնական կյանքում և աշխատանքում դրսևորում է



իրեն որպես ազնիվ կոմունիստ և հենց դրա համար էլ նրա խոսքը ազդեցիկ
է և հեղինակավոր:

Ս. Հարությունյանի և Ա. Մելիք-Սահակյանի պես ակտիվ պրոպագան-
դիստական աշխատանք են տանում նաև կոմունիստներ Ս. Թեփիլիկյանը
(գլխավոր կոնստրուկտոր), Մ. Մարգարյանը (գլխավոր տեխնոլոգի տեղա-
կալ), Ս. Գրիգորյանը (աշխատանքի և աշխատավարձի բաժնի պետ), Գ. Ղու-
կասյանը (տեխնիկական վերահսկողության բաժնի պետ) և ուրիշներ:

Ինչպես ամեն գործում, պրոպագանդիստական աշխատանքում ևս կուս-
կոմը պատշաճ ուշադրություն է դարձնում դրական փորձի ընդհանրացմանը,
լավագույն տրադիցիաների բազմապատկմանը: Մենք պրոպագանդիստական
աշխատանքի վետերանների օրինակով դաստիարակում ենք նրանց փոխա-
րինողների՝ խոստումնալից երիտասարդ պրոպագանդիստների մի ամբողջ ջո-
կատ: Դրանցից են, օրինակ, Հ. Սխտորյանը, Հ. Դուլյանը, Գ. Նազարյանը և
ուրիշներ, որոնք, հաջողությամբ ավարտելով կուսկոմին կից պրոպագանդիստ-
ների դպրոցը, առաջ են քաշվել պրոպագանդիստական ակտիվ աշխատանքի:

Գործարանի կոլեկտիվի անդամների քաղաքական-գաղափարական դաս-
տիարակության համար կարևոր նշանակություն ունի կադրերի ճիշտ ընտրու-
թյունն ու առաջքաշումը: Այդ գործում թույլ տրված անգամ աննշան սխալը
բացասաբար է անդրադառնում գործերի վրա: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXIII հա-
մագումարը խնդիր է դրել կադրերի ընտրության և դաստիարակության գործը
հասցնել համակուսակցական և համապետական մակարդակի: Կենսագործե-
լով համագումարի այդ ցուցումը, մեր կուսկազմակերպությունները ավելի
մոտիկից են զբաղվում կադրերի հետ տարվող աշխատանքով:

Կադրերի ընտրության և առաջքաշման հարցերը լուծելիս զգոնությունը և
համբերատարությունը պետք է լրացնել համարձակությամբ, այլապես մո-
ռացության կմատնվի երիտասարդ կադրերի առաջքաշումը և դրանից կտու-
ժեն ոչ միայն անհատ մարդիկ, որոնք արժանի են առաջքաշման, այլև պե-
տության շահերը: Առանց նոր, երիտասարդ տաղանդների աճեցման և առաջ-
քաշման, գործն առաջ չի գնա:

Բարելավելով երիտասարդ մասնագետների հետ տարվող աշխատանքը,
գործարանի կուսկազմակերպությունը վերջին տարիներին համարձակորեն
առաջ է քաշել արտադրության հմուտ կազմակերպիչների մի խումբ: Այդ
շնորհալի ու խոստումնալից կադրերից են, օրինակ, արտադրամասի պետեր՝
կոմունիստներ Վ. Ստեփանյանը, Ս. Արշակյանը, Ջ. Պողոսյանը, Ս. Վարդան-
յանը, Գ. Աղաջանյանը, Ս. Նազարյանը, Ն. Սարոկինը, Ս. Մարտիրոսյանը,
պլանային բաժնի պետ Ն. Մովսիսյանը, գլխավոր էներգետիկի տեղակալ
Վ. Գրիգորյանը, գլխավոր մետալուրգի տեղակալ Մ. Ջափուրյանը և ուրիշներ:
Դրանք մեր գործարանի այսպես ասած միջին օղակի կադրերից են: Ավելի
բազմամարդ են ստորին օղակի արտադրական կադրերը: Գործարանում այժմ
աշխատում են մոտ 400 վարպետներ, վարպետի օգնականներ և արտադրու-
թյան այլ կրտսեր հրամանատարներ: Նրանք ևս գտնվում են կուսկոմի և, ա-
ռանձնապես, արտադրամասային կուսկազմակերպությունների ամենօրյա ու-
շադրության կենտրոնում: Կուսկոմը ժամանակին հրավիրել է վարպետների
համագործարանային հավաք՝ նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան
(1965) պլենումի որոշման քննարկմանը: Հավաքը բազմամարդ էր և անցավ
գործարար մթնոլորտում:

*Ընդառաջելով հավաքի մասնակիցների ցանկություններին, կուսկոմը, այնուհետև, կազմակերպել է տնտեսական գիտելիքների ուսումնասիրման մի շարք խմբակներ, անց է կացրել դասախոսությունների մի ամբողջ ցիկլ: Տնտեսական գիտելիքների ուսումնասիրման խմբակներում, ուր հիմնականում ընդգրկված են ղեկավար աշխատողներ և արտադրության առաջավորներ, ուսումնասիրվում են կուսակցության Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի և ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, տնտեսագիտական բազմաթիվ հրատապ հարցեր: Այդպիսով, մենք գործարանի աշխատողներին նախապատրաստում ենք տնտեսական ռեֆորմի անցնելուն, որն, ըստ երևույթին, այնքան էլ հեռու չէ:*

*Գործարանի առջև կանգնած նոր խնդիրների լուծման գործում բացառիկ նշանակություն ունի կոմունիստների ավանգարդային դերի բարձրացումը, արտադրամասերում քաղաքական-մասսայական աշխատանքի ուժեղացումը, յուրաքանչյուր աշխատողի վրա գաղափարական ազդեցության ապահովումը:*

*Կուսկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները զգալի աշխատանք են կատարել արտադրության մեջ կոմունիստների ուժերի տեղաբաշխման ուղղությամբ: Այժմ կուսանդամ-թեկնածուների ճնշող մեծամասնությունը զբաղված է նյութական արժեքների ստեղծման ոլորտում: Կոմունիստները ամենուրեք արտադրության առաջավորներ են, ընթանում են տեխնիկական առաջադիմության և արտադրության կատարելագործման համար պայքարողների առջևից: Նրանցից են, օրինակ, փականագործներ Վ. Միքայելյանը, Հ. Հակոբյանը, ֆրեզերող Ս. Իգիթյանը, ջերմամշակող Ի. Բերյոզկան, դարբին Վ. Աղաջանյանը, խառատ Լ. Սարգսյանը և շատ ուրիշներ:*

*...Որակյալ փականագործ է կոմունիստ Ալբերտ Գասպարյանը: Նրա ղեկավարությամբ № 29 արտադրամասի փականագործների բրիգադն ամեն ամիս, ժամկետից շուտ և բարձր որակով կատարում է արտադրական առաջադրանքները: Ա. Գասպարյանը ոչ միայն հմուտ բրիգադիր է, այլև ակտիվ հասարակական աշխատող: Նա բազմիցս ընտրվել է և այժմ էլ հանդիսանում է գլխավոր մեխանիկի բաժնի սկզբնական կուսկազմակերպության քարտուղարը, կուսկոմի և ՀԿԿ Լենինյան շրջկոմի անդամ է, եղել է ՍՄԿԿ XXIII համագումարի պատգամավոր: Ալբերտ Գասպարյանի պես հասուն կուսակցական ակտիվիստներից են անվանի փականագործ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ռոլանդ Մովսիսյանը, որին վերջերս շնորհվեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչումը, աշխատավորների դեպուտատների Երևանի քաղաքային սովետի դեպուտատ, կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար Լենդրուշ Ղամբարյանը, փականագործ Միրզա Մխիթարյանը և շատ ուրիշներ:*

*Կուսակցական, և ոչ միայն կուսակցական ակտիվիստների այդ ջոկատը հանդիսանում է գործարանի կուսկոմի և ամբողջ կուսկազմակերպության նեցուկը, որի օգնությամբ անց են կացնում քաղաքական-կազմակերպական գրեթե բոլոր միջոցառումները, իրականացնում մասսաների քաղաքական-գաղափարական դաստիարակությունը, ապահովում պետական պլանների կատարումը:*

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կուսկոմի քարտուղար

# ՄՐՑՈՒԹՅԱՆ ՈՒ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԴՐՈՇՈՎ

Մեր կոլտնտեսության կուսկազմակերպությունն անցած հինգ ամսում ըզգալի աշխատանք է կատարել XXIII կուսհամագումարի նյութերի պրոպագանդման, նրա որոշումների պրակտիկ կենսագործման ուղղությամբ:

Դեռևս համագումարի նախօրյակին կուսբյուրոյի ընդլայնված նիստում և ապա կոմունիստների ընդհանուր ժողովում մենք քննարկեցինք գարնանդաշտային աշխատանքներին նախապատրաստվելու, դրանք կազմակերպված ու բարձր մակարդակով անցկացնելու հարցը: Այդ հնարավորություն տըվեց կոմունիստների և բոլոր կոլտնտեսականների ուշադրությունը բևեռել հանրային արտադրության ռեզերվների հայտաբերման և օգտագործման վրա:

Քննարկելով գարնան գյուղատնտեսական աշխատանքներին նախապատրաստվելու հարցը, կուսկազմակերպությունը մեքենայական պարկը կարգի բերելու վերաբերյալ որոշում ընդունեց: Կոլտնտեսության վարչությունը ապահովեց որոշման կատարումը: Ձեռք բերվեցին անհրաժեշտ պահեստամասեր, նորոգվեցին մեքենաները, գնվեցին նոր մեքենաներ ու գործիքներ:

Կուսկազմակերպությունը գարնանդաշտային աշխատանքների նախօրյակին զբաղվեց նաև բանուժի տեղաբաշխման վիճակի բարելավման հարցով: Կարիք եղավ հանրային արտադրության որոշ տեղամասեր ամրապնդել կոմունիստներով և անկուսակցական ձեռներեց աշխատողներով: Ներկայումս կոլտնտեսության արտադրական բրիգադներում և ֆերմայում աշխատում են 54 կոմունիստ, որոնք ջանասեր աշխատանքի անձնական օրինակով համակում են ուրիշներին:

Հանրային արտադրության բոլոր ճյուղերում զգացվում է կոմունիստների առաջատար և կազմակերպող դերը: Մենք կարողացանք արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի բարձրացման և ագիտացիոն մասսայական աշխատանքի ծավալման միջոցով ապահովել բոլոր կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների ակտիվ մասնակցությունն այգեբացին, այգեէտին և այգեփորին, կազմակերպված սկսել և բարձր որակով կատարել գարնան-դաշտային բոլոր աշխատանքները: Կոլտնտեսականների հայրենանվեր աշխատանքն ապարդյուն չանցավ: Արտելի դաշտերից և այգիներից հավաքեցինք առատ բերք:

Խաղողի առատ բերքի հմուտ վարպետ է կոմունիստ Ս. Ալթիկուլաչյանը: Անցյալ տարի նրա օղակը 20 հեկտար այգետարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 150 ցենտներ խաղող և նվաճել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ցուցահանդեսին մասնակցելու իրավունք:

Օղակում իրենց եռանդուն աշխատանքով աչքի են ընկնում կոմունիստներ Ռ. Մկրտչյանը, Հ. Մկրտչյանը և ուրիշներ: Հանրային արտադրությանը ակտիվորեն մասնակցում, նյութական բարիքներ են ստեղծում նաև ընկ. Ալթիկուլաջյանի ընտանիքի անդամները: Դա ևս մեծ պատիվ է բերում կոմունիստ օղակավարին, բարձրացնում նրա հեղինակությունը:

Խաղողագործության կարգացման գործում արժանի ներդրում ունի № 5 բրիգադան, որին ղեկավարում է կոմունիստ Ս. Իսաջանյանը: Վերջինս իրեն դրսևորել է որպես արտադրության հըմուտ կազմակերպիչ, կարողանում է ժամանակին նկատել յուրաքանչյուր կոլտնտեսականի նախաձեռնությունը, ոգեվորել մարդկանց: Կոմունիստներից այդ բրիգադայում են աշխատում Վ. Ասատըրյանը և Վ. Մարտիրոսյանը, նրանք լավ այգեգործներ են, սիստեմատիկաբար կատարում ու գերակատարում են արտադրական նորմաները, աշխատում են բարձրորակ:

Այգեգործության մասին խոսելիս, չի կարելի շրջանցել № 3 բրիգադան (բրիգադավար Թաշչյան): Անցյալ տարի այս բրիգադայի այգեգործները յուրաքանչյուր հեկտարից ստացել են 147 ցենտներ խաղող: Բրիգադայում աճել ու վարպետացել են այնպիսի խաղողագործներ, ինչպիսիք են՝ Փ. Առուշանյանը, Ա. Սարգսյանը և Ս. Պետրոսյանը, որոնք այգիները մշակում են բարձր որակով և իրենց բազմամյա փորձը հաղորդում երիտասարդ այգեգործներին:

№ 3 բրիգադայի արտադրական հաջողությունները մեծապես պայմանավորված են նրա կուսկազմակերպության (քարտուղար Վ. Գրիգորյան) լավ աշխատանքով: Կուսկազմակերպությունն ապահովում է կոմունիստների ավանգարդային դերը արտադրության մեջ, նրանց ակտիվ մասնակցությունը հասարակական գործին:

ՍՄԿԿ XXII համագումարի անունը կըրող մեր կոլտնտեսությունը քաղաքամերձ տնտեսություն է, և նրա հիմնական խնդիրն է Երևանի բնակչությանը մատակարարել թարմ կաթ, միս, ձու, բանջարեղեն և մրգեղեն: Կուսբյուրոն և կոլվարչությունն ամեն կերպ ձգտում են ընդլայնել կաթի արտադրությունը: Դրա համար ոչ միայն ավելացնում ենք կովերի գլխաքանակը, այլև բարելավում ստհիմային կազմը, կերակրումն ու խընամքը:

Կուսակցական կազմակերպությունը կգալի գործ է կատարել անվանի կթվորուհի, Սոցիալիստական աշխատանքի հերոս Աշխեն Ավետիսյանի առաջավոր փորձի ուսումնասիրման, ընդհանրացման և տարածման ուղղությամբ: Նրա օրինակով աճել ու դաստիարակվել են մի շարք կթվորուհիներ. նրանցից են՝ Արաքսյա Գրիգորյանը և Հասմիկ Ջանոյանը. նրանք, նույնպես բարձր ցուցանիշների են հասել: Եթե 1965 թվականին Ա. Ավետիսյանը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 4.326 *կգ* կաթ, ապա Ա. Գրիգորյանը ստացել է 3.947 *կգ* և Հ. Ջանոյանը՝ 3.972 *կգ*:

Կաթի արտադրության և պետությանը կաթ հանձնելու առաջադրանքները ավելի հաջող են կատարվում ընթացիկ տարում: Անցած 7 ամսում կոլտնտեսությունը 2090 ցենտների փոխարեն պետությանը վաճառել է 9383 ցենտներ: Կաթի արտադրության համար պայքարողների առջևից են քայլում նույն երեք կթվորուհիները: Հիշյալ ամիսներին Ա. Ավետիսյանն իր խնամքի տակ գտնվող յուրաքանչյուր կովից ստացել է 2.566 *կգ* կաթ, Արաքսյա Գրիգորյանը՝ 2.399 և Հասմիկ Ջանոյանը՝ 2.448 *կգ*:

Հայրենիքը բարձր գնահատեց կաթի արտադրության նոր վարպետների անձնվեր աշխատանքը: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանա-



գրով վերջերս կթվորուհի Ա. Գրիգորյանը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, իսկ Հ. Ջանոյանը՝ Աշխատանքային գերազանցության համար մեդալով:

Յոթնամյակի վերջին տարում կոլտընտեսությունը յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 3.779 *կգ* կաթ: Գործերի ընթացքը ցույց է տալիս, որ մենք նոր հնգամյակի առաջին տարում կգալիորեն կգերազանցենք այդ ցուցանիշը:

Ինչպես արտադրության ամեն մի տեղամասում, կաթնապրանքային ֆերմայում ևս գործերի հաջողությունը պայմանավորված է սկզբնական կուսկազմակերպության (քարտուղար Հ. Վարդանյան) լավ աշխատանքով: Այն մոտիկից է կբաղվում անասնապահների աշխատանքի և հանգստի կազմակերպման հարցերով, նրանց շրջանում դաստիարակչական աշխատանք է ծավալում, վերահսկում է կաթնամթերքների հաշիվհաշվառքի և պահպանման գործը: Ֆերմայում աշխատող բոլոր 9 կոմունիստներն արտադրության առաջավորներ են, բարեխղճորեն են կատարում իրենց կուսակցական պարտականությունները:

Կոլտնտեսությունն այս տարի կգալիորեն գերակատարեց բոժոժի հանձնման պլանը, հաջողությամբ է կատարում նաև մսի և ձվի վաճառքի առաջադրանքները: Հավաբուծական ֆերման, որն ստեղծված է այս տարվանից, այժմ ունի 2100 ածան հավ: Ամեն մի հավից տարեկան պետք է ստանանք 120 ձու, անցած յոթ ամսում յուրաքանչյուր հավից ստացել ենք 73 ձու: Թվում է կգերակատարվի նաև ձվի արտադրութան տարեկան պլանը:

Կուսկազմակերպությունը ձգտում է ամեն կերպ բարձրացնել կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը: 1958 թվականից կոլտնտեսությունն իր սեփական միջոցներով, առանց պետական վարկի, անցել է ամենամսյա դրամական վարձատրության:

Իններորդ տարին է, ինչ ընդհանուր ժողովի որոշմամբ տվյալ ամսում վաստակած յուրաքանչյուր նորմայի (աշխօրի) դիմաց կոլտնտեսականին վճարվում է առնվազն 2 ռուբլի 50 կոպեկ: Բոլոր կոլտնտեսականները օգտագործում են արձակուրդներն ու հանգստյան օրերը:

Այժմ, երբ կուսակցության և կառավարության որոշմամբ ամբողջ երկրում մտցված է աշխատանքի երաշխավորված վարձատրության նոր սիստեմ, երբ հանրային արտադրությանը մասնակցող բոլոր կոլտնտեսականներն իրենց աշխատանքի համար վարձատրվում են մոտավորապես սովխոզի բանվորի մակարդակով, մեր կոլտնտեսությունը ևս ղեկավարվում է այդ որոշմամբ:

Տնտեսական հաջողությունները միշտ և ամենուրեք կախված են կուսակցական-դաստիարակչական աշխատանքի մակարդակից: Եթե արտադրական կոլեկտիվը հստակ չի պատկերացնում իր խնդիրները, եթե մարդիկ քաղաքականապես չեն աճում, չգիտեն իրենց անելիքները, աշխատանքի են դուրս գալիս առանց ոգևորության, արդյունավետ աշխատանք սպասել չի կարելի և պլանների հաջող կատարման մասին մտածելն ավելորդ է: Մեր կուսկազմակերպությունը հաշվի է առնում այդ ճշմարտությունը և ամեն կերպ ձգտում է ուժեղացնել դաստիարակչական աշխատանքը կոմունիստների ու բոլոր կոլտնտեսականների շրջանում, ճիշտ զուգակցել կուսակցական-քաղաքական գործունեությունը տնտեսականի հետ:

Կոլտնտեսության բրիգադաներում, անասնապահական ֆերմայում և արտադրական այլ տեղամասերում կցված են ագիտատորներ, անց են կացվում քաղաքական թեմաներով զրույցներ, կանոնավոր լույս են ընծայվում թերթիկներ: Քաղաքական-մասսայական ամբողջ գործունեությունը նվիրված է ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումների և 8-րդ հնգամյակի խնդիրների պրո-

պագանդմանը, կոլտնտեսության ու նրա յուրաքանչյուր արտադրամասի աշխատանքի բարելավմանը։

Եվ այդ ապարդյուն չի անցնում։ Կոլտնտեսությունում այժմ ավելի է ծավալվում սոցիալիստական մրցությունը, որն ընթանում է նոր հնգամյակի առաջադրած խնդիրների հաջող կատարման նշանաբանով։ Բրիգադան մրցում է բրիգադայի, օղակը՝ օղակի, կոլտնտեսականը՝ կոլտնտեսականի հետ։

Անցյալ տարվանից կոլտնտեսությունը մրցության մեջ է Վրացական ՍՍՀ Ծիկելի-Ծղաարոյի շրջանի Ջափարիձեի անվան կոլտնտեսության հետ։ Երկու կոլտնտեսության աշխատավորներն էլ պայքարում են 1965 թվականին ձեռք բերած իրենց հիմնական արտադրական ցուցանիշները գերազանցելու համար։

Անցյալ տարվա հունիսին և այս տարվա հուլիսին կոլտնտեսության ներկայացուցիչները այցելել են Ջափարիձեի անվան վրացական կոլտնտեսություն, նրանց ներկայացուցիչները եկել են մեզ մոտ։ Սոցիալիստական մրցմամբ ըստանձնած պարտավորությունների կատարման ստուգումը շատ բան է տվել, երկու կոլտնտեսություններին։ Նրանք մեզ մոտ ուսանելի են համարում այգեգործության և անասնապահության վարումը, իսկ մենք նրանց մոտ՝ աշխատանքի մեքենայացումը, գյուղատնտեսական մեքենաների օգտագործումը և այլն։

Մրցման մեջ մտնելով, մեր կոլտնտեսականներն իրենց առջև խնդիր են դըրել՝ նոր հնգամյակի առաջին տարում հանրային այգիների յուրաքանչյուր հեկտարից ստանալ 91 ցենտներ խաղող, յուրաքանչյուր ֆուրաժային կովից՝ 3785 *կգ* կաթ, յուրաքանչյուր 100 կովից ըստանալ և պահպանել 95 հորթ։

Երկու կոլտնտեսությունների սոցիալիստական մրցությունում փայլուն դըրսևորվում է հայ և վրաց ժողովուրդների դարավոր բարեկամությունը, որը նոր իմաստ և բովանդակություն է ստացել սովետական իշխանության տարիներին։ Եվ այդ հանգամանքը մենք ամեն կերպ ընդգծում ենք քաղաքական-գաղափարական աշխատանքում։

Կոլտնտեսության կուսկազմակերպությունը այժմ կոմունիստների և բոլոր կոլտնտեսականների ուժերը մոբիլիզացնում և նպատակամղում է ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Տարակույս չկա, որ մեր կոլտնտեսականների այդ պայքարը հաջողությամբ կպսակվի։

*ՓԱՌԱՆՁԵՄ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*
*Երևանի Շահումյանի շրջանի ՍՄԿԿ XXII համագումարի անվան կոլտնտեսության կուսբյուրոյի քարտուղար.*





## ՇՈԹԱ 800 ՌՈՒՍԹԱՎԵԼԻ

ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ, ՀՈՒՄԱՆԻԶՄԻ ՀԱՆՃԱՐԵՂ ԵՐԳԻՉԸ

(Շոթա Ռուսթավելու ծննդյան 800-ամյակի առթիվ)

ՎՐԱՍՏԱՆԸ, Սովետական Միության բոլոր ժողովուրդները, առաջադեմ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ նշում են վրաց հանճարեղ բանաստեղծ Շոթա Ռուսթավելու ծննդյան 800-ամյակը: Կուլտուրական այս տոնը լայն արձագանք է գտել երկրագնդի ամենատարբեր մասերում: Դարեր շարունակ վրաց ժողովրդի հոգևոր աշխարհի անբաժան ու պայծառ անունը ներկայացնող Ռուսթավելին այսօր դարձել է քաղաքակիրթ ժողովուրդների հմայքի առարկան:

Երբ դաժան անցյալում հոգևորականությունը, ազնվականության բարձր խավերը, հայրենի մշակույթի շահերին դավաճանած երկրի կենտրոնախույս տարրերը հալածել են Ռուսթավելուն և հրո ճարակ դարձրել իրենց կողմից «անաստված» հռչակված «Վագրենավորը», մեծ Հոկտեմբերի ու սոցիալիզմի դարաշրջանում բանաստեղծը և նրա գործը գտան արժանի գնահատականը և ամենախոր ճանաչումը: Այժմ ավելի, քան երբևէ Ռուսթավելին ուսումնասիրվում է և մեկնաբանվում իր բուն էության մեջ, բազմակողմանիորեն, բոլոր հատկություններով: Լինելով խորապես ազգային, բանաստեղծը միաժամանակ պատկանում է համաշխարհային գրականությանը: Նրա անունը իրավացիորեն դասվում է Հոմերոսի, Ֆիրդուսու, Դանթեյի անունների կողքին:

Անընդգրկելի է Ռուսթավելու վրձնած կտավը: Օվկիան է «Վագրենավորը» —իր ժամանակի «աշխարհների», դեպքերի ու դեմքերի, կյանքի ու մտքի մի կատարյալ հանրագիտարան: Հերոսականության մարմնացում է պոեմը: Հզոր է Ռուսթավելու միտքը, հզոր, խոր և իմաստուն: Եվ որքան հեռու հորիզոններ է կտրել այդ միտքը, այնքան լայն է եղել նրա ընդգրկումը: ««Վագրենավորի» հիանալի ճարտարվեստ կերտվածքը» (Ն. Մառ), ինքնին արդեն հանճարի ծնունդ էր ու ծառայել է ամենաառաջավոր գաղափարների և իդեալների կրքոտ քարոզին:

Ժողովուրդների մերձեցման, հումանիզմի, բարձրագույն տեսակի սիրո, եղբայրության քարոզն էր դա: «Վագրենավորի» գլխավոր գործող անձինք օժտված են ամենաառաքինի, ամենաազնիվ հատկություններով: Նրանք մի-մի հրաշակերտ են և իբրև մարդ հոգևոր բարձր կազմակերպվածության ծնունդ:

***

ՌՈՒՍԹԱՎԵԼՈՒ կյանքը և ստեղծագործությունը կապված են XII դարի հետ: Նրա մեջ խոսում է և՛ XIII դարի սկիզբը: Այս խոշոր ժամանակահատվածում, դեռ Դավիթ Շինարարի օրերից, ապա և Թամար թագուհու տիրապետության տարիներին, Վրաստանն ապրեց նշանավոր պատմական իրադարձություններ: Ֆեոդալիզմի զարգացման, նրա հաստատման ընդգծված փուլն էր թևակոխել երկիրը: Վրացական պետությունը, լարելով իր ուժերը, ետ էր մղում արտաքին թշնամու արշավանքները: Երկիրը ստացել էր խաղաղ գոյության պայմաններ: Սակայն կարևոր նշանակություն ունեին հենց երկրի ներսում կիրառված ու կիրառվող որոշ բարեփոխությունները: Գահի շուրջը համախմբվել էին հասարակության իշխող դասակարգերի կենտրոնաձիգ ուժերը: Սրանք ուժեղ պետություն ունենալու կողմնակիցներ էին: Եվ այդ պետությունն արդեն իսկ փաստ էր: Ճնշվում էին հասարակության ներսում եղած կենտրոնախույս տարրերը: Զարգացան քաղաքները, առևտուրը, առևտուրը նաև դրսի աշխարհի հետ, առաջադիմեցին արհեստները: Տարածվում էր կյանքի ու մտավոր գործունեության աշխարհականացման սկզբունքը: Այդ սկզբունքը և քաղաքականությունը բարերար ազդեցություն ունեցան կուլտուրայի, գրականության, լուսավորության, լեզվի հետագա առաջադիմության վրա: Պայքարը փոխադրված էր կրոնականության թագավորությունը սանձելու, այն թուլացնելու բնագավառը: Առավել ուժեղացել էր աշխարհիկ–առաջադիմական և կրոնական–հետադիմական բանակների հակամարտությունը:

Հենց այս հակամարտության բովում ընդգծվեցին արվեստների ու գրավոր գեղարվեստական խոսքի տեսակարար կշիռը և նշանակությունը հասարակության ու պետության կյանքում: Ճարտարապետական հոյակապ կոթողների հետ առաջ եկավ գեղարվեստական մտքի ծնունդ՝ բազմաժանր գրականությունը: Տարեգրությունը, արձակը, պոեզիան, էպիկական ստեղծագործությունը, փիլիսոփայական մտքի խոշոր օջախների–ակադեմիաների առաջացումը առավել ցայտուն դարձրին վերածնունդը վրաց հոգևոր կուլտուրայի, վրաց հասարակության կյանքում:

Շոթա Ռուսթավելին կանգնեց այդ վերածննդի գլուխը, հանդիսացավ նրա ամենաերևելի արտահայտությունը Վրաստանում: Աշխարհիկ է նա ողջ էությամբ: Կրոնականության ու միստիկայի թշնամի. կյանքի, մարդու գովերգու: Ռուսթավելին ջերմորեն պաշտպանեց ու մեծարեց պետության, ժողովրդի, անհատի առաջադիմության գաղափարը: Նա տեսավ երևույթների ներքին կապը, կյանքն իր ամբողջականության մեջ: Ամբողջականության այդ զգացումը բանաստեղծին թույլ տվեց դուրս գալ հայրենի երկրի սահմաններից, տեսնել ու պատկերել բազմաթիվ ժողովուրդների ու նրանց քաջարի զավակների սխրագործությունները: Հայրենասերը հալածվեց թշնամիներից: Ու երբ «Վագրենավորը» նվիրված է Թամար թագուհուն, վրաց բարձր ազնվականությունն ու պալատը վտարեցին բանաստեղծին իր հայրենիքից: Սակայն Ռուսթավելին խորապես ըմբռնել էր իր պոեմի ու իր գրչի ճշմարիտ նպատակադրումը և այն նվիրեց երգելու մարդուն, նրա ներաշխարհը: Հիշեցնեմ «Վագրենավորի» նախերգանքից մի քանի տող.



*Արդ պետք է ինձ երգիս համար սիրտ և լեզու, արվեստ ճարտար.*
*Թող ուժ տա ինձ, նա՛ թող օգնե, իր ձեռքին է միտք ու հանճար.*
*Այնժամ կօգնենք Տարիելին: Հիշելու ենք երեք պայծառ*
*Հակա-հերոս միմյանց եղբայր, որպես գերի իրար խոնարհ...*

*Ում աչքերը չեն ցամաքում լալով ցավից դառն ու անճար,*
*Ե՛կեք, ում բախտ է ընկել Տարիելի բախտը դժվար.*
*Կընստեմ հեզ Ռուսթավելիս, կերգեմ խոցված եւ չարաչար,*
*Եվ ինչ որ ցարդ կրույց էր պարզ, պիտի դառնա մարգարտի շար:*

(Թարգմ. Վ. Տերյանի)

***

ՀԻՐԱՎԻ, մեծարժեք է Ռուսթավելու փիլիսոփայությունը արվեստի մասին: Նա հմտորեն ներդաշնակել է իր մեջ տեսաբանին և ստեղծագործողին: Ռուսթավելին ամենից առաջ գիտակցել, տեսական բարձր աստիճանի է հասցրել պոեզիայի, գրականության, առհասարակ արվեստի փիլիսոփայական սկզբունքները: Պոեմի նախերգանքի երկրորդ մասում բանաստեղծը անհրաժեշտ է համարել շարադրել այդ սկզբունքները, որոնք այսօր էլ հնչում են իրենց թարմությամբ ու խիզախությամբ:

«Վագրենավորի» հեղինակի համար արվեստի բնագավառը բարձր իմաստությունն է: Ռուսթավելին պահանջում է իդեական խոր ընդհանրացումներ և իմաստություններ անհատի, ընտանիքի, երկրի, ժողովրդի, երկրագնդի, բնության, նաև տիեզերքի վերաբերյալ: Նրա կարծիքով արվեստի բովանդակությունը պետք է լինի փիլիսոփայական: Ասողին էլ լսող է պետք: Ու բանաստեղծն էլ հսկայական դեր է հատկացնում ունկնդիր և ընթերցող հասարակությանը: Կենդանի գեղարվեստական գործը լսողի համար շատ կարևոր է,— պնդում է բանաստեղծը: Երկար միտքն էլ պետք է կարճ ասել: Հենց այսպիսին պետք է լինի պոեզիան.

*Ինչպես որ ձին կրճանաչվի երկար ճամբին արագ վազքից*
*Եվ գունդ նետողըն՝ ասպարիզում բակկի շարժից, շիտակ զարկից.*
*Գուսաններին կքնորոշի մեծ չափածոն իր հյուսվածքում,*
*Հանգի, չափի խաղն ու թերին, թռիչքն ու ճիգ նրանց խոսքում:*

*Ի՞նչ զուսան է, թե չէ՛ տիրում իր արվեստին, լեզվին խապառ,*
*Ում չափածոն հանկարծ կաղաց, պակսեց տողին բնորոշ բառ,*
*Նրա խոսքերն աղբյուրի պես պիտի հոսան ջինջ, անսպառ,*
*Շարժե չոգանն՝ իր անվրեպ ասպարիզում դյուցազնաբար:*

(Թարգմ. Գ. Աստուրի)

Ներշնչումից, ներդաշնակությունից, հանգից ու գեղեցիկ խոսքից կաղ բանաստեղծը, Ռուսթավելու ասելով, նման է համառ ջորուն: Ըստ նրա, իսկական բանաստեղծը նա է, ով ստեղծագործում է մեծ գործեր: «Վագրենավորի» հեղինակի էսթետիկական օրենսդրությամբ պահանջվում է երկին հաղորդել ոճական կուռ միասնություն, իսկ նյութը վերարտադրել օրգանապես, անկեղծորեն, ոգևորված: Հերոսապատումը, էպիկական լայն կտավներ ունեցող ստեղծագործությունը պետք է լինեն «բարձր իմաստության թագավորության բնագավառը»:

***

Վ

ԱԳՐԵՆԱՎՈՐԸ» պոեմի սիրտն է կազմում Տարիելի և Ավթանդիլի կյանքի պատմությունը: Սրանց միանում է Ֆրիդոնը: Ռուսթավելին սրանց է երգում՝ երեք հսկա հերոսներին: Տարիելը դյուցազն է: Նրա մասին Ավթանդիլն ասում է՝ «հերոս և հզոր առյուծ...»: Ինքը՝ Տարիելը բնութագրում է իրեն այսպես. «Ավելի գեղեցիկ էի, քան արևը, ինչպես օրն ավելի պայծառ, քան գիշերը...»: Աննման գեղեցկություն, անզուգական ֆիզիկական ուժ և արտաքին անհաղթահարելի կորով: Բայց հերոսի արտաքինի նկարագրությանը միանում է նրա ներքին աշխարհի նկարագրությունը, ու Տարիելը դառնում է մարդու իդեալը:

Ո՞րտեղ գտնել պոեմի սյուժեով ու կառուցվածքով դրսևորվող նրա գաղափարական մեծությունը: Այս հարցին գիտական գրականության մեջ պատասխան է տվել Ն. Մառը:

Նա գրում է. «Հերոսների եղբայրացումը կամ եղբայրների երդվյալ միությունը այն հիմքն է, որի վրա հաստատված է վրացական պոեմ «Վագրենավորի» ամբողջ կառուցվածքը:

Պոեմն ունի սիրո մի քանի հանգույց, և անհայտ է, թե սիրավեպերից ո՞րին կարելի է հատկացնել գլխավոր տեղը—արդյո՞ք արաբական հերոս Ավթանդիլի սիրավեպին Թինաթինի հետ կամ հնդկական հերոս-թագավորազն Տարիելի և Նեստան-Դարեջանի պատմությո՞ւնը: Եվ առհասարակ եթե սիրո, կանացի սիրո պաշտամունքի մեջ տեսնել պոեմի հիմնական գաղափարը, Ֆրիդոն թագավորի գեղեցիկ աշխարհն ընկնում է իբրև մի պատահական դրվագ և բովանդակության միասնությունը խախտվում է: Դրա հետ միաժամանակ խարխլվում է պոեմի հիանալի ճարտարվեստ կերտվածքը: Բայց իսկական հանգույցն առաջ է գալիս Ավթանդիլի և Տարիելի առաջին հանդիպման դեպքում՝ եղբայրացմամբ, որ անքակտելի կապերով միացնում է բոլոր հերոսներին՝ Տարիելին, Ավթանդիլին և Ֆրիդոնին մի հոգևոր աշխարհի մեջ. Այստեղ է ամբողջ պոեմի բանալին...: Օբյեկտիվորեն պոեմը նվիրված է եղբայրության գաղափարին՝ ի ծառայություն ընդհանուր մարդկային իդեալների, առանց ազգի խտրության և գաղափարական այս բովանդակությունն էլ բնորոշում է «Վագրենավորի» ստեղծագործողին իբրև հասարակական մտածողի և բանաստեղծի» [1]:

Ինչպես ինքը՝ Ռուսթավելին, նրա հիմնական հերոսները օժտված են անմար հայրենասիրությամբ: «Վագրենավորի» գլխավոր դեմքերը ներշնչված են երկրի, պետականության, հայրենիքի գաղափարներով: Չափազանց բնորոշ է և՛ այն, որ Ռուսթավելու սիրելի դեմքերը ձգտում են մարդկային երջանկության: Պարտվում են հարամիները: Ռուսթավելին կերտել է պետական ամենալայն մտածողություն ունեցող, պետականության սկզբունքի ջերմեռանդ պաշտպան մարդկանց կերպարներ: Այս կերպարը բնութագրող անհատը մեծասիրտ է, առատաձեռն ու ամենակարող: Ձեf գտնի նրա մեջ վախ, մանր ու ստոր քինախնդրություն: Ընդհակառակը. նա անդավաճան է երկրին ու հայրենիքին, ունի բարոյական բոլոր վսեմ հատկությունները:

Հայրենիքի անկախության, նրա հերոսական պաշտպանության, չքնաղ երկրի հարստությունների պահպանության երգն է «Վագրենավորը»: Սրան են ձգտում նրա հերոսները, գաղափարական այս հիմքի վրա է բարձրանում եղբայրության համամարդկային իդեալը:

«Վագրենավորը» պոեմում առանձնահատուկ տեղ ունի սերը և սիրո փիլիսոփայությունը: Թե՛ բանաստեղծը, թե՛ հերոսները, նախ և առաջ Տարիելը և Ավթանդիլը, հսկայական նյութ են տալիս սերունդներին՝ ճանաչելու նրանց զգացմունքները, ապրելու նրանցով:

Աշխարհիկ մտածողության ռուսթավելիական սիստեմի մեջ սիրո խորհուրդը կազմում է նրա կարևոր մեկ մեծ մասը: Սերը մեծ ուժ է, սիրահարին էլ տրվում են բազում առաքինություններ: Սերը բռնության թշնամի է. նրա բուն խոլական է, անեղ. վեհ է սիրո մարդկային զգացումը. ստոր է լկտությունը: Սերը վերաբերմունք է դեպի հասարակությունը, դեպի բնությունը, հայրենիքը: Սիրող անհատը շռայլում է իր մաքրամաքուր զգացմունքն այնքան, որքան կարող է, որքան ընդունակ է թափանցելու իր հոգու խորքերը և հոգեկան այդ գանձերն ընծայաբերելու սիրող էակին: Մաքուր, կուսական, անարատ, անկեղծ է Ռուսթավելու նկարագրած սիրահարը: Սիրո մեջ մարդը մարդ է, նա հասնում է իր կոչման բարձրությանը. կեղծիքը, ստորությունը, կավատությունը, վախը տեղ չունեն այնտեղ, որտեղ կա իր կոչմանը հասած մարդը: Այդպիսին է Տարիելի սերը: Դժբախտ սիրո պատմությունը մղում է նրան դեպի կյանք: Տասը հազար սուր դանակով հոշոտված է նրա սիրտը: Բայց քաջարի մարդը ծով դժբախտության մեջ էլ չի կորցնում իրականությունը ճանաչելու ունակությունը: Տարիելի համար պարզ է, որ չի կարելի անարդար աշխարհին գերի դառնալ: Գերի են դառնում որբերը:

Նա ամենածանր ռոպեներին անգամ սթափվում է, որպեսզի անարդարության աշխարհին գերի չմնա ու չդավաճանի իր հայրենիքին: Այսպես, ահա՛, նրա մեջ համադրվում է հայրենասերը և սիրով տոգորվող մարդը: Արցունքն անպակաս է նրա աչքերից, որովհետև նա մարդ է, իսկ նրա սերը անմիջական ու պատանեկան:

Դժվար չէ տեսնել, որ Ռուսթավելին, ի հակադրություն միջնադարին ու կրոնականությանը, պատկերել է վերածննդի ժամանակների մարդու ներաշխարհը: Ծնվում էր այդ մարդը, ջարդելով միջնադարի կապանքները: Հավատում է նորածնունդ մարդը, որ երջանկությունը դարբնվում է երկրի վրա՝ մարդու համար: Կյանքի մեջ իմաստուն ուղին-սերն է դեպի մերձավորը, դեպի լավը, ազնիվն ու առաքինին: Այս մարդը մտածում է այսպես.— կտաս՝ քոնն է. չես տա—կորած է հավիտյան:

«Վագրենավորի» հումանիստական ոգին թելադրում էր մի միտք ևս— ոչնչացնել չարիքը, գնալ այն թշնամու վրա, որը բարձրացել է ոտնակոխ անելու ժողովրդի և հայրենի երկրի երջանկությունը:

---

[1]. Н. *Я. Марр*, «Грузинская поэма «Витязь в барсовой шкуре» Шоты из Руставн и новая культурно-историческая проблема». Петроград, 1917 г. стр. 424:

***

ՆԱ՛ և Ավթանդիլը—բանաստեղծի գրչի ամենաբարձր արգասիքը: Ավթանդիլն է գործողությունների ոգին, նա՛ է ամենաեռանդուն դեմքը, խիզախ և իմաստուն: Արտաքինով հար և նման Տարիելին, երկու երկվորյակ կարծես, երկու դյուցազն: Բախտակից, նաև տարբեր: Ավթանդիլը սուր աչք ունի՝ դժբախտին տեսնելու և գտնելու համար: Եվ նա՛ է գտնում Տարիելին:

Անձնազոհության գաղափարը Ավթանդիլին տանում է ծանր փորձությունների փշոտ ճանապարհով: Նա այն մարդն է, որ ապրում է եղբայրության համար, եղբայր է դժբախտին, մարդ է մարդուն:

Այս կերպարով Ռուսթավելին հավերժ անմահացնում է մեծագույն առաքինություններից մեկը—եղբայրությունը մարդկանց միջև, եղբայրությունը երկրների ու ժողովուրդների միջև:

Արաբն ու հնդիկը ներկայացվում են որպես այդ եղբայրության մարմնացում: Եվ այդ գաղափարը ծնում էր վրաց բանաստեղծը: Ավթանդիլը ևս մանկական տարիներից յուրացրել էր հայրենիքի խորհուրդը: Նա արտաքին նվաճողներին պարտության մատնող զորավարն է: Միաժամանակ, ունի այն դաստիարակությունը, որ մարդիկ պետք է ձգտեն ներդաշնակության: Բարոյական պարտքի զգացումը, սիրո զգացումը մարդու հանդեպ—Ավթանդիլին ոգեշնչող ուժն էր:

Ռուսթավելին ամենախոր կերպով կենսագործել է արվեստի մեջ այն օրենքը, որի համաձայն գաղափարները ապրում են կերպարների մեջ և արտահայտվում են կերպարներով: Չկա և չպետք է լինի խզում գաղափարի ու կերպարի միջև: Չկա անգաղափարական կերպար, չկա նաև գաղափար, որը օրգանական չէ կերպարի համար: Ավթանդիլն էլ ներշնչված է բոլոր մեծ գաղափարներով: Նա եղբայրանում է Տարիելին, որովհետև Տարիելը նետված է դժոխքը: Տարիելի հետ նա երջանիկ է: Երբ կա մարդ-եղբայրը, չքանում է մարդ-գազանը: Սին բան է պալատը, չնչին բան է հարստությունը, երբ հարուստ ես եղբայրության զգացումով տառապող մարդու նկատմամբ: Բախտավորությունը զգում է նա, ով ապրել է դժբախտությունը: Եվ որքան էլ ցանկալի լինի մահը, պետք է ապրել հանուն կյանքի, կյանքը զոհել կենդանի մարդկանց համար: Մեռնել ու մոխրանալ ընկերոջ և եղբոր համար—ահա՛ Ավթանդիլի գոյության իմաստը: Սա ծառս է լինում նաև կեղծիքի ու երկերեսանիության դեմ: Այս արատները կործանում են հոգին, կործանելով մարմինը: Կեղծիքը դժբախտության աղբյուրն է, եթե բույն է դնում սրտի մեջ: Մարդը պայծառ է բանականությամբ, մարդուն հատուկ է մարգարեի կանխատեսումը: Կանխատեսում ես—ճանաչելու աշխարհը: Բաժանելով մերձավորի վիշտը—անխոցելի կլինես կյանքում: Ատելի է այն մարդը, որը դավաճան է ու կեղծավոր: Մարտիկ չէ նա, ով ուշանում է երթին, թաքցնելով իր վախը: Արգահատելի է վախկոտը. լավ է անուն ունենալ, քան գանձեր կուտակել: Մարդը լավը թող տեսնի մարդու մեջ և թող վերանա չարիքը: Ատելով աշխարհը դու չես գտնի լույսի աղբյուրը:

Տարիելն ու Ավթանդիլը եղբայրանում են դժբախտության հողի վրա: Տարիելը գտնում է իրեն և վերածնվում շնորհիվ Ավթանդիլի:

Ռուսթավելու հանճարը ձգտել է ներդաշնակ մի կյանքի, որտեղ չի լինի



ո՛չ արցունք, ո՛չ վիշտ: Եվ բնությունն էլ իսպառ կդրվի մարդուն: Լոկ հավատն ու խոստումը քիչ բան է ապագան բերելու համար: Ու բանաստեղծն ուղարկում էր իր հերոսներին ընդդեմ չարիքի ծնող ուժերին՝ նրանց հողմացրիվ անելու նպատակով:

Կարեկցության և սրտացավության հիմքի վրա է կնքվում Տարիելի և Ֆրիդոնի եղբայրության դաշինքը ևս: Սա իրեն հայտարարում է Տարիելի ստրուկը, որից և կախված պետք է լիներ Ֆրիդոնի ու յուրայինների բախտավորությունը: Իդեալական երջանկության հասած երկիրը Ֆրիդոնը ներկայացնում է որպես մարդասիրության օրրան: Ֆրիդոնն է Տարիելին բերում ցանկացած ուրախությունը: Սրա և Նեստան-Դարեջանի հարսանիքը դառնում է եղբայրության գաղափարի հաղթանակի մեծահանդես օրը: Դրանով բոլորում էր երեք հերոսների տանջանքներով լի կյանքի ուղին՝ սիրով և արևային ջերմությամբ: Քաջությունը, իմաստությունը, տոկունությունը վարձատրվում են համաժողովրդական առատ և բերկրալից կյանքով: Հաստատվում է այն միտքը, որ երբ մարդը երջանիկ է, դարը, ժամանակը ևս իմաստուն են: Այլևս ոտնահարված է չարիքը, որը գլուխ էր բարձրացրել արդար մարդկության վրա՝ խլելու նրանից նրա գեղեցկությունները: Այլևս մարդը վերստին մարդ է դառնում, որովհետև վերադարձվում է նրան այն ամենն, ի՛նչ նրա վաստակն էր և ի՛նչը կազմում էր նրա երջանկության ու բերկրանքի աղբյուրը: Տարիելի հետ ողբացող բնությունը ևս կարող է զգալ, որ ներդաշնակությունը տիրել է մարդկանց աշխարհին և այն առատորեն կծառայի արի և առողջ, բարի և իմաստուն մարդկությանը:

Տարիելի, Ավթանդիլի, Ֆրիդոնի կերպարներով Ռուսթավելին կոթող է կանգնեցրել՝ կոթող եղբայրությանը, հումանիզմին:

***

«Առյուծի կորյունները առյուծազարմ կլինեն, նրանք էգ լինեն կամ որձ»: Այս հայտնի աֆորիզմը բացահայտել է Ռուսթավելու վերաբերմունքը կնոջ հանդեպ: Մարդը մարդ է ծնում, լինի աղջիկ, թե տղա: Մինչ վերածնունդը Արևմուտքում, վրաց բանաստեղծը ստեղծել է Նեստան-Դարեջանի, Թինաթինի, Ասմաթի, Ֆաթմայի կերպարները: Սրանց հոգևոր աշխարհը նույնպես հարուստ է: Բանաստեղծը իրավահավասար վիճակի մեջ է դրել թե՛ Տարիելին և թե՛ Նեստանին՝ տղամարդուն և կնոջը: Պոեմի գլխավոր կերպարների տեսակետով Թինաթինը կամ Նեստանը քաղաքացիական դեմքեր են, ինչպես տղամարդիկ:

Կանայք ժառանգում են գահը, որովհետև և՛ խելոք են, և՛ հայրենասեր: Նեստանը ոգեշնչում է Տարիելին, սրա տառապանքը նա չի դրվատում. Տարիելը պետք է հերոսանա: «Վերադարձիր ինչպես հերոս. ես կուզենայի ինչպես արև, արշալույսով մտնել քո մթնշաղի մեջ»,—ասում է Նեստանը: Սրան ևս գերում է եղբայրության ու ընկերականության գաղափարը, ոգևորում է ջիտակությունը, ազնվությունը, հաստատակամությունը: Անձնազոհ սերն էլ կապանի չարը: Նեստանի կերպարի ու պատկերի առաջ Ռուսթավելին ծնկի է բերում բոլորին, ով ընդունակ էր տեսնել գեղեցիկը, ով արիություն ուներ զոհել իր կյանքը բարձր իդեալների հաղթանակի համար:

Համեստագույն կնոջ դիմանկարով է օժտված Թինաթինը: Սակայն նա ևս

անձնվեր սիրով էր կապված Ավթանդիլի հետ: Մեծ վիշտ էր ապրում Թինաթինը դարձյալ Տարիելի համար: Ասմաթը կին Ավթանդիլն է: Հիմք կա ասելու, որ անկաշառ հավատարմության, անդավաճան եղբայրության և անձնազոհ կյանքի գաղափարներն ամենից ավելի արյուն և միս են դարձել Ասմաթի կերպարում: Եվ սա Նեստանի սպասուհին էր, ստրկուհի, որի մեջ կենդանի է մարդը՝ իր բոլոր առաքինություններով: Ինքնամոռացում և բյուրավոր հեծեծանք — սա էր Ասմաթի օրը և կյանքը: Բայց բանաստեղծը նրան չէր կորցնում իր տեսադաշտից: Թագավոր Տարիելը դիմում է Ասմաթին. «Մի՛ տխրիր, դու դեռ բախտավորություն չես տեսել, թող քեզ վիճակվի երջանկությունը, մոռանալով դառնաղի արցունքներդ. եղիր թագուհի և ամուսին, կառավարիր երկիրդ և առաջնորդիր զորաբանակդ»:

Ռուսթավելու հանճարի ծնունդն էր և՛ Ֆաթման, մեկն այն կանանցից, որոնք գրավում են իրենց վրա ընթերցողի ուշադրությունը:



«Վագրենավորում» ցայտուն դրսևորում են գտել բանաստեղծի ապրած ժամանակաշրջանի սոցիալ-քաղաքական, սոցիալ-տնտեսական, նաև մարդկային հոգեբանության, դասերի ու դասակարգերի մտածողության բազմաբնույթ հակասություններ ու հակադրություններ: Ռուսթավելին ճանաչել և արտահայտել է իրականության, դարի նյութը ամենայն օբյեկտիվությամբ: Նա ընթերցող սերունդներին տվել է կյանքը, հասարակությունը, մարդուն կոնկրետ կերպով տեսնելու և զգալու հնարավորությունը: Արևելքը և Արևմուտքը, սարբեր աշխարհամասեր «ներկա» են նրա պոեմում ստրկատիրության, ֆեոդալիզմի տիրապետության բոլոր արտահայտություններով: Պետական կյանքի կառուցվածքը, հասարակության սոցիալական շերտավորման երևույթները, պատերազմները, դավերը, ժողովուրդների բարքերը և հոգեբանությունը, մարդկային փոխհարաբերությունների ամենաբարդ դրսևորումները — այս ամբողջ նյութն անցնում է բանաստեղծի գրչի տակով և վերարտադրվում հանճարեղ արվեստով: Պոետը, միաժամանակ, խիզախում է իր մտքի մեջ, իրականությանը և նրա հակասություններին հակադրում իր իդեալները: «Վագրենավորը» ճանաչել է տալիս աշխարհը, դատապարտում չարը, պատկերում է վատն ու արգահատելին, սակայն ամբողջ ուժով և էությամբ հաստատում նաև ապագայի պատկերը: Պոեմում հաղթանակում է երկրագնդի վրա ներդաշնակ ու բարձր կյանք, իսկական մարդու թագավորությունը ստեղծելու գաղափարը:

«Վագրենավորին» կենդանություն է հաղորդում նրա ժողովրդական ոգին և հենց դրա մեջ էլ պետք է փնտրել նրա կենսունակության արմատները:

Ռուսթավելին հանդիսացավ վրաց աշխարհիկ գրականության մեծ հիմնադիրը և նրա ամենախոշոր դեմքը: Նա վերստեղծեց վրաց լեզուն, տվեց նրան կենդանի, դարձյալ ժողովրդական ոգի, առատորեն օգտագործեց ժողովրդական ստեղծագործությունը: Նրա գեղարվեստական գործի հիմքը ոչ թե կրոնն էր ու կրոնական ելակետը, այլ կյանքը, մարդը, ժողովուրդը: Կյանքը, մարդկայինը, մարդկային-համերժականը — ոգի առած ապրում են բանաստեղծի ամեն մի տողում: Մարդն իր բոլոր հասակներում, պատանին, երիտասարդը, այրը ողջամիտ, իմաստուն ծերունին, ժողովուրդներ ու ցեղեր, պետություններ ստացել են իրենց գեղարվեստական մոնումենտալ նկարագրությունը:



«Վագրենավորի» մեջ ընթերցողը գտնում է երկին հատուկ էպիկականություն, բայց և՛ դրամատիզմ, և՛ լիրիկա: Բնորոշ է այս ամենի միաձույլ դրսևորումը: Աֆորիզմներով, թևավոր խոսքով հարուստ է ամբողջ պոեմը: Այդ թևավոր և իմաստուն խոսքը դարերով ապրել է վրաց ժողովրդի հոգևոր կյանքում: Աֆորիզմի մեջ ամենից ավելի շքեղ է արտահայտվել բանաստեղծի ինտելեկտը և բանականությունը: Անգերազանց է Ռուսթավելու լեզվի երաժշտականությունը: Ռուսթավելու պոեզիան էսթետիկական հաճույքի անսպառ աղբյուր է և անմեռ օրինակ պոետական կատարելության հասնելու համար:



ԳԻՏԱԿԱՆ գրականության մեջ լավ է ցույց տրված այն աղերսը, որ կա և գոյություն է ունեցել հայկական վերածննդի գրականության և վրացական վերածննդի գրականության միջև: Ռուսթավելին հարազատ է էսթետիկական մտքի և գեղարվեստական մտածողության այն ավանդներին, որ ստեղծում էր միջնադարյան աշխարհիկ հայ գրականությունը: Երկու եղբայրական ժողովուրդների գեղարվեստական զարգացումը ուներ իր մեջ հար և նման կողմեր: Այդ զարգացումը հավաստում էր մի իրողություն — ա՛յն, որ Անդրկովկասում, դեռ հեռավոր դարերում, կազմակերպվում էր նույն գրոհը խավարի և հոգևոր կաշկանդումների դեմ: Ռուսթավելին փառավոր կերպով տարավ այդ գրոհը ամբողջ Արևելքի և մարդկության առաջ:

1860 թվականին «Կռունկը» տպագրեց «Վագրենավորի» հայ առաջին թարգմանիչ Ս. Բաստամյանի նամակը, որտեղ Ռուսթավելու վերաբերյալ մեծ հարգանքով ասված էր. «Էս մարդը էնքան հարգավոր է էլի վրացիների մէջը, որ վեց հարյուր տարի է սրա շինած բանը էստեղ կարդվում է, ինչպես Հոմերոսի շինածները կարդվում են ուրիշ ազգերի մեջ: Թիֆլիզեցի հայքը միշտ սիրել են Ռուսթավելի գրածները»:

XIX և XX դարերում հայ հասարակական միտքը, գրականությունը միշտ էլ արժանին են հատուցել վրաց հանճարին: Վ. Տերյանը սկսեց «Վագրենավորի» թարգմանությունը մեծ հմտությամբ: Ամբողջ պոեմը թարգմանեց Գ. Ասատուրը:

Հովհ. Թումանյանն էլ, մեծարելով Ռուսթավելուն, իր խորաթափանց հայացքով տեսնում էր վրաց տաղանդավոր ժողովրդի ապագան.

Չէ՛, չի լռել մեծ Շոթայի
Երգի ձենը կաթոգին
Ու դարավոր ցավն ամեհի
Չի խորտակել էն հոգին:

Ողջո՜ւյն, ողջո՜ւյն ձեզ հին ու նոր
Արի, բարի ընկերներ,
Արարատի կողմից էսօր՝
Եղբայրական երգ ու սեր:

«Մեծ Շոթան» այսօր իր խոշոր տեղն ունի վերածնված վրաց ժողովրդի հոգևոր մշակույթի մեջ:

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

## ԳՐԱԴԱՐԱՆՆԵՐԸ՝ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԴՊՐՈՑ

Իմ հոգու, մտաշխարհի ողջ լավի համար ես պարտական եմ գրքերին:

Մ. ԳՈՐԿԻ

**Անգնահատելի է գրադարանների դերը գրքի պրոպագանդման ու տարածման, մատաղ սերնդի, երիտասարդության դաստիարակության, նոր մարդու ձևավորման, կոմունիստական բարոյականության նորմերի արմատավորման ու կարգացման գործում:**

**Սովետական իշխանության տարիներին մեր ողջ երկիրը ծածկվել է հանրային, մանկական, տեխնիկական և այլ գրադարանների լայն ցանցով: Միայն մեր հանրապետությունում գործում են մոտ 3000 գրադարաններ, 25 միլիոն գրքային ֆոնդով:**

**Գրադարաններում մեծ է այնպիսի աշխատողների թիվը, որոնք ավնիվ, համեստ ու բարեխիղճ գործերով, գրքի նկատմամբ տածած անսահման սիրով իրենց լուման են ներդնում մարդու հոգեկան սննդի ճիշտ կազմակերպման, երիտասարդ սերնդի ճաշակի ձևավորման ու կարգացման բնագավառում:**

**Ահա թե ինչ են գրում մեզ Սիսիանի շրջանային գրադարանի վարիչ ԻՍԿՈՒՀԻ ՄԻՆԱՍՅԱՆԸ և Լենինականի Հ. Թումանյանի անվան մանկական գրադարանի վարիչ ԱՄԱԼՅԱ ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆՆ իրենց գրադարանային կոլեկտիվների գործունեության մասին: Նրանք երկուսն էլ իրենց բարեխիղճ, լավագույն աշխատանքի համար արժանացել են հանրապետության վաստակավոր գրադարանավարուհու կոչման:**



Գիրքը՝ ժողովրդին:

Ահա այն գլխավոր խնդիրը, որն այսօր դրված է գրադարանային աշխատողներիս առաջ: Սակայն հեշտ ու հասարակ բան չէ այդ և ոչ էլ տեխնիկական գործ, ինչպես կարծում են ոմանք: Դրա համար անհրաժեշտ են հարուստ գիտելիքներ, փորձ, հմտություն: Ամեն ինչ չես կարող առաջարկել մարդուն: Մի կյանքն էլ չի բավականացնի այդ անեզրական աշխարհի լավագույնն իսկ թերթելու համար: Այստեղ է ահա, որ մենք պետք է օգնենք ընթերցողին, հունի մեջ դնենք նրա ընթերցասիրությունը, որի համար աշխատում ենք լավ ճանաչել ընթերցողին, իմանալ նրա աշխատանքի բնույթն ու մասնագիտությունը՝ անհատական զրույցների միջոցով պարզել նրա հակումներն ու ցանկությունները, նախասիրությունները: Գրադարանավարի համար ամեն մի ընթերցող մի աշխարհ է և պետք է իմանալ ինչպիսի գիրք հանձնարարել:

Սիսիանի շրջանային գրադարանն ունի 30 տարվա պատմություն: 275 կտոր գրականությունից գրադարանի գրքային ֆոնդն այժմ հասել է 25000-ի, գերակշռում է գեղարվեստական գրականությունը. գրադարանը հարուստ է նաև մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերով, հասարակական-քաղաքական, գյուղատնտեսական գրականությամբ:

Գրքային ֆոնդից 6789 կտորը ռուսական գրականություն է, որից օգտվում է ընթերցողների մոտ 40 տոկոսը:

Գրադարանն ունի յոթ հոգուց բաղկացած խորհուրդ, որտեղ ընդգրկված են ակտիվ ընթերցողներ, ուսուցիչներ, գյուղատնտեսության և արդյունաբերության մասնագետներ: Մեծ օգնություն են ցույց տալիս մեզ գրադարանի ակտիվը, գրքատարները, շրջիկ կետերը, որոնք ջանք չեն խնայում գիրքը ընթերցողին հասցնելու, սպասարկումը լավ կազմակերպելու համար: Գրադարանն ունի 2500 ընթերցող, որոնցից 228 հոգին մինչև 16 տարեկան են, իսկ մնացածը՝ մեծահասակներ, մինչև 75 տարեկան: Ինչպես ասացինք, հնարավոր չէ և պետք էլ չէ բոլոր գրքերը հանձնարարել ընթերցողին, սակայն կան **գրքեր, որոնք բոլորը պետք է կարդան:** Մանկավարժների, գրականության ուսուցիչների օգնությամբ մենք ջանում ենք ընտրել և հանձնարարել այդ գրքերը: Դրանից առաջ ուսումնասիրում ենք ընթերցողների պահանջները, նրանց ընթերցանության նպատակը, քաղաքական ու կրթական պատրաստականության մակարդակը, գիրքը ինքնուրույն մշակելու նրանց ունակությունը:

Մեր շատ ընթերցողներ զբաղվում են քաղաքական ինքնակրթությամբ, ուսումնասիրում Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները, ընդգրկված են քաղաքական լուսավորության ցանցում, սովորում են բարձրագույն և միջնակարգ հաստատություններում: Նրանք հաճախ դիմում են մեզ, պահանջում հասարակական-քաղաքական գրականություն, և մենք աշխատում ենք բավարարել նրանց պահանջները:

Հասարակական-քաղաքական գրականության ֆոնդերը լավագույն ձևով ցուցահանելու նպատակով կիրառում ենք բաց դարակների սիստեմը: Դրա շնորհիվ զգալիորեն բարձրացել է գրքի տացքը: Այս գործում մեզ օգնում են մեր ընթերցող-պրոպագանդիստները, ագիտատորները, մանկավարժները և կուսակցական ու կոմերիտական աշխատողները: Հաճախ կազմակերպում ենք գրքի ցուցահանդեսներ պանապան թեմաների շուրջ, հաշվի առնելով ընթերցողների առանձին խմբերի ցանկությունները:

Գրականության հետ միասին ընթերցողների ուշադրությանն ենք ներկայացնում քաղաքական պարբերական մամուլը, որտեղ հրապարակվում են շատ արժեքավոր հոդվածներ մեր երկրի քաղաքական կյանքի, ներքին և արտաքին քաղաքականության, միջազգային հարցերի վերաբերյալ: Ցուցահանդեսներում և թեմատիկ բաց դարակներում պետեղում ենք հանձնարարական- մասնագիտական ցանկեր ու մեթոդական նյութեր: Երկու տարի առաջ գրադարանի կոլեկտիվը որոշեց գիրքը հասցնել ավանի յուրաքանչյուր ընտանիքի և դրան հասավ համառ ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ: 1965 թվականին գրադարանից դուրս է տրվել 31000 հազար կտոր գրականություն, այս տարվա չորս ամիսների ընթացքում՝ 17116 գրքի միջին շրջանառությունը կազմել է 2,2, իսկ միջին ընթերցողությունը 21: Շրջանառության մեջ է ֆոնդում եղած ողջ գրականությունը. այսպես, այս տարի դուրս է տրվել 5045 կտոր գեղարվեստական գիրք, իսկ մնացածը հասարակական-քաղաքական, բնագիտական, տեխնիկայի, բժշկության, արվեստի պատմության և այլ բաժիններից: Գրականության այսպիսի շրջանառությանը նպաստել են մեծ մասամբ անհատական զրույցները, գրքի պրոպագանդայի բազմազան ձևերն ու մեթոդները: Կազմակերպել ենք հեղինակային ու գրքային ցուցահանդեսներ, շարժական ցուցափեղկեր, գրքային պլակատներ, կազմել անոտացիոն քարտեր, հանձնարարական ցանկեր, հայտարարություններ, գրքի տեսություններ և այլն:

Գրադարանը սերտորեն կապված է դպրոցների, հիմնարկ-ձեռնարկությունների և սովխոզի աշխատավորության հետ. ունենք ութ շրջիկ կետ, որոնք գտնվում են սովխոզի ֆերմայում, շրջանային հիվանդանոցում, №33 գիշերօթիկ դպրոցում, №31 պրոֆտեխնիկական ուսումնարանում, Սայաթ-Նովայի անունը կրող նորաստեղծ թաղամասում: Սովխոզի աշխատավորության համար հաճախակի կազմակերպվում են դասախոսություններ ու զրույցներ, հանդիպումներ Սիսիանի անվանի մարդկանց հետ: Ընթերցողները հանդիպում են ունեցել հին կոմունիստներ Աշոտ Ամիրջանյանի, Մամբրեն Գրիգորյանի, Հայրենական պատերազմի վետերան Բագրատ Դավթյանի, Աիդա Հակոբյանի և ուրիշների հետ: ՀԼԿԵՄ Սիսիանի շրջկոմի օգնությամբ գրադարանին կից կազմակերպել ենք քառաձայն երգչախումբ, որը ելույթ է ունենում պատեհ առիթներով. ղեկավարն է երաժշտական դպրոցի ուսուցիչ Էմմա Ասյանը:

Կազմակերպել ենք պոեզիայի, թեմատիկ երեկոներ՝ **Ո՞րն է գեղեցիկը, Սիսիանը հնգամյակում,** ընթերցողների կոնֆերանս՝ Իմ **սիրած հերոսը** թեմայով և այլն: Հաճախ կազմակերպում ենք գրքի քննարկում. այսպես քննարկվել է Ս. Խանզադյանի **Այրված տունը,** նախապատրաստվում ենք և շուտով կքննարկենք նույն հեղինակի **Քաջարան** վեպը՝ Հեղինակի մասնակցությամբ: Հաջող ու բովանդակալից անցավ **Մուսա լեռան քառասուն օրը** գրքի քննարկումը. զեկուցեց լեզվի և գրականության դասատու Թագվոր Փափազյանը,

տարբեր մասնագիտության տեր մարդկանց հետ, որի շնորհիվ լայնանում է նրանց մտահորիզոնը, հետաքրքրասիրություն առաջանում գիտության զանազան բնագավառների հանդեպ:

Հանդիպումներ են կազմակերպվել գրողներ՝ Հ. Շիրազի, արձակագիր՝ Հ. Ղուկասյանի, երիտասարդ բանաստեղծ Լ. Թոռոսյանի, հին բոլշևիկներ, մայիսյան ապստամբության մասնակիցներ՝ Կ. Խաչատրյանի և Հ. Գաբրիելյանի, հին կոմերիտականներ՝ Ն. Սահրադյանի, Գ. Գյոդակյանի, վաստակավոր ուսուցիչներ՝ Ա. Հովհաննիսյանի, Մ. Պետրոսյանի, կոմունիստական բրիգադայի անդամ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ՝ Ս. Աբրահամյանի, ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու Հ. Բադալյանի, ՀՍՍՀ ժողովրդական արտիստ՝ Արմենյան-Դուրյանի հետ:

Գրադարանային խորհուրդը կազմակերպեց համաքաղաքային երեկո նվիրված Կոմիտասին: Նախօրեք դպրոցներում և գրադարաններում հայտարարություն փակցվեց Պարույր Սևակի Անլռելի զանգակատուն գրքի քննարկման մասին, որը տեղի ունեցավ ընթերցարանում: Զեկուցումը հանձնված էր երիտասարդ բանաստեղծ Լ. Թոռոսյանին. շատ ընթերցողներ ելույթ ունեցան: Առավոտյան ժամը 10-ին նկարչական դպրոցում բացվեց գեղարվեստի ակադեմիայի թղթակից անդամ Գրիգոր Խանջյանի Անլռելի զանգակատուն գրքի նկարազարդման նմուշների ցուցահանդեսը, որին ներկա էր նաև հեղինակը և երեխաներին սիրով բացատրում էր յուրաքանչյուր նկարի բովանդակությունը: Նույն օրը ցուցահանդես հաճախեցին ո՛չ միայն մեր ընթերցողները, այլև քաղաքի ինտելիգենցիան: Կոմիտասին նվիրված երեկոն տեղի ունեցավ հայֆիլհարմոնիայի դահլիճում, ուր փակցված էր Կոմիտասի մեծադիր նկարը, այնտեղ բացված էր նաև գրքի ցուցահանդես:

Ուշագրավ էին նաև մեծ քիմիային նվիրված երեկոն, Վլադիմիր Իլյիչի ծննդյան 96-ամյակին նվիրված ցերեկույթը: Աշխույժ անցան, եթե աշխարհի բոլոր երեխաները և Հեկտոր Մալոյի Առանց ընտանիքի գրքերի քննարկումները:

Գրադարանում առաջին պլանի վրա է գեղարվեստական գրականության պրոպագանդան: Գեղարվեստական գրականությունը մանուկ ընթերցողի հոգում դաստիարակում է գեղարվեստական, էսթետիկական նուրբ ճաշակ: «Երեխաները հենց փոքր տարիքից պետք է ներշնչված լինեն հավատով դեպի մարդը և նրա ստեղծագործական մեծ ուժը, այդ նրանց կդարձնի հոգով ամուր, կայուն մարտիկներ»—ասել է Գորկին:

Հետաքրքրական է լիրիկային նվիրված ցուցափեղկը: Բարձր դասարանցիները սիրում են լիրիկական ստեղծագործությունները: Շատ են կարդում հատկապես Տերյան, Դուրյան, Իսահակյան, Լերմոնտով, Եսենին, իսկ ժամանակակիցներից՝ Շիրազ, Կապուտիկյան և Եվտուշենկո:

Մանկական գրադարանի աշխատողները լավ գիտեն, որ երեխաները շատ են սիրում կարդալ հատկապես հեքիաթներ (I—IV դասարանցիները), որոնք հափշտակում են երեխաներին, կտրում շրջապատից, տանում դեպի հրաշալիքներով լի երևակայական մի աշխարհ: Որպեսզի նրանք միայն հեքիաթներով չտարվեն, կարդան նաև այլ գրքեր, կազմակերպում ենք նույնիսկ հատուկ խաղեր: Այսպես՝ **որ գրքից ենք մենք** խաղը, ինչպես և խաղեր աշխարհագրության, պատմության և արվեստի թեմաներով: Լայնորեն կիրառվում է անհատական զրույցը: Այս ամենը լայնացնում է աշակերտների հետաքրքրասիրությունների շրջանակը:

Ընթերցողները V դասարանից սկսած ծանոթանում են բնագիտությանը և ահա այդ տարիքից էլ պահանջում են գիտա-ֆանտաստիկ գրքեր. հատկապես տղաները շատ են սիրում կարդալ Ժյուլ-Վեռնի, Աշոտ Շայբոնի, Կ. Սիմոնյանի, Բելյաևի, Լեմմի, Ադամովի ստեղծագործությունները:

Գրադարանում կազմակերպվել են նաև բանավեճեր, հարց ու պատասխանի ցերեկույթներ: Հիշարժան է **Ի՞նչն է գեղեցիկ մարդու մեջ** թեմայով բանավեճը, որին մասնակցում էին VIII—XI դասարանի աշակերտները: Նրանցից շատերը ելույթ ունեցան: Ելույթ ունեցողները գտնում էին, որ հարուստ ու գեղեցիկ պետք է լինի ամենաերջանիկ հասարակարգը՝ կոմունիզմը կառուցող սովետական նոր մարդու հոգին:

Հեղափոխության 50-ամյակի կապակցությամբ կազմել ենք 3 ալբոմ՝ **Հերոս պիոներները**, **Հայրենական պատերազմի հերոսները**, **Քաղաքացիական պատերազմի հերոսները** վերնագրով:

Գրադարանը պատրաստել է **Ալբոմ ճանապարհորդ**:

Ինչպես մեզ, այնպես էլ քաղաքի մյուս մանկական գրադարաններին միշտ էլ մեթոդական օգնություն է ցույց տվել Ալ. Մյասնիկյանի անվան հանրային գրադարանը. արդեն 3-րդ տարին է, որ մանկական գրադարանները մեթոդական օգնություն են ստանում Խնկո-Ապոր անվան հանրապետական գրադարանից: Ամեն ամիս ստանում ենք մեթոդական նամակներ այս կամ այն հարցի շուրջ, հիշարժան տարեթվերի օրացույց, և տեղեկություններ հանրապետության լավագույն մանկական գրադարանների օրինակելի աշխատանքի մասին: Այդ ամենը օգնում է մեզ պատշաճ ձևով կազմակերպելու մեր աշխատանքը, գիրքը՝ մատաղ սերնդի դաստիարակության այդ լավագույն զենքը, իր նպատակին ծառայեցնելու գործում:

Ա. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ

# ՀԵՐՈՍԱԿԱՆ ԱՆՑՅԱԼԻՑ

## ՌՈՒՍԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՄՈՒՆԵՏԻԿՆԵՐԸ

Պ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*1825 թ. դեկտեմբերի 14-ին (նոր տոմարով՝ 26-ին) Պետերբուրգում՝ Սենատի հրապարակում ազնվական-հեղափոխականները կատարեցին զենքի ուժով ճորտատիրության և ինքնակալության տապալման առաջին փորձը: Ապստամբությունը տեղի ունեցավ դեկտեմբեր ամսին, դրա համար էլ պատմության մեջ հայտնի դարձավ «դեկաբրիստների ապստամբություն» անունով: Նույն ամսին ապստամբության փորձ կատարվեց նաև Ուկրաինայում՝ Չեռնիգովյան գնդում: Բայց «դեկաբրիստական շարժում» հասկացողությունը շատ ավելի լայն է. այն արտահայտում է պատմական մի ամբողջ ժամանակաշրջան:*

*Դեկաբրիստների ապստամբությունը մոտ 10 տարվա ընթացքում նախապատրաստվել է գաղտնի հեղափոխական կազմակերպությունների կողմից և ունեցել է որոշակի քաղաքական ծրագիր՝ ճորտատիրական կարգերի և ինքնակալության տապալումը: Դրա համար էլ Լենինը նշում է, որ* **1825 թվականին Ռուսաստանն առաջին անգամ տեսավ հեղափոխական շարժում ցարիզմի դեմ** *(Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, Երևան, 1951, էջ 320):*

*Ռուսաստանում հեղափոխական շարժման սկիզբը դնելով՝ դեկաբրիստները հսկայական դեր կատարեցին նրա պատմության մեջ: Շարժումը հիմնականում սկիզբ առավ 1812 թ. Հայրենական պատերազմից հետո և իր զարգացման բարձր աստիճանին հասավ 1825 թ. դեկտեմբերին:*



*ԴԵԿԱԲՐԻՍՏԱԿԱՆ շարժման գնահատման գործում իրենց ուրույն տեղն են գրավում հեղափոխական դեմոկրատներ՝ Գերցենը, Օգարևը, Դոբրոլյուբովը, Չերնիշևսկին: Նրանք դեկաբրիստների ջերմ պաշտպաններն էին, նրանց գործի պրոպագանդիստներն ու շարունակողները: Գերցենը և Օգարևը լինելով արտասահմանում, բացահայտ պայքարում էին դեկաբրիստական շարժման թշնամիների, նրանց գործը նենգա-*

փոխողների դեմ, մերկացնում ցարիզմի դաժան քաղաքականությունը և մեծարում դեկաբրիստների գործը։

Գերցենը 1851 թ. գրում է «Հեղափոխական իդեաների զարգացման մասին Ռուսաստանում» աշխատությունը, որտեղ լուրջ տեղ է տալիս դեկաբրիստների ապստամբությանը, իսկ 1857 թ. լույս է տեսնում նրա «1825-ի ռուսական դավադրությունը» գրքույկը։ Նա դեկաբրիստներին ջերմ էջեր է նվիրում նաև «Եղելություններ և խոհեր»-ում։ 1858 թ. Օգարևը գրում է «1825 թ. դեկտեմբերի 14-ի և կայսր Նիկոլայը» գրքույկը, որտեղ խիստ քննադատության է ենթարկում բարոն Կորֆի հետադիմական հայացքները դեկաբրիստների մասին։



ԻՐԱԿԱՆՈՒՄ դեկաբրիստների ապստամբության ժամանակաշրջանը՝ ֆեոդալական հարաբերությունների քայքայման և կապիտալիստական կարգերի հաստատման ժամանակաշրջանն էր, բուրժուազիայի վերելքի, նրա լիակատար հաղթանակի դարաշրջանը։

1812 թ. Հայրենական պատերազմը հսկայական նշանակություն ունեցավ Ռուսաստանի հետագա կյանքում և, մասնավորապես, դեկաբրիստական շարժման առաջացման գործում։ Բելինսկին գրել է. «Նապոլեոնի դեմ մղած լարված մահացու պայքարը արթնացնում էր Ռուսաստանի նիրհած ուժերը և ստիպում, որ նա իր մեջ տեսնի այնպիսի ուժեր ու միջոցներ, որպիսիք նա մինչև այդ չէր էլ նկատում» (В. Г. Белинский, Полное соб. соч., т. 3, М., 1953, էջ 346)։

Ապագա դեկաբրիստների մեծ մասը Հայրենական պատերազմի մասնակիցներն էին։ Պատերազմը նրանց շատ բան սովորեցրեց, փոխելով նրանց մտածելակերպը, հարկադրեց այլ աչքերով, քննադատորեն նայել ճորտատիրական կարգերին։ Եթե մինչև պատերազմը նրանք անտարբեր էին ժողովրդի վիճակի հանդեպ, ամեն ինչի զորությունը գտնում էին ինքնակալության մեջ, ապա այժմ, երբ նրանք իրենց աչքերով տեսել էին հերոսությունը մի ժողովրդի, որը կարողացավ ջախջախել պատմության մեջ եղած ամենազորեղ բռնակալներից մեկին, սկսում են այլ կերպ նայել ժողովրդին։ Ժողովրդի վիճակը դառնում է նրանց մտածումների հիմնական առարկան։ Պատերազմը սթափեցնում է դեկաբրիստներին, բացում նրանց աչքերը և նպաստում նրանց հայացքների ձևավորմանը։

Դեկաբրիստ Մ. Մուրավյով-Ապոստոլը նշում է. «1812 թվականը, այլ ոչ թե արտասահմանյան արշավանքները ստեղծեցին հետագա հասարակական շարժումը, որն իր էությամբ փոխառված չէր, եվրոպական չէր, այլ զուտ ռուսական էր» (Русская старинь, 1888, кн. 8, էջ 158)։

Թշնամուն ջախջախեց ռուս հերոս ժողովուրդը։ Խղճալի էր պատերազմից տուն դարձած հերոսների վիճակը արակչեևյան դաժան ռեժիմի պայմաններում։ Դեկաբրիստ Պոդժիոն վկայում է, որ իր սեփական աչքով տեսել է, թե ինչպես շքանշանը կրծքին զինվորը կալվածատիրոջից հաց է խնդրում. և խիստ վիրավորված է զգացել իրեն։ Առաջավոր ազնվականները՝ ապագա դեկաբրիստները, սկսում են հասկանալ, որ անհրաժեշտ է վճռական բեկում ստեղծել ռուս-



տական իրականության բոլոր ասպարեզներում։ Հյուսիսային ընկերության ղեկավար Կ. Ֆ. Ռիլեևը գրել է.

«Երկրի ներկա ղեկավարությունում որևէ բարեփոխություն կատարելը հանցագործություն է, այն պետք է միայն կործանել...» (Восстание декабристов. т. 1, էջ 174)։

Շատ սպաներ, չհանդուրժելով արակչեևյան ռեժիմը բանակում՝ իրենք են հրաժարական տալիս և հեռանում զինվորական ծառայությունից։ 1818 թ. արակչեևյան ռեժիմի պայմաններում, ապագա դեկաբրիստ Կ. Ֆ. Ռիլեևը համոզվելով, որ «այժմյան ծառայության համար հարկավոր են սրիկաներ», հրաժարական է տալիս, թողնում է բանակը և տեղափոխվում Պետերբուրգ (Н. Котляровский. Рылеев, СПб, 1908, էջ 28—29)։

Դեկաբրիստների շարժման առաջացման գործում զգալի դեր է կատարել ռուսական առաջավոր դեմոկրատական կուլտուրայի զարգացումը 19-րդ դարի առաջին քառորդում։ Նոր զարգացող կապիտալիստական հարաբերությունները չէին կարող չնպաստել ընդհանուր կուլտուրայի, գրականության, գիտության, լուսավորության, արվեստի զարգացմանը։

Առաջավոր իդեաների զարգացման գործում դեկաբրիստներն ունեին իրենց նախորդները Ռուսաստանում։ Դրանք ռուս լուսավորիչներն էին։ Այստեղ առաջին հերթին պետք է նշել Ռադիշչևին, որը պայքարի էր ելել «զազրելի ռուս իրականության դեմ», պրոպագանդում էր հայրենասիրություն և սեր հարազատ ժողովրդի հանդեպ։ Դեկաբրիստներին լավ ծանոթ էր Ռադիշչևի Ճանապարհորդություն Պետերբուրգից Մոսկվա գիրքը։ Դեկաբրիստ Կյուխելբեկերը պատմում է, որ այդ գիրքը արտագրում, ձեռքից ձեռք էին տալիս և թանկ էին գնահատում նրա յուրաքանչյուր խոսքը։

Ռադիշչևը Ռուսաստանում միակը չէր, նա ուներ իր հետևորդները՝ ռադիշչևականները (Ի. Բորնը, Վ. Պոպուգաևը, Ի. Պնինը և ուրիշներ), որոնք շարունակում էին նրա լավագույն տրադիցիաները, բարձր էին պահում նրա հիշատակը։

Առաջավոր իդեաների պրոպագանդայի գործում մեծ դեր կատարեցին մի շարք պրոգրեսիվ գիտնականներ ու դասախոսներ, որոնք դասավանդում էին համալսարաններում, լիցեյներում և այլուր։ Դեկաբրիստներից շատերը նրանց աշակերտել են և մեծ երախտագիտությամբ են հիշում նրանց։ Առաջավոր ազնվականները լավ գիտեին Եվրոպայի առաջավոր մտքի ներկայացուցիչներին՝ Վոլտերին, Ռուսսոյին, Հելվեցիուսին, Դալամբերին, Հոլբախին, Բեկարիային, Ադամ Սմիթին, Սեյին, Սիսմոնդիին և ուրիշներին։

Դեկաբրիստական շարժումը հիմնականում հետևանք էր ներքին տնտեսական, հասարակական-քաղաքական հարաբերությունների զարգացման։ Նրանց ստեղծած կազմակերպությունները, որոնք նախապատրաստել են ապստամբությունը, ինքնուրույն և ոչ թե արևմուտքից ընդօրինակված կազմակերպություններ էին, որովհետև, ինչպես նշում է Գերցենը՝ ռուսական միտքը անտանելի հասարակական վիճակից դուրս գալու ելք էր փնտրում։ Մինչև դեկաբրիստների ապստամբությունը, Ռուսաստանում, մասնավորապես 17-րդ և 18-րդ դարերում գյուղացիական բազմաթիվ հուզումներ են եղել, բայց դրանք կրել են տարերային բնույթ, ծագել են առանց որոշակի քաղաքական ծրագրի. դրանք օգուտ էին բերում այն տեսակետից, որ թուլացնում էին ճորտատիրական կարգերը, հարկադրում նրան դիմել բարեփոխությունների։ Բայց այդ

շարժումները չէին դնում ցարիզմի կործանման հարցը։ Ռուսաստանի պատմության մեջ այդ հարցը առաջին անգամ բարձրացրին դեկաբրիստները։

Վ. Ի. Լենինը նշում է, որ «Պատմական ծառայությունների մասին դատում են ոչ թե նրանով, թե ինչ չեն տվել պատմական գործիչները ժամանակակից պահանջների համեմատությամբ, այլ նրանով, թե նրանք ինչ նոր բան են տվել իրենց նախորդների համեմատությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 229)։

Այդ տեսակետից գնահատելով դեկաբրիստական շարժումը, պետք է նշել, որ այն հեղափոխական պայքարի մի նոր էտապ էր, իր ժամանակի ամենապրոգրեսիվ հեղափոխական շարժումը լինելով, խոր ազդեցություն է թողել ժողովրդական լայն շրջանների վրա։ Լենինը նշել է, որ այն ժամանակվա Ռուսաստանում գլխավոր հարցը ճորտատիրական կարգերի և ինքնակալության դեմ մղվող պայքարն էր։ Դեկաբրիզմը լինելով ժամանակի ամենաառաջատար շարժումը, իր պայքարի սայրն ուղղել էր ճորտատիրության և ինքնակալության դեմ։ Դեկաբրիստները ոչ միայն խորապես գիտակցել էին, որ անհրաժեշտ է արմատական փոփոխություններ մտցնել երկրի տնտեսական ու քաղաքական կյանքում, այլ նաև Ռուսաստանի պատմության մեջ առաջին անգամ զենքը ձեռքին հանդես են եկել հանուն այդ փոփոխությունների իրականացման։ Նրանք ոչ թե ռեֆորմների անցկացման հարցն առաջ քաշեցին, այլ ինքնակալության տապալման պրակտիկ փորձը կատարեցին։ Դրա համար էլ Լենինը նշում է, որ 1825 թվականին Ռուսաստանն առաջին անգամ տեսավ հեղափոխական շարժում ցարիզմի դեմ, և այդ շարժումը ներկայացնողը գրեթե բացառապես ազնվականներն էին (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 320)։

Այն ժամանակ Ռուսաստանում զարգանում էին բուրժուական հարաբերությունները, բայց բուրժուազիան հանդես չէր գալիս որպես ինքնուրույն դասակարգ։ Այն դասակարգ էր, «ինքնին», որը զարգանում էր ճորտատիրական կարգերի և ինքնակալության առկայության պայմաններում։ Դրա համար էլ, լինելով թույլ, բուրժուազիան հարմարվում էր այդ պայմաններին, գործարքի մեջ մտնում ճորտատերերի հետ և հանդես չէր գալիս որպես ինքնուրույն հեղափոխական ուժ։ Ստեղծված իրադրությունում առաջադեմ ազնվականությունն էր հանդիսանում առաջավոր ազատագրական իդեաների կրողը։

Լենինը բարձր է գնահատում դեկաբրիստներին նրա համար, որ նրանք առաջինը մեր երկրում հիմնավորեցին և հռչակեցին հանրապետության գաղափարը, որը շատ կարևոր նշանակություն ունեցավ ռուսական սոցիալ-դեմոկրատիայի պայքարի գործում։

Դեկաբրիստների ծրագրում առաջ քաշված պահանջներն իրենց օբյեկտիվ բովանդակությամբ բուրժուական էին։ Պայքարը հետամնաց ֆեոդալական-ճորտատիրական կարգերի դեմ օբյեկտիվորեն տանում էր դեպի բուրժուական հեղափոխություն, չնայած դեկաբրիստները այդ չէին գիտակցում։ Բայց այդ չի նշանակում, թե դեկաբրիստները սուբյեկտիվորեն եղել են բուրժուազիայի գաղափարախոսներ։ Այդ չէր կարող լինել, որովհետև ռուսական բուրժուազիան շատ թույլ էր, շատ հեռու էր իրենից ինքնուրույն ուժ ներկայացնելուց։ Դեկաբրիստական շարժման առանձնահատկությունը, որը պայմանավորված է իր ժամանակաշրջանով, այն է, որ իր սոցիալական բովանդակությամբ այն բուրժուական էր, իսկ շարժման ղեկավար ուժով ու պայքարի միջոցներով



ազնվականական։ Դրանով է բացատրվում ազնվականական դրոշմը դեկաբրիստական ողջ շարժման վրա, դրա համար Լենինը նրանց անվանել է ազնվական հեղափոխականներ։

Թեև դեկաբրիստական շարժումն իր մեջ ներառնում էր Ռուսաստանի ամենախոշոր դասակարգի՝ գյուղացիության շահերը, բայց դեկաբրիստները հեռու էին գյուղացիության գաղափարախոսներ լինելուց։ Նրանք համընդհանուր բնույթ էին տալիս իրենց մշակած ծրագրերին ու նպատակներին, մտածում էին բարեկեցիկ տնտեսական ու քաղաքական կյանք ստեղծել բոլոր խավերի համար։

Օբյեկտիվորեն արտահայտելով երկրի բուրժուական զարգացման տենդենցը, պրակտիկորեն հիմնավորելով այդ տենդենցի հաղթանակի անհրաժեշտությունը՝ դեկաբրիստները զգալիորեն հեռանում էին իրենց ազնվականական դասակարգից։ Բայց լինելով այդ միջավայրի ծնունդը՝ նրանք վերջնականապես չէին կտրվում իրենց դասակարգից։ Իրենց նպատակների իրականացման համար նրանք կողմնորոշվում էին դեպի ազնվականությունը, հեղափոխական սպաները։ Լենինը նշում է, որ «Քաղաքական շարժման ղեկավարությունը այն ժամանակ գրեթե բացառապես պատկանում էր սպաներին, բուն ազնվական սպաներին» (Երկեր, հ. 23, էջ 324)։

Ազնվական-հեղափոխականները պայքարում էին ժողովրդի համար, բայց ո՛չ ժողովրդի միջոցով։ Նրանք գիտակցորեն հեռու էին պահում ժողովրդին հեղափոխությունից։ Նրանք վախենում էին ժողովրդի ակտիվությունից, նրա ինքնուրույն դերից, պուգաչովշչինան նրանց խիստ վախեցնում էր։ Դեկաբրիստների կարծիքով գյուղացիությունը ընդունակ է միայն տարերային բունտերի, որոնք կհասցնեն միայն ազնվականության մասսայական հետապնդման ու կուլտուրական արժեքների ոչնչացման։ Պեստելն ասում էր, որ ժողովրդի աջակցությունն իրենց հարկավոր է ոչ թե հեղափոխության ժամանակ, այլ նրանից հետո։ Հեղափոխությունից առաջ և նրա պահին նրանք բավարարվում են միայն ժողովրդի պասսիվ համակրանքով։

Ազնվականական սահմանափակությունը արտահայտվում է նաև նրանում, որ նրանք իրենց հեղափոխական հույսերը կապելով ազնվականության հետ՝ չէին կարող վճռականորեն դնել ազնվականական հողատիրության վերացման հարցը։ Լավագույն դեպքում նրանք կարող էին միայն որոշ տնտեսական զիջումներ պահանջել ազնվականությունից։

Ազնվական հեղափոխականները առաջ քաշելով բուրժուական հեղափոխության պահանջները՝ հարկադրված էին կոնֆլիկտի մեջ մտնել ազնվականական դասակարգի բացարձակ մեծամասնության հետ, մինչդեռ իրենք, ինչպես Լենինն է ասում, կազմում էին «չնչին փոքրամասնությունը»։ Առանց ժողովրդի ոչ մի հեղափոխություն չի կարող հաղթանակել, որովհետև հեղափոխական «փոթորիկը բուն մասսաների շարժումն է» (Լենին)։ Միաժամանակ Լենինը նշում է, որ դեկաբրիստների պարտությունը պայմանավորված է նաև դարաշրջանի առանձնահատկությամբ։

Չնայած դեկաբրիստական հեղափոխական շարժման թույլ ու թերի կողմերին, չնայած նրա սահմանափակվածությանը, այնուամենայնիվ, մեծ է այդ — առաջին հեղափոխական շարժման դերը ռուսական պատմության մեջ։ Վ. Ի. Լենինը 1912 թ. գրած «Գերցենի հիշատակին» հոդվածում տվել է դեկաբրիստական շարժման բազմակողմանի գնահատականը։

«Մեծարելով Գերցենին,— գրում է Լենինը,— մենք պարզ տեսնում ենք երեք սերունդ, երեք դասակարգ, որոնք գործել են ռուսական հեղափոխության մեջ։ Սկզբում՝ ազնվականներն ու կալվածատերերը, դեկաբրիստներն ու Գերցենը։ Նեղ է այդ հեղափոխականների շրջանը։ Շատ հեռու են նրանք ժողովրդից։ Բայց նրանց գործն ապարդյուն չանցավ։ Դեկաբրիստներն արթնացրին Գերցենին։ Գերցենը հեղափոխական ագիտացիա ծավալեց։

Այդ ագիտացիան ընկալեցին, ընդլայնեցին, ամրապնդեցին, կոփեցին հեղափոխականներ-ռազնոչինցիները, սկսած Չերնիշևսկուց և վերջացրած «Народная воля»-ի հերոսներով։ Ավելի լայնացավ մարտիկների շրջանը, ավելի մոտ դարձավ նրանց կապը ժողովրդի հետ։ «Ապագա փոթորկի երիտասարդ շտուրմաններ» էր կոչում նրանց Գերցենը։ Սակայն այդ դեռևս բուն փոթորիկը չէր։

Փոթորիկը, դա բուն մասսաների շարժումն է։ Պրոլետարիատը, մինչև վերջը հեղափոխական միակ դասակարգը, ոտքի ելավ նրանց գլուխն անցած և առաջին անգամ միլիոնավոր գյուղացիներին ոտքի հանեց բացահայտ, հեղափոխական պայքարի համար։ Փոթորկի առաջին գրոհը եղավ 1905 թվականին։ Հաջորդը սկսում է աճել մեր աչքի առաջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 20)։

Այդպիսով, Լենինը դեկաբրիստների գործունեությունը կապում է մի խոշոր ժամանակաշրջանի հետ, որի ընթացքում ազատագրական շարժման գլուխ կանգնեցին ազնվականական միջավայրից դուրս եկած «լավագույն մարդիկ», հեղափոխական շարժման, հեղափոխական փորձի կուտակման նոր հիմք դրին և արթնացրին հետագա սերունդը, որն իր դրոշակի վրա կրում էր դեկաբրիստներից ժառանգած ճորտատիրական կարգերի և ինքնակալության դեմ մղվող պայքարի լոզունգը։ Գերցենը պարծանքով էր նշում. «Երեսուն տարի անց ես կանգնած եմ նույն դրոշի տակ, որը ոչ մի անգամ բաց չեմ թողել» (А. И. Герцен, Собрание соч., М., 1958, էջ 61)։

Լենինն ընդգծում է, որ դեկաբրիստները ազնվականական սերնդի լավագույն ներկայացուցիչներն են։ Նա ասում է.

«Ազնվականները Ռուսաստանին տվել են բիրոններ և արակչեևներ, անթիվ քանակությամբ «հարբեցող սպաներ, կռիվ հրահրողներ, թուղթ խաղացողներ, տոնավաճառների հերոսներ, շնապաններ, կռվարարներ, մտրակահարողներ, մեղկ պալատականներ, և բարեհոգի մանիլովներ։ «Եվ նրանց մեջ,— գրում է Գերցենը,— զարգացան դեկտեմբերի 14-ի մարդիկ, այն հերոսների ֆալանգան, որոնք, ինչպես Հռոմուլոսը և Հռեմոսը, սնվել-մեծացել էին վայրի գազանի կաթով... Դրանք ինչ-որ դյուցազուններ էին, որոնք ոտքից մինչև գլուխ կռված ու կոփված էին զուտ պողպատից, սխրակից-ռազմիկներ, որոնք գիտակցաբար դիմում էին դեպի ակնհայտ մահ, որպեսզի նոր կյանքի համար արթնացնեն երիտասարդ սերունդը և մաքրեն դահճության ու ստրաքարշության միջավայրում ծնված երեխաներին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 12—13)։

Գերցենը, որ կանգնած էր դեկաբրիստների կողմից արթնացած սերնդի գլուխ, առաջինն էր, որ դեկաբրիստների անհաջող դառը փորձից հետո՝ համապատասխան եզրակացության հանգեց։

«Դեկտեմբերի 14-ը,— գրում է Գերցենը,— հիրավի բացեց մեր քաղաքական դաստիարակության նոր փուլը և, ինչ կարող է տարօրինակ թվալ, ավելի հսկայական ազդեցություն, որ ունեցավ այդ գործը և որը ավելի ուժեղ էր ներգործում, քան պրոպագանդան ու տեսությունը, ունեցավ ինքը՝ ապստամբությունը, խռովարարների հերոսական վարքագիծը հրապարակում, դատարանում, շղթայակապ վիճակում, Նիկոլայ կայսրի ներկայությամբ, հանքերում, Սիբիրում։ Ոչ թե լիբերալ ձգտումները կամ չարագործությունների գիտակցումն էր պակասում ռուսներին, այլ նրանք չունեին մի նախադեպ, որը նրանց տար նախաձեռնության համարձակություն։ Տեսությունն է համոզումներ ներշնչում, իսկ օրինակն ստեղծում է վարքագիծ» (նույն տեղը, հ. 6, էջ 352)։



Լենինն այդ մասին նշում է.

«Անկասկած, իզուր չընկան այդ զոհերը, անկասկած ուղղակի թե անուղղակի—նրանք նպաստեցին ռուս ժողովրդի հետագա հեղափոխական դաստիարակությանը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 23, էջ 320)։

1825 թ. դեկտեմբերի 14-ի ապստամբությունից անմիջապես հետո, 30-ական թվականներին Նիկոլայ I-ը ձգտում էր արմատախիլ անել դեկաբրիզմի «հետքերն ու մնացորդները» (Սենգուրովի, Կրիտսկի եղբայրների, Սիտնիկովի և ուրիշների պրոցեսները), բայց այդ նրան չի հաջողվում։ Պետրաշևցիները լրջորեն ուսումնասիրում էին դեկաբրիստների ապստամբության փորձը։ Հեղափոխական-դեմոկրատ Շելգունովը և Միխայլովը «Երիտասարդ սերնդին» պրոկլամացիայում կոչ են անում. «Եվ ձեզ մեծ գործի, իսկ եթե հարկ լինի նաև դեպի փառապանծ մահ կառաջնորդեն դեկտեմբերի 14-ի նահատակների ստվերները»։

Չերնիշևսկին «Աղայական գյուղացիներին» պրոկլամացիայում, նկատի ունենալով դեկաբրիստների փորձը, հեղափոխական կենտրոնի ազդանշանով ժողովրդական ապստամբության հարցն է դնում։

Դեկաբրիստների ապստամբությունից 75 տարի անց, 1900 թ. լենինյան «Իսկրա»-ի ճակատին որպես բնաբան գրված էին դեկաբրիստ Օդոևսկու ոտանավորի նշանավոր խոսքերը՝ Կայծից բոց կբռնկի, որը վկայում է դեկաբրիզմի հեղափոխական բնույթը։

1905 թ. դեկտեմբերին, հեղափոխության աճեղ օրերին, որ համընկնում էր դեկաբրիստների ապստամբության 80-ամյակին, բոլշևիկյան մամուլը նշում է այդ անմոռանալի տարեթիվը։ «Кавказский рабочий листок» թերթի առաջնորդողում կարդում ենք.

«Դեկաբրիստների ապստամբության ութսունամյակը համընկնում է ընդհանուր քաղաքական գործադուլի հետ, երբ քնից սթափված Ռուսաստանը, ընդգրկված հեղափոխական հրդեհով, մոբիլիզացիայի է ենթարկում իր ուժերը՝ վերջին և վճռական գոտեմարտի համար ինքնակալության աճեղ ամրոցի դեմ և դրանով իսկ օգտագործում է 1825 թվականի դեկտեմբերի 14-ի հերոսների պատգամը» (Кавказский рабочий листок «Елизаветполский вестник»), 1905, № 1 (17)։

Միայն 1905 թվականին է իրականանում զինված ապստամբության փղեան նոր, ամենահեղափոխական դասակարգի՝ պրոլետարիատի գլխավորությամբ։ Բայց 1905 թ. հեղափոխությունը չկարողացավ մինչև վերջ լուծել իր առջև ծառացած բուրժուա-դեմոկրատական խնդիրները։ 1917 թ. փետրվարյան հեղափոխությունը վերջնականապես տապալեց ինքնակալությունը և իրականացրեց հեղափոխական ազնվականների իղձը։ Հեղափոխության հարցն արմատապես լուծեց միայն Մեծ հոկտեմբերը։

Դեկաբրիզմը ոչ միայն հասարակական-քաղաքական շարժում էր, այլ նաև գաղափարական-համակուլտուրական, գիտական մտքի զարգացման շարժում։ Դեկաբրիստների պատմա-սոցիոլոգիական, փիլիսոփայական, տնտեսագիտական, ռազմական հայացքները, նրանց փայլուն գրական գործունեությունը ռուսական առաջավոր մտքի և նրա հետագա աննախընթաց զարգացման նոր էտապն են հանդիսանում։ Ազնվական հեղափոխականներն իրենց գործունեությամբ առաջ են մղել ռուսական առաջավոր գիտությունը, արվեստը, գրականությունը, կուլտուրան և իրենց նոր խոսքն են ասել։

Դեկաբրիստական շարժումը նպաստեց ռուս ազգի հետագա ձևավորման

ու զարգացման գործին, նրա ուժերի համախմբմանը տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի ասպարեզներում:

Դեկաբրիստական շարժումը ուներ նաև միջազգային նշանակություն: Նա մեկուսացված շարժում չէր, այլ կազմում էր համաշխարհային հասարակական-քաղաքական, հեղափոխական-ազատագրական շարժման կարևոր և անբաժանելի մասը, որն իր ամբողջ էությամբ ուղղված էր այն ժամանակվա ռեակցիոն ուժերի՝ ճորտատիրական կարգերի և ինքնակալության դեմ: Այդ քաջ գիտակցում էին իրենք՝ դեկաբրիստները և բացարձակորեն խոստովանում դատավարության ժամանակ տված իրենց ցուցմունքներում: Պատահական չէ, որ այն ժամանակվա ֆրանսիական լիբերալների օրգաններից մեկը դեկաբրիզմին տալիս է հետևյալ բնորոշումը.

«Այդ նույնն է, ինչ տեղի է ունենում Ֆրանսիայում, Անգլիայում, Ամերիկայում, Հռոմում և Փարիզում, Մադրիդում և Մեքսիկայում, այսինքն ընդհանուր համաշխարհային շարժում, որն ընդգրկել է նաև Ռուսաստանը» (տե՛ս «Вопросы истории», 1957, № 12, էջ 105):

ՌՈՒՍԱԿԱՆ ցարիզմի՝ համաշխարհային ռեակցիայի այդ պատվարին լուրջ հարված էր դեկաբրիստների ապստամբությունը: Այն սասանեց ցարիզմի հիմքերը և նպաստեց հետագա հեղափոխական-ազատագրական շարժումների զարգացմանը:

Դեկաբրիստական շարժման լենինյան հանճարեղ բնութագրումն ու նրա բազմակողմանի ուսումնասիրությունը սովետական մարքսիստական դեկաբրիստագիտության հիմքն է դրել: Առաջնորդվելով լենինյան հանճարեղ դրույթներով, սովետական դեկաբրիստագիտությունը վերջին տասնամյակների ընթացքում հսկայական աշխատանք է կատարել դեկաբրիստական շարժման պատմության բազմակողմանի ուսումնասիրության գործում:

Նիկոլայ I-ը մինչև իր կյանքի վերջը, երեսուն երկար տարիներ, աքսորում ու բանտերում պահեց դեկաբրիստներին: Բայց նրան չհաջողվեց ընկճել նրանց ըմբոստ ոգին: Նրանք չհրաժարվեցին իրենց գաղափարներից, շատերը նույնիսկ ավելի զարգացրին դրանք: Ակեհեր հեղափոխականները պարծանքով էին հիշում իրենց անցած ուղին: Ապստամբությունից 40 տարի անց դեկաբրիստ Լորերն ասում է. «Քառասուն տարի է անցել այն օրից և ես համարձակորեն կասեմ, որ ոչ մի րոպե, ոչ մի անգամ չեմ զղջացել, որ պատահել է այդպես և ոչ ուրիշ կերպ»:

Հեռավոր աքսորում դեկաբրիստ Ֆոնվիզինը համոզված էր, որ դեկաբրիստների գործը կշարունակվի և հաղթական վախճանի կհասցվի, որ «ռուս ժողովուրդը կոչված է լինել պատմական ժողովուրդ», որ նա «կոչված է իր սարբեր տարրերքներից զարգացնել նոր համաշխարհային իդեա»:

ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 14-ի ապստամբությունից 43 տարի անց, 1868 թ. դեկտեմբերին դողդոջուն ձեռքով, իր մահից մոտ մեկ տարի առաջ գրած նամակում, հայտնի դեկաբրիստ Գորբաչևսկին սրտանց ողջունում է դեկաբրիստների գործի շարունակող նոր սերնդի՝ ռազնոչինցիների հանդես գալը:

«Իմ ոգին և սիրտը միշտ ձեզ հետ է»,—գրում է նա: Եվ, այնուհետև «Մի բան կասեմ առանց պճնանքի ու հավելումների, որ տանը նստած, մենակության մեջ... փառաբանում



եմ այն դեպքը, որ օգնեց ինձ իմ կյանքում և սրտում Ձեզանով փոխարինել իմ նախկին ընկերների կորուստը, որոնց տարել է մահը և որոնց ես սիրում ու շատ հարգում էի: Հանձինս Ձեզ ես հանդիպեցի նրանց, ես ճանաչեցի նրանց, խոսելով Ձեզ հետ ես նորից տեսնում ու լսում եմ նրանց»:

Հեղափոխական սերունդները միշտ վառ են պահել անմահ դեկաբրիստների հիշատակը, նրանց համար միշտ թարմ են հնչել հանճարեղ Պուշկինի խոսքերը՝ ուղղված աքսորավայրում տառապողներին:

Հպարտ ապրեցեք, ո՛վ աքսորյալներ,
Խավար հանքերում հեռու Սիբիրի.
Չի կորչի իզուր աշխատանքը ձեր
Ու ձգտումները ձեր վեհ մտքերի:

Դեկաբրիստների փառավոր գործի շարունակող, Գերցենի մերձավոր զինակից ու բարեկամ Օգարյովը կանխագուշակել էր, որ կգա մի ժամանակ, երբ՝

Կապստամբի մի այլ անեղ վրիժառու
Կապստամբի մի այլ հզոր սերունդ:

Այդ սերունդը Մեծ հոկտեմբերի սերունդն էր, լենինյան սերունդը, որը շատ ավելին արեց, քան երազում էին դեկաբրիստները: Այդ այն սերունդն է, որը դեկաբրիստների սիրած ու փայփայած հայրենիքը, որի համար նրանք զոհեցին իրենց նվիրական կյանքը, դարձրեց ամենահզոր հայրենիք:

Այդ այն սերունդն է, որը ողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության գլուխը կանգնած, փառապանծ կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությամբ, անհողդողդ քայլերով գնում է դեպի կոմունիստական հասարակության շողշողուն գագաթները:



ու զարգացման գործին, նրա ուժերի համախմբմանը տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի ասպարեզներում։

Դեկաբրիստական շարժումը ուներ նաև միջազգային նշանակություն։ Նա մեկուսացված շարժում չէր, այլ կազմում էր համաշխարհային հասարակական-քաղաքական, հեղափոխական-ազատագրական շարժման կարևոր և անբաժանելի մասը, որն իր ամբողջ էությամբ ուղղված էր այն ժամանակվա ռեակցիոն ուժերի՝ ճորտատիրական կարգերի և ինքնակալության դեմ։ Այդ քաջ գիտակցում էին իրենք՝ դեկաբրիստները և բացարձակորեն խոստովանում դատավարության ժամանակ տված իրենց ցուցմունքներում։ Պատահական չէ, որ այն ժամանակվա ֆրանսիական լիբերալների օրգաններից մեկը դեկաբրիզմին տալիս է հետևյալ բնորոշումը.

«Այդ նույնն է, ինչ տեղի է ունենում Ֆրանսիայում, Անգլիայում, Ամերիկայում, Հռոմում և Փարիզում, Մադրիդում և Մեքսիկայում, այսինքն ընդհանուր համաշխարհային շարժում, որն ընդգրկել է նաև Ռուսաստանը» (տե՛ս «Вопросы истории», 1957, № 12, էջ 105)։

ՌՈՒՍԱԿԱՆ ցարիզմի՝ համաշխարհային ռեակցիայի այդ պատվարին լուրջ հարված էր դեկաբրիստների ապստամբությունը։ Այն սասանեց ցարիզմի հիմքերը և նպաստեց հետագա հեղափոխական-ազատագրական շարժումների զարգացմանը։

Դեկաբրիստական շարժման լենինյան հանճարեղ բնութագրումն ու նրա բազմակողմանի ուսումնասիրությունը սովետական մարքսիստական դեկաբրիստագիտության հիմքն է դրել։ Առաջնորդվելով լենինյան հանճարեղ դրույթներով, սովետական դեկաբրիստագիտությունը վերջին տասնամյակների ընթացքում հսկայական աշխատանք է կատարել դեկաբրիստական շարժման պատմության բազմակողմանի ուսումնասիրության գործում։

Նիկոլայ I-ը մինչև իր կյանքի վերջը, երեսուն երկար տարիներ, աքսորում ու բանտերում պահեց դեկաբրիստներին։ Բայց նրան չհաջողվեց ընկճել նրանց ըմբոստ ոգին։ Նրանք չհրաժարվեցին իրենց գաղափարներից, շատերը նույնիսկ ավելի զարգացրին դրանք։ Ալեհեր հեղափոխականները պարծանքով էին հիշում իրենց անցած ուղին։ Ապստամբությունից 40 տարի անց դեկաբրիստ Լորերն ասում է. «Քառասուն տարի է անցել այն օրից և ես համարձակորեն կասեմ, որ ոչ մի րոպե, ոչ մի անգամ չեմ զղջացել, որ պատահել է այդպես և ոչ ուրիշ կերպ»։

Հեռավոր աքսորում դեկաբրիստ Ֆոնվիզինը համոզված էր, որ դեկաբրիստների գործը կշարունակվի և հաղթական վախճանի կհասցվի, որ «ռուս ժողովուրդը կոչված է լինել պատմական ժողովուրդ», որ նա «կոչված է իր տարբեր տարրերից զարգացնել նոր համաշխարհային իդեա»։

ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 14-ի ապստամբությունից 43 տարի անց, 1868 թ. դեկտեմբերին դողդոջուն ձեռքով, իր մահից մոտ մեկ տարի առաջ գրած նամակում, հայտնի դեկաբրիստ Գորբաչևսկին սրտանց ողջունում է դեկաբրիստների գործի շարունակող նոր սերնդի՝ ռազնոչինցիների հանդես գալը։

«Իմ ոգին և սիրտը միշտ ձեզ հետ է»,—գրում է նա։ Եվ, այնուհետև «Մի բան կասեմ առանց պճնանքի ու հավելումների, որ տանը նստած, մենակության մեջ... փառաբանում եմ այն դեպքը, որ օգնեց ինձ իմ կյանքում և սրտում Ձեզանով փոխարինել իմ նախկին ընկերների կորուստը, որոնց տարել է մահը և որոնց ես սիրում ու շատ հարգում էի։ Հանձինս Ձեզ ես հանդիպեցի նրանց, ես ճանաչեցի նրանց, խոսելով Ձեզ հետ ես նորից տեսնում ու լսում եմ նրանց»։



Հեղափոխական սերունդները միշտ վառ են պահել անմահ դեկաբրիստների հիշատակը, նրանց համար միշտ թարմ են հնչել հանճարեղ Պուշկինի խոսքերը՝ ուղղված աքսորավայրում տառապողներին։

Հպարտ ապրեցեք, ո՛վ աքսորյալներ,
Խավար հանքերում հեռու Սիբիրի.
Չի կորչի իզուր աշխատանքը ձեր
Ու ձգտումները ձեր վեհ մտքերի։

Դեկաբրիստների փառավոր գործի շարունակող, Գերցենի մերձավոր զինակից ու բարեկամ Օգարյովը կանխագուշակել էր, որ կգա մի ժամանակ, երբ՝

Կապստամբի մի այլ ահեղ վրիժառու
Կապստամբի մի այլ հզոր սերունդ։

Այդ սերունդը Մեծ հոկտեմբերի սերունդն էր, լենինյան սերունդը, որը շատ ավելին արեց, քան երազում էին դեկաբրիստները։ Այդ այն սերունդն է, որը դեկաբրիստների սիրած ու փայփայած հայրենիքը, որի համար նրանք զոհեցին իրենց նվիրական կյանքը, դարձրեց ամենահզոր հայրենիք։

Այդ այն սերունդն է, որը ողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկության գլուխը կանգնած, փառապանծ կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությամբ, անհողդողդ քայլերով գնում է դեպի կոմունիստական հասարակության շողշողուն գագաթները։



# Մեր ժամանակի ԱՄԲԻՈՆ



## ԿՅԱՆՔՆ Է ՊԱՀԱՆՋՈՒՄ

Ս. ԱՐՈՒՏՉՅԱՆ

Հայկական ՍՍՀ ժողովրդական նկարիչ

Մեր տեսողական վերլուծությունը հնարավորություն է ընձեռում չափազանց նուրբ ու լիարժեք պատկեր կազմելու մեզ շրջապատող աշխարհի մասին: Կերպարվեստագետը վերարտադրում է իր տեսածը և նրա ստեղծագործական հաջողության գրավականն անշուշտ հենց այն է, թե նրա ստեղծած գործը որքան արագ է արձագանք գտել դիտողների մեջ և թե արդյոք հարուցե՞լ է համապատասխան մտքեր ու հույզեր: Բայց կերպարվեստագետը սոսկ չի վերարտադրում իրեն շրջապատող միջավայրը, այլև նպատակասլաց ու գործուն ուժ է հաղորդում իր ստեղծած կերպարներին, դրանց միջոցով նա մեծապես նպաստում է մարդկանց քաղաքական ու գեղագիտական հայացքների ձևավորմանը:

Դիտողական ագիտացիայի այլևայլ տեսակների և հատկապես քաղաքական պլակատի արվեստը ամենից ավելի համոզիչ կերպով է հաստատում վերոհիշյալ ճշմարտությունը: Հայտնի է, որ գաղափարապուրկ, դժգույն ու անարտահայտիչ ստեղծագործությունները չեն հարուցում և ոչ մի հույզ: Մարդիկ վրդովված անցնում են դրանց կողքով: Ահա թե ինչու անչափ կարևոր է դիտողական ագիտացիայի ճիշտ կազմակերպումը: Սկսած ամենահասարակ ռեկլամից այդ ագիտացիայի բոլոր գործերի գաղափարական-գեղարվեստական լիարժեքությունը մեծապես կախված է կերպարվեստի արտահայտիչ ու լակոնիկ լեզվից: Կերպարվեստի գործերն անվերապահորեն պետք է դյուրամատչելի, գրավիչ և միաժամանակ կոնկրետ կերպով հասցեագրված լինեն:

Դիտողական ագիտացիայի ստեղծագործությունների ճիշտ հասցեագրումը առաջնահերթ նշանակություն ունի: Դատարկ կրակոցներ պետք է համարել բոլոր այն գործերը, որոնք կոնկրետ չեն, որոնք բխում են իրականության սոսկ հայեցողական ընկալումից: Այս բանն առանձնապես վերաբերում է քաղաքական պլակատին: Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից պլակատը ոչ միայն լայնորեն տարածվեց մեր երկրում, ոչ միայն դարձավ ժողովրդին սիրելի արվեստի ձևերից մեկը, այլև դարձավ մեր կուսակցության հատու զենքը, քաղաքական ագիտացիայի ամենամարտական միջոցներից մեկը: Կուսակցությունը մշտապես հետևել ու հետևում է կերպարվեստի այդ կարևոր ժանրի զարգացմանը: Կուսակցությունը պլակատի միջոցով զրուցում է ժողովրդի հետ, մոբիլիզացնում է նրա ուժերը թշնամու դեմ պայքարելու, մարդկության լուսակերտ ապագան՝ կոմունիստական հասարակարգը կառուցելու համար:

### ԵՐԳԻԾԱՆՔԸ ԼՈՒՐՋ ԳՈՐԾ Է

Իրականությունից կտրված լինելը, երևույթի էությունն անտեսելը անխուսափելիորեն նսեմացնում է գեղարվեստական կերպարը: Սովետական մարդն ուզում է պլակատի մեջ տեսնել ինքն իրեն, իր ավնիվ աշխատանքն ու իր ակնկալությունները, տեսնել ու ճանաչել պատերազմի հրձիգների արգահատելի դեմքերը, ցանկանում է իրեն տեսնել խաղաղության համար մղվող պայքարի հորձանուտում և, վերջապես, սովետական մարդը ցանկանում է լիաթոք ծիծաղել: Սակայն պետք է ասել, որ անգամ կերպարվեստագետների ու գեղագետների, հրատարակչությունների դիրեկտորների և թերթերի ու ամսագրերի խմբագիրների մեջ պատահում են նաև այնպիսիները, որոնք թերագնահատում են քաղաքական երգիծանքի ու մարտական հումորի ժանրը, իսկ ոմանք էլ բացահայտ «դատական գործ» են համարում ցցուն, վառ ու համարձակ վրձնած ընկերական շարժերը:

Վ. Ի. Լենինը միշտ էլ բարձր է գնահատել սատիրան և ըստ արժանվույն նշել է երգիծական այս կամ այն գործի նշանակությունը: Պ. Ն. Լեպեշինսկին իր հիշողությունների մեջ պատմում է այն մասին, թե որքան մեծ բավականություն էին պատճառում Վլադիմիր Իլյիչին ծաղրանկարները, թե որքան վարակիչ ու լիաթոք է նա ծիծաղել մենշևիկներին մերկացնող «Թե ինչպես մկները թաղեցին կատվին» ծաղրանկարի վրա:

Երգիծանքը, դժբախտաբար, հարգի չէ նաև մեր հանրապետության կինո և հեռուստատեսային ստուդիաներում: Ինչո՞ւ, օրինակ, այնտեղ ձեռնամուխ չեն լինում մուլտիպլիկացիոն այնպիսի կարճամետրաժ կինոնկարների արտադրությանը, որոնք կոնկրետ կերպով խարազանեն մեր թերությունները և դրանց կրողներին:

Բարեբախտաբար, Հայաստանի նկարիչների միությունը այս տարի որոշել է վերականգնել մի ժամանակ տրադիցիոն դարձած «Ագիտ պատուհանների» հրատարակությունը: Արդեն ստեղծված է պլակատի նկարիչների համերաշխ մի կոլեկտիվ, ներգրավված են նաև այն գրողները, որոնք վգալի ավանդ ունեն այդ ժանրում:

Ցանկալի կլիներ, որ հումորը անհամեմատ ավելի լայնորեն տարածվեր ու ծավալվեր նաև մեր պատի թերթերի էջերում: Երգիծանքն ու հումորը ոչ միայն թարմություն են մտցնում, այլև բացահայտում են անցյալի մնացուկները և մեր առաջընթացին խանգարող այլանդակ երևույթները:

### «ՑՈՒՑԱՆՈՂ ՁԵՌՔԸ» ՈՉԻՆՉ ՑՈՒՅՑ ՉԻ ՏԱԼԻՍ

Սովետական կերպարվեստի տրադիցիաները խարսխված են նախ և առաջ մեր առաջավոր գաղափարախոսության վրա: Այնուհետև մեր արվեստին խորթ են արդեն ստեղծված կերպարների կրկնումները, էպիգոնությունն ու միևնույն թեմայի անվերջ վարիացիաները, այսպես կոչված նորաբարական սեթևեթանքները և այլն:

Մեր քաղաքական պլակատն ապրել է իր հաջորդական զարգացումը: Սկսած Ռոստայի պատուհաններից մինչև ագիտպատուհանները մենք տեսնում ենք մի անընդմեջ շարժում, զարգացում դեպի ստեղծագործական նորանոր բարձունքները, որոնք հնարավորություն են տալիս ավելի լրիվ մարմնավորելու արդիականության առաջադիմական գաղափարները:

Պլակատների արդեն սովորական դարձած ստանդարտներն այսօր չեն կարող բավարար չափով խաղալ իրենց դերը:

Նրանք ոչ մի հույզ չեն առաջացնում դիտողների մեջ, որոնք շատ հաճախ միայն հեգնանքներ են հղում դրանց ստեղծողների հասցեին: Սա վերաբերում է հատկապես զանազան կամպանիաների թեմաներով պատրաստած պլակատներին, լինեն դրանք նախընտրական պլակատներ, որոնց վրա անխուսափելիորեն միայն ընտրական բյուլետեններ են բարձրացված, կամ թե Մայիսի մեկի, մարտի 8-ի կապակցությամբ ամեն տարի արտադրվող «ծաղկապարդ» պլակատները, նոր տարվա պլակատներն անխուսափելի ձմեռ պապի նկարով և այլն:

Անշուշտ պետք է արդեն պասսիվ կամ բթացած զենք համարել և արխիվ հանձնել ամեն տեսակ «ցուցանող» կամ վեր բարձրացրած ձեռքերը, շինարարական չոր ու ցամաք պեյզաժների ֆոնի վրա միանման ժպտացող դեմքերը և այլն:

Բայց մյուս կողմից էլ մեծ վտանգ կարող են ներկայացնել նաև ռեբուսային պլակատները, որոնք կարծես արտանկարված են արևմտյան ամենավատ աբստրակտ ռեկլամներից: Այդ կարգի «արվեստի» ներկայացուցիչների մասին ժամանակին բավականին դիպուկ և ճշմարտացի արտահայտվել է Վ. Մայակովսկին:

### ԱՇԽԱՏԱՆՔԻ ՃԻՇՏ ԳՆԱՀԱՏՈՒՄԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՊԱՀԱՆՋՆ Է

Պակաս կարևոր նշանակություն չունի քաղաքական պլակատի նկարչի աշխատանքի գնահատումը: Դժբախտաբար, պետգնահատող հանձնաժողովները, հրատարակչությունները, ՍՍՀՄ գեղֆոնդի նորմատիվները ոչ միշտ են ճիշտ ու արդարացի կերպով որոշում նկարչի վարձատրության չափը: Երբեմն այնպես է պատահում, որ կենդանագրական կամ քանդակագործական որևէ անտաղանդ գործ կամ զարդարանք մի քանի անգամ ավելի բարձր է գնահատվում, քան քաղաքական պլակատը: Դրանով իսկ անհանդուրժելի կերպով նսեմացվում է պլակատի նկարչի ստեղծագործական պրոցեսը: Հենց դրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ քաղաքական պլակատի շատ նկարիչներ հարկադրված են լինում հրաժեշտ տալ իրենց սիրելի այդքան վսեմ ժանրին և ոտք դնել հեշտ վաստակի ճանապարհը, մի ճանապարհ, որը տքնաջան աշխատանք ու մտավոր բեռնվածություն, առավել ևս՝ քաղաքական լայն մտահորիզոն չի պահանջում:

Գրեթե բոլոր հրատարակչությունները և կոմբինատները առաջնորդվում են մեկ ընդհանուր օրենքով, այն է՝ քաղաքական պլակատի ստեղծումը երաշխավորված չէ ոչ մի պայմանագրով:

Կերպարվեստագետը պետք է քննարկման ներկայացնի արդեն պատրաստի նմուշը, իսկ մերժման դեպքում պատվիրատուն ոչ մի պարտավորություն չի կրում նկարչի հանդեպ: Բայց ահա պբոսայգու ինչ որ սովորական ջրավազանի ձևավորումը կատարվում է պայմանագրի հիման վրա, տրվում է կանխավճար և մարդիկ նորմալ աշխատում են: Դժվար թե դա արդարացի համարվի:

## ՊԼԱԿԱՏԻ ՆԿԱՐԻՉՆԵՐԸ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ

Վերջապես ահա ստեղծված է միանգամայն լավ պլակատի բնագիրը: Հետաքրքրական ու համարձակ կոմպոզիցիա: Վառ ու համոզիչ կերպարներ: Գեղարվեստական խոսքը լակոնիկ է և դիպուկ: Վարագույրը բարձրացված է... և սկսվում է մի քանի գործողությունից բաղկացած «համաձայնեցում» կոչվող ներկայացումը: Երկար ու բարակ, հաճախ ոչ կոնկրետ ու ձգձգված խոսակցություններ: Ինստանցիաներ, ինստանցիաներ և ինստանցիաներ: Ամեն մեկը, թե՝ հրատարակչության ղեկավարությունը, թե՛ գեղարվեստական խորհուրդը, թե՛ գլավլիտը ու այլ օղակներ հայտնում են իրենց կարծիքները, իհարկե, խորհուրդներ են տալիս, դիտողություններ են անում և երբեմն էլ հրամայում: Մեկ էլ ահա պարզվում է, որ պլակատը հնացել է, թեման ծամծմված է ու ոչ մի հրատապ կարևորություն չունի: Հեղինակը հիասթափված է: Եվ այդ ամենը հետևանք է տեղի ու անտեղի հրավիրված անվերջ նիստերի: Բայց պատահում է, որ պլակատը, թեկուզ և ուշացումով, բայց և այնպես լույս աշխարհ է գալիս: Հեղինակին շնորհավորում են: Բայց ամենագլխավորը դեռ առջևումն է: Տպված պլակատների տարածումը երբեմն հանձնարարվում է բոլորովին անձեռնհաս մարդկանց: Պլակատները փակցնելու գործը նույնպես որոշ դժվարությունների հետ է կապված. չկան հատուկ վահանակներ, ցուցանակներ և այլն: Այլ կերպ ասած՝ պլակատային ստեղծագործությունը չի հասնում դիտողին, նա ծնվում է ու մեռնում: Հետո ի՞նչ է պատահում բնագրի հետ: Քաղաքային թանգարանները, պատկերասրահները կամ կուլտուրայի տները պլակատների բնագրերը «պահում են» ամենախոր նկուղներում, հարստացնելով մկների կերակրաբաժինը:

Իսկ ի՞նչ են անում մեր պաշտոնական գեղագետ քննադատները: Նրանք պարզապես շրջանցում են այդ թեման: Պլակատները նրանց բոլորովին չեն հետաքրքրում: Շատ ավելի հետաքրքրական է ինչ որ պեյզաժի կոլորիտի կամ ինչ որ միջնադարյան կարդանկարի առաջացման պատմության մասին խոսելը:

Միութենական հանրապետություններում դժվար թե գտնվի մի հատուկ մենագրություն, որը նվիրված լինի պլակատին, իսկ պարբերական մամուլում մեկ-մեկ լույս են տեսնում ստանդարտ բնույթի «ղեկավար» հոդվածներ ամպագորգոռ վերնագրերով՝ «Լայն ճանապարհ պլակատին», «Ամբողջ ուժերը...», «Մասսաները սպասում են...» և այլն, և այլն:

Նման ոչ էական ու ոչ կոնկրետ հոդվածների համար հեղինակը ստանում է իր հոնորարը, իսկ խմբագիրն էլ համապատասխան սյունակում կատարում է իր նշումը:

Սակայն, վերջապես, ե՞րբ պետք է քաղաքական պլակատի ստեղծումը, տարածումը և մասսայականացումը տնօրինող մարդիկ հասկանան, որ հաճախ հենց իրենց մեղքով է տապալվում այդքան կարևոր, համաժողովրդական գործը:



Սովետական նշանավոր կերպարվեստագետ Վիկտոր Սեմյոնովիչ Իվանովը «Ագիտատոր» ամսագրի էջերում շատ կարևոր մտքեր է հայտնել քաղաքական պլակատի մասին: Նրա հոդվածն անշուշտ լայն արձագանք կգտնի մեր հասարակայնության մեջ: Սակայն անհրաժեշտ է, որ դրան առաջին հերթին արձագանքեն ու համապատասխան գործնական հետևություններ անեն քաղաքական պլակատի գործը տնօրինողները:

Իսկ մենք՝ կերպարվեստագետներս, միշտ էլ պատրաստ ենք ըստ արժանվույն կատարելու կուսակցության հանձնարարած այդ մեծ ու լուրջ գործը:





# ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԴՊՐՈՑՈՒՄ

(ՄԻ ՔԱՆԻ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆ)

*Հայ գրականության դասավանդման նպատակը, նրա գլխավոր խնդիրն է՝ ծանոթացնել աշակերտներին մայրենի գրականությանը, լավագույն նմուշների ուսումնասիրության միջոցով սեր հարուցել նրա հանդեպ, արթնացնել ազնիվ զգացումներ, բարոյական վսեմ ըմբռնումներ և կրթել գեղեցկի ճաշակ, հարստացնել աշակերտների լեզուն՝ բարձրացնելով նրանց բանավոր ու գրավոր խոսքի մշակույթը և, այսպիսով, կարևոր ներդրում կատարել նոր սերնդի բարոյա-հոգեկան և գաղափարական դաստիարակության գործում:*

*Հայ գրականությունը մեզ մոտ ավանդվում է հինգերորդ դասարանից և, ըստ ծրագրի, ամբողջացվում ավարտական դասարանում:*

*Իսկ ինչպե՞ս է ընթանում, ի՞նչ է տալիս աշակերտներին գրականության դասը մեր դպրոցում ներկայումս: Այսպիսի հարցադրումը կարող է ոչ այնքան էլ օրինաչափ թվալ. չէ՞ որ դասի բնույթը որոշում են ո՛չ միայն ծրագիրն ու դասագրքերը, այլև ուսուցիչները, իսկ ուսուցիչները տարբեր զարգացման, այլազան խառնվածքի ու նախասիրությունների տեր մարդիկ են:*

*Իրոք, ուսուցիչներից ոմանք ինքնուրույն, մտածված, նույնիսկ հուզաթաթավ ու ոգեշունչ խոսքով «ներկայացնում են» աշակերտներին ուսումնասիրվելիք երկերը, մանավանդ իրենց սիրած հեղինակների գործերը, տրամադրում ամենայն խորությամբ ընկալել, ըմբռնել, զգալ դրանց գեղեցկությունը: Այս դեպքում սիրվում է թե՛ ուսուցիչը, թե՛ գրականությունը:*

*Ուրիշները, բազմակողմանի տեղեկություններ հաղորդելով այս կամ այն հեղինակի ու նրա երկերի մասին, գտնելով ու իրենց սաներին «հանձնելով» նրանց ինքնատիպության (մասնավորապես լեզվական յուրահատկությունների) բանալին, զարկ են տալիս աշակերտների ինքնուրույն մտքին և հետաքրքրասիրությանը: Այս դեպքում ևս գրականությունը մնում է հետաքրքրական առարկա, որով աշակերտները լրջորեն զբաղվում են նաև դասերից հետո՝ տանը, գրական խմբակներում:*

*Ունենք ուսուցիչներ, որոնք կարդում և արտասանում են գեղեցիկ ու արտահայտիչ և իրենց օրինակով վարակում նաև աշակերտներին. աշակերտներն իրենք ևս զգում, սիրում են գեղարվեստական խոսքը, առօրյա ընթերցանության միջոցին որոնում և ընկալում են գեղեցիկը, և ընդմիշտ հոգեպես կապվում գրականության հետ իբրև ջերմեռանդ, նվիրված ընթերցողներ:*

*Հարգանքով ու նույնիսկ ակնածանքի զգացումով հիշելով հայ գրականության այդպիսի ուսուցիչների (որոնց դասերը առիթ ենք ունեցել լսելու Հայաստանի զանազան վայրերում), տհաճությամբ անդրադառնում ենք այն իրողությանը, որ կա այնուամենայնիվ գրականության դասի մի այլ՝ ստանդարտ, միապաղաղ տիպ, որն ավելի հաճախ հանդիպած լինելով մեզ, քողարկում է, ծածկում է մեր աչքից նաև այն ոգեպարար գեղեցկությունը, երբ մարդ գործ ունի ուսուցչի իսկական ստեղծագործության, արտաբուխ ոգևորության, այսինքն՝ ճշմարիտ մանկավարժության հետ:*

*Այսպես. գրականության դաս է կուլտուրապես զարգացած, ուսումնական աշխատանքի բարի համբավ ունեցող մեր քաղաքներից մեկի առաջավոր մի դպրոցում: Ուսուցչուհին ավելի քան տասնհինգամյա փորձառության տեր մի մանկավարժ է:*

*Տասներորդ դասարանում պատասխանում են*

---

Տպագրելով սույն հոդվածը՝ հրավիրում ենք մանկավարժներին արտահայտվել այս հարցի շուրջ: Խմբ.:

անցյալ դասին տրված նյութը— հին գյուղը Ա. Բակունցի պատկերմամբ:

Հազիվ երեք-չորս հոգի պատասխանել են, և դասարանում տիրող ձանձրույթը արդեն դժվար է հաղթահարել... Վերջապես ուսուցչուհին պատմում է նոր դասը՝ «Նամակ ռուսաց թագավորին», և տեղն ու տեղը սկսում հարցեր տալ: Ոմանք կարդացել են պատմվածքը, բայց տրրվող հարցերն այնպիսիք են, որ պատասխանները ևս շարունակ պտտվում են նույն առանցքի շուրջը— հեղինակն իր պատմվածքում մերկացրել է ցարական անխիղճ պաշտոնյաներին, իր գրվածքում տվել հայ գյուղացու չարքաշ կյանքի բնութագիրը...

Հայ գրականության դաս է այդտեղից հարյուրավոր կիլոմետրերով հեռու, մի այլ քաղաքատիպ շրջկենտրոնի դպրոցում: Իսահակյան են անցնում: «Ամփոփում» են Աբու-Լալա-Մահարին... Աշակերտները մեկնաբանում են պոեմը. բանաստեղծը փախուստ է տվել «ռեակցիայից»: Նա ժխտում է հասարակությունն ու հասարական կյանքը, որովհետև այն ժամանակ «ռեակցիան էր թագավորում» և այլն:

Հաջորդ անգամ այս նույն դասարանում անցնում են «Համբերանքի չիբուխի» առաջին մասը. Հանձնարարվում է տանը պատրաստել երկրորդ մասը: Ու, թեև առավոտ է, օդը զով է ու մաքուր այս բարձրանիստ վայրում, աշակերտներն էլ աշխույժով լի էին, երբ նոր էին եկել, շուտով այստեղ ևս թագավորում է ձանձրույթը:

Կարճառոտ պատմություն (պատմվածքի «բովանդակությունը») և միօրինակ դատողություններ հանգում (պատմվածքի «գաղափարական իմաստը»)—այս է ամբողջը: Մի անցողիկ աշխուժություն է զգացվում, երբ ուսուցչուհին գրատախտակի վրա գրել է տալիս մի քանի բառերի բացատրությունը և առաջարկում արտագրել բառատետրերում: Մնացած ժամանակն անցնում է նույն տարտամ ու ծամծմված հասկացողությունների կրկնությամբ և ամբողջ պարապմունքը հանգեցվում անօգտակար, շահեկան ու գրավիչ ոչինչ չպարունակող մտավոր մարզանքի:

Ահա հենց այդ գորշ ստանդարտից է, որ պետք է ազատվենք, եթե ցանկանում ենք, որ մեր գեղեցիկ գրականությունը թափանցի պատանեկության սիրտը, ազնվացնի նրա հոգին, մարզի նրա բնավորությունը, հարստացնի նրա միտքը:

Բայց չէ՞ որ դա գրականության դաս չէ, — կասեք դուք: Այո՛, այդպես է:

Իսկ միթե՞ իրենք՝ ուսուցիչները, մասնագիտական կրթություն, հաճախ տասնամյակների մանկավարժական փորձ ունեցող ուսուցիչները չեն գիտակցում այդ: Դաս լսելիս այս հարցը, ի դեպ, հաճախ է հառնել մեր առաջ և շատ անգամ առիթ ենք ունեցել ուղղակի առաջարկելու այն իրենց՝ ուսուցիչներին: Որքան էլ ցավալի է, ոմանք չեն գիտակցում այդ: Ավելի ճիշտ ժամանակի ընթացքում վարժվելով այդօրինակ դասավանդմանը, նրանք այլ կերպ չեն էլ պատկերացնում դասը: Նույնիսկ վրդովվում են, երբ «արտասովոր» պահանջ է առաջադրվում իրենց, և տեղն ու տեղը մատնացույց են անում ծրագիրն ու դասագիրքը... Եթե կուզեք, հենց սա է ամենացավալին. նրանք կորցրել են գրականության՝ իբրև արվեստի և իբրև դպրոցական առարկայի զգացողությունը. նրանք կորցրել են նաև մանկավարժի զգացումը, մանկավարժ, որը պատասխանատու է աշակերտների ուսուցման, հոգեկան կաղապարման, գեղագիտական դաստիարակության համար:

Ոմանք գիտակցում են, որ դա լավ չէ, ստանդարտացված, կոնկրետ երկերի բազմապիսի յուրահատկություններից «ձերբազատված», նաև բովանդակազրկված այդ «գրականությունը». գիտակցում են, որ այդպիսի դասերը չեն տալիս աշակերտներին այն, ինչ կոչված են տալու: Երբ նրանց ուշադրությունն ենք հրավիրում այդ իրողության վրա, նրանք ևս մատնացույց են անում ծրագիրն ու դասագրքերը, բայց ոչ իբրև ինքնարդարացման միջոց, այլ տխրությամբ, գանգատով: Նրանք գիտեն, որ այդ լավ չէ և կցանկանային, անշուշտ, ազատվել ժամանակի ընթացքում որդեգրած իրենց սովորույթից: Բայց դա քչերին է հաջողվում առայժմ: Ընդհակառակը, պատահում է, տարիներ հետո նորից դաս ես լսում այսպիսի մի ուսուցչի մոտ ու ցավով մտածում. էլի էն ջուրը՝ էն ջրաղացը:

Երկու հանգամանք դեր են խաղում այստեղ: Նախ՝ իներցիայի ուժը. այդպես եղել է, այդպես էլ «գնում է»: Երկրորդ՝ ակնհայտ, անվիճելի այն իրողությունը, որ վերոհիշյալ ձևով անցնել «ծրագրային նյութը» շատ ավելի հեշտ է, քան գրականություն դասավանդել, այսինքն ոչ թե գրվածքի բովանդակությունը սխեմատիկորեն վերապատմել տալով սոսկ «գլխի գցել», թե ինչ է ուզում ասել հեղինակը, այլ բազմակողմանիորեն պարզել ամեն մի երկի յուրահատկությունը՝ լեզվի, ոճի, պատկերների, արտահայտչական միջոցների, տրամաբանական կառուցվածքի, հոգեբանական բախումների վերլուծման միջոցով և այլն: Այո՛, այս երկուսը իրենց բնույթով միանգամայն տարբեր զբաղմունքներ են: Ուսուցիչներից շատերը, ցավոք սրտի, ներկայումս նույնիսկ անպատրաստ են երկրորդի համար: Ոմանք տարիներ շարունակ չզգալով բարձրագույն դպրոցում ձեռք բերած իրենց ունակություններից օգտվելու կարիքը, կորցրել են դրանք: Ուրիշներն էլ գերադասում են գնալ, կամ հակառակ իրենց կամքի, ընթանում են թույլ դիմադրության ուղիով, մանավանդ որ հակազդեցության չեն հանդիպում: Լուսավորության ցանցի շրջանային աշխատողների շարքում այսօր ևս քիչ չեն այնպիսիները, որոնց լիովին գոհացնում է վերոհիշյալ տրաֆարետը գրականության ժամերին:

Ճի՞շտ է արդյոք, որ հայ գրականության դասավանդման ներկա անբավարար վիճակի պատճառները պետք է որոնել նաև դպրոցական ծրագրերի և դասագրքերի մեջ:

Իրոք, ինչպիսի՞ն են ծրագիրն ու դասագրքերը, ինչպիսի՞ն է գրականության դասընթացը ներկայումս և ինչպիսի՞ն պետք է լինի, որպեսզի այդ առարկան լիարժեք դրսևորի իր ուսումնական ու դաստիարակչական հնարավորությունները:

Նախ՝ ծրագրի մասին: Տասնամյակների ընթացքում քիչ բան չի արված հայ գրականության դպրոցական ծրագիրը հարստացնելու և ժամանակի պահանջներին համարեցնելու համար: Այդ ճիշտ է: Բայց այստեղ մեզ զբաղեցնում են նրա այն կողմերը, որոնք այսօր էլ շարունակում են խանգարել դպրոցական դասընթացի մանկավարժական արգասավորությանը:

Մի կողմ թողնենք V—VI դասարանների թեմատիկ խմբավորման սկզբունքով կառուցված ծրագիրը:

VII և VIII դասարաններում ընդունված է ժամանակագրական հաջորդականության կարգը. այս նույն սկզբունքով է կառուցված նաև բարձր դասարանների ծրագիրը: Ժամանակագրական հաջորդականություն ասելով պետք է հասկանալ, անշուշտ, այնպիսի մի վիճակ, երբ ուսուցիչը (և աշակերտը) գործ ունեն ոչ թե առանձին գեղարվեստական երկերի, այլ հեղինակների, նաև իրար փոխհաջորդող պատմական ժամանակաշրջանների, գրականության զարգացման էտապների հետ:

Այդպես էլ է: Եվ այս «սկզբունքի» կիրառումը ինքնին արդեն առաջ է բերում որոշ կրկնություններ: Ահա յոթերորդ դասարանի ծրագիրը. Աբովյան, Նալբանդյան, Պատկանյան, Դուրյան, Պռոշյան, Աղայան, Րաֆֆի. այս հեղինակներին տրամադրված է 33 ժամ: Ահա իններորդ դասարանի ծրագիրը. Աբովյան, Նալբանդյան, Պատկանյան, Դուրյան, Պռոշյան, Աղայան, Րաֆֆի. ընդամենը 40 ժամ: Այսպիսով, երկու տարի չանցած, աշակերտները նորից նույն հերթականությամբ անցնում են նույն հեղինակները, ընդ որում ուսումնասիրվող երկերը ևս մեծ մասամբ (Աբովյանի, Նալբանդյանի, Պատկանյանի և Պռոշյանի) նույնն են: Ոչ միայն մանկավարժական առումով, այլև մարդկային պարզ բանականության տեսակետից, թող ներվի մեզ ասել, սա անհեթեթ վիճակ է, առավել ևս, եթե նկատի ունենանք աշակերտության ծանրաբեռնվածությունը և դպրոցական ամեն մի ժամ ռացիոնալ տնօրինելու սուր անհրաժեշտությունը:

Ուշադիր ծանոթացեք այս դասարանների ծրագրին և կտեսնեք, որ այնտեղ շատ անգամ անտեսվում է և մի այլ բան. ուսուցանվող նյութի ըմբռնելիությունը տվյալ տարիքի երեխաների համար, ինչպես և լեզվական զարգացման նրանց մակարդակին համապատասխան լինելու պարտադիր սկզբունքը:

Մինչդեռ հատկապես գրականության (իբրև դպրոցական առարկայի) վերաբերյալ պետք է առաջադրվի նաև երկրորդ, ոչ պակաս կարևոր պահանջը, որպեսզի ուսուցանվող երկը (կամ հատվածը) մատչելի լինելով, միևնույն ժամանակ հետաքրքրական լինի տվյալ հասակի երեխաների համար և անպայման հուզի նրանց: Այս պահանջներն, ահա, հաճախ անտեսվել են միջին դասարանների ծրագրերն ու դասագրքերը կազմելիս:

Այդ զգալի չափով վերաբերում է նաև հայ գրականության եռամյա դասընթացին՝ բարձր դասարաններում:

Դառնանք, սակայն, հայ գրականության «գործող» դասագրքերին:

Բարձր դասարանների երեք դասագրքերից մեր կարծիքով, ավելի մշակվածն է առաջինը՝ հնադարյան էպոսից մինչև Րաֆֆի և Հակոբ Պարոնյան: Ավելի ամփոփ, հստակ և ամբողջացված են հին և միջնադարյան գրականությանը նվիրված բաժինները: Ընդհակառակը, ներածությունը և գրականության զարգացման տարբեր էտապների բնութագրությունները դժվարամարս են, տեղ-տեղ նույնիսկ ճոռոմ լեզվով գրված: Գրքի մոտ երկու երրորդն, այնուամենայնիվ, նվիրված է XIX դարի գրականությանը. այստեղ գերազանցապես պատմված է ուսումնասիրվող երկերի բովանդակությունը և, բնականաբար, խիստ համառոտ բնութագրված են կերպարները: Այս կամ այն հեղինակի արվեստի (ներառյալ՝ լեզվի) յուրահատկության բնութագրումը շատ աննշան տեղ է գրավում:

Երկրորդ գիրքը (Շիրվանզադեից մինչև Վահան Տերյան) իր բնույթով ավելի պատմա-գրականագիտական է: Երբ ժամանակաշրջանի և սոցիալական հարաբերությունների ընդհանուր բնութագրությունից հեղինակն անցնում է գրողների կենսագրությանն ու ստեղծագործությանը, հանդիպում ենք կրկնվող մտքերի թե՛ նույն գրվածքի և թե տարբեր գրվածքների առնչությամբ (որ. Շիրվանզադեին նվիրված գլխում), անկախ նրանից, թե ինչպես է վերնագրված տվյալ ենթաբաժինը. վեպի գաղափարական արժեքը, սյուժեն, կոմպոզիցիան, կերպարները.

## ՄԱՄՈՒԼԻ ԷՋԵՐԻՑ

# ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆ ՎԻՃԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

Վերջերս տարբեր երկրների, ինչպես և Սովետական Միության մամուլում հաճախ են անդրադառնում գերբնակչության պրոբլեմին։ Այդ կենսաքրքիր հարցի վերաբերյալ *«Литературная газета»*-ում հանդես է եկել ակադեմիկոս Ստանիսլավ Ստրումիլինը։ Ստրումիլինի հայացքները համոզիչ են և փաստերով լի։ Ահա ինչ է գրում նա տվյալ խնդրի մասին։

Ելնելով ծննդաբերության ներկա նորմաներից, սպասվում է, որ մոտակա 35 տարում կրկնապատկվելու է աշխարհի բնակչության թիվը։ Սակայն մի՞թե դա սոսկալի է։ Ինչպես հայտնի է, 1965 թվականի սկզբին Երկրագնդի բնակչության խտությունը քառակուսի կիլոմետրի վրա կազմում էր 24 մարդ։ Ենթադրենք, 2000 թվականին յուրաքանչյուր քառակուսի կիլոմետրի վրա այն կհասնի 48 մարդու։ Բայց չէ՛ որ այժմ քիչ չէ այն երկրների թիվը, որտեղ այդ նորման գերազանցված է։

Օրինակ, Ֆրանսիայում 1965 թվականին մեկ քառակուսի կիլոմետրի վրա հաշվվում էր 88 մարդ, ԳԴՀ-ում՝ 157, Իտալիայում՝ 177, Վելիկոբրիտանիայում՝ 222, Ճապոնիայում՝ 264, իսկ Նիդեռլանդիայում և Բելգիայում՝ նույնիսկ 300 մարդուց ավելի։ Այս երկրներից և ոչ մեկը իր բախտը չի փոխի աֆրիկական այնպիսի մի հանրապետության հետ, ուր մեկ քառակուսի կիլոմետրի վրա երկու մարդ էլ չկա։ Արդյոք շա՞տ ցանկացողներ կլինեն, որ հացի համար Լուսնի վրա գնան. կասկածելի է. չէ՛ որ դեռ Երկրագնդի վրա նրանց վիճակը այնքան էլ վատ չէ։ Չպետք է վախենալ բնակչության խտությունից, երբ այն զուգակցվում է աշխատանքի արտադրողականության և կենսամակարդակի բավարար բարձրացմանը։

Կապիտալիզմի երկրներում բանվորական շարժման և աշխատավարձի բարձրացման համար մղվող պայքարի հաջողությունները վերջերս հանգեցրին որոշ տեղերում ծննդաբերության նշանակալի նվազման. դա նկատվում է նաև սոցիալիզմի երկրներում։ Վերջին 52 տարում ծնընդաբերությունն Իտալիայում նվազել է 37 տոկոսով, Անգլիայում՝ 22, ԱՄՆ-ում վերջին 50 տարում՝ ընդամենը 15 տոկոսով, Ֆրանսիան մնացել է նախկին մակարդակին, իսկ ԳՖՀ-ում 1950 թ. սկսած՝ նույնիսկ աճում է։ Բայց աշխատավորների կենսամակարդակի բարձրացմամբ առաջացած ծննդաբերության նվազման ընդհանուր տենդենցն արդեն դրսևորվում է ամենուր։

Մարքսը ենթադրում էր, որ յուրաքանչյուր արտադրեղանակ բնակչության իրեն հատուկ օրենքներն ունի և, խոսելով կապիտալիզմի օրոք բանվորների բնական աճման հարցի մասին, նա հետևյալ օրենքը ձևակերպեց. «Ոչ միայն ծննդի ու մահացման դեպքերի թիվը, այլև ընտանիքների բացարձակ մեծությունը հակառակ համեմատական են աշխատավարձի բարձրությանը...»։ Այս օրենքի ճշմարտացիությունը հաստատված է կապիտալիստական երկրների երկարատև զարգացմամբ։

Մալթուսի օրենքը, ինչպես ես դա նշել եմ մամուլում, այս դեպքում կրկնակի է հերքվում։ Ո՛չ միայն այն պատճառով, որ տեխնիկայի զարգացմամբ մարդկանց գոյամիջոցները, հակառակ Մալթուսի, աճում են բնակչությունից արագ, այլև այն պատճառով որ բուն իսկ բնակչությունն այդ պայմաններում աճում է ոչ թե երկրաչափական պրոգրեսիայով, ինչպես դա Մալթուսն է պնդում, այլ կանխապես նվազումով, որի հայտարարն իր սահմաններում ձգտում է միավորի, իսկ բընակչության աճը՝ զրոյի։

Աշխատավորների աճող կենսամակարդակի պայմաններում նման օրինաչափության հիմնական պատճառը բանվորների ստրուկտուրայում և կենցաղում առաջացած ռեալ տեղաշարժերն են։ Մահացության անկմամբ աճում է նրանց ընդհանուր երկարակեցությունը, աճում է մանուկների ու ծերունիների, նվազում մայրերի բաժնեմասը, աճում է բանվորների միջին տարիքը, իսկ դրա հետ միասին նվազում է նրանց սերնդաբերությունը՝ ինչպես յուրաքանչյուրի, առավել՝ ամբողջ բնակչության յուրաքանչյուր հազարի մոտ (ներառյալ մանուկներին ու ծերունիներին)։ Տարիքային այս երևույթը տակավին բավարար չափով չեն գիտակցել նույնիսկ դեմոգրաֆները։ Սակայն, դա ամենուր նշանակալի չափով նվազեցնում է ծննդաբերությունը, իսկ այն պահից, երբ ծննդաբերությունն արդեն չի հատուցվում մահացության նվազմամբ, դանդաղում է նաև բնակչության ընդհանուր աճը։

Այնուհետև ակադեմիկոս Ստրումիլինը հանգում է հետևյալ խիստ ուշագրավ հետևության. մեր երկրագնդին սպառնացող գերբնակչությունը նույնքան անհիմն է, որքան ամբողջական ժողովուրդների մահացման հարցը։

Գերբնակչության վտանգը, որի մասին այժմ գրում են շատ գիտնականներ, իմ կարծիքով, ռեալ չէ։ Մեզ հարկավոր չէ ներխուժել ընտանեկան մտերմիկ հարաբերությունների ոլորտը, պրոպագանդել կամ արգելել որևէ դեղահատ։ Չէ՛ որ դեղահատերով չեն լուծվում հասարակական կյանքի մեծ պրոբլեմները։ Սակայն նոր մալթուսականության ուսմունքին մենք թշնամի ենք։

Եվ մեծ Լենինն իրավացի էր, երբ ասում էր, թե գիտակից բանվորները մշտապես անխնա պայքար կմղեն այդ ռեակցիոն և վախկոտ ուսմունքը ամենաառաջավոր, ամենահզոր, մեծ վերափոխումների համար ամենից ավելի պատրաստ ներկա հասարակության դասակարգի վզին փաթաթելու դեմ։

Մենք հրաժարվում ենք մալթուսականության իմաստայնության ճանաչումից, որովհետև, ընդունելով բնակչության աճման երկրաչափական հավերժական տեմպը, ծիծաղելի կլինի կիրառել մալթուսյան դեղատոմսերը։ Այդ դեղատոմսերը կիրառելի չեն, մանավանդ՝ ՍՍՀՄ-ում, ուր բարձր ծննդաբերությունը խրախուսվում է կուսակցության ու կառավարության կողմից։ Դրանք այստեղ, ծննդաբերության արհեստական մեթոդների կիրառման թույլտվության դեպքում նույնիսկ, հազիվ թե արժանանան հասարակության հավանությանը։

Ակադեմիկոս Ստրումիլինն այն համոզմունքն է հայտնում, թե հիմքեր չկան, որ մարդիկ ենթարկվեն մալթուսական վտանգավոր և հակագիտական քարոզին։ Հասարակությունը, սոցիալիզմի պայմաններում, իր զարգացման օրենքներով նոր սերնդի նորմալ աճման համար ի վիճակի է ստեղծելու բանական և նորմալ պայմաններ։



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### «ՌԵՏԻՆԵ» ԱՊԱԿԻ

Ամերիկյան ֆիրմաներից մեկը մշակել է ապակու նոր տեսակ, որ սովորական ապակու թափանցիկությունը զուգակցում է ռետինի էլաստիկության հետ։ Այն չի կարելի ջարդել ոչ դանակով, ոչ էլ նույնիսկ ալմաստով։ Եթե այդպիսի ապակուն հարվածենք մուրճով, այն չի ջարդվի, իսկ մուրճը ետ կթռչի, ինչպես ռետինից։ 6 մմ հաստություն ունեցող «ռետինե» ապակին գնդակը չի խոցում։

Նոր ապակին պատրաստում են հատուկ կաուչուկանման նյութից. այն կարելի է «ռետինե» անվանել ինչպես ֆիզիկական հատկությունների, այնպես էլ քիմիական հատկությունների տեսակետից (ԱՄՆ)։

### ԱՎՏՈՄԵՔԵՆԱՅՈՎ ԱՏԼԱՆՏՅԱՆ ՕՎԿԻԱՆՈՍԻ ՎՐԱՅՈՎ

Օսլո քաղաքում կառուցվում է օվկիանոսյան նավ, որ նախատեսված է Ատլանտյան օվկիանոսի վրայով ավտոմեքենաներ տեղափոխելու համար։ Մի ռեյսի ընթացքում նավը կարող է տեղափոխել մոտ 2500 տարբեր մարկաների ավտոմեքենա (Նորվեգիա)։

### ԹՈՒՆԵԼ ՊԻՐԵՆՅԱՆ ԼԵՌՆԵՐԻ ՏԱԿՈՎ

Վիթխարի ու դժվարանցանելի Պիրենյան լեռնային զանգվածը արտասովոր չափով դժվարացնում է երկու հարևան երկրների՝ Ֆրանսիայի ու Իսպանիայի միջև հաղորդակցությունը։ Այժմ ավարտված է Պիրենյան լեռների միջով թունելի շինարարության նախագիծը։ Թունելի երկարությունն է 3,5 կմ, լայնությունը՝ 7 մ 20 սմ, իսկ բարձրությունը՝ 4,5 մ։ Թունելը կանցնի ավելի քան երկու հազար մետր բարձրության վրայով (Ֆրանսիա)։

### ԹԱՓԱՆՑԻԿ ՏԱՐԱ

Հունգարական քիմիական արդյունաբերությունը սկսել է թողարկել 200 լիտրանոց թափանցիկ տակառներ պլաստմասսայից։ Նույնիսկ շատ ուժեղ հարվածի դեպքում օրգանական ապակին կտոր-կտոր չի լինում, ինչպես սիլիկատային ապակին, այլ միայն ծածկվում է հարվածի տեղից տարածվող ճառագայթավոր ճեղքվածքներով։

### ԸՆԴԱՄԵՆԸ 1,9 ՄԵՏՐ

Իտալական կոնստրուկտոր Ի. Բարգալին նախագծել է երկու տեղանոց մարզատար ավտոմեքենա, որի երկարությունը ընդամենը 1,9 մետր է։ Դա հաջողվել է շնորհիվ այն բանի, որ շարժիչը տեղադրվել է ուղևորների նստարանի տակ։ Ավտոմեքենայի թափքը կլոր է, որը հնարավորություն է տալիս փոքրիկ ավտոմեքենային շրջվել տեղում (Իտալիա)։



Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06061 Պատվեր 2132 Տիրաժ 9710 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ Ստորագրված է տպագրության 28/IX 1966 թ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Կուսակցության գաղափարական աշխատանքի հարցերը։ Մ., Мысль հրատ., 1966, 272 էջ։

ՍՄԿԿ ԿԿ-ին կից հասարակագիտական ակադեմիայի այս նոր ժողովածուում զետեղված հոդվածներում վերհանված է սովետական ժողովրդի աշխատանքային դաստիարակության, երիտասարդության և, հատկապես, կոմերիտմիության կոմունիստական դաստիարակության, կոլտնտեսային ու սովխոզային կուսակցական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքների, մի շարք այլ կուսակցական կազմակերպությունների փորձը, լուսաբանված են սոցիալիստական մրցումը ծավալելու, նոր մարդու ձևավորման, աշխատավորների գեղարվեստական դաստիարակության և այլ հարցեր։

ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ Վ. Հ.—Գալակտիկաներ։ Եր., Հայաստան հրատ., 1966, 73 էջ։

Ակադեմիկոս Վ. Համբարձումյանը այս մենագրության մեջ վեր է հանել գալակտիկաների առաջացման, էվոլյուցիայի, ինչպես նաև նրանց կորիզներում գտնվող նախաստղային մարմիններից սովորական աստղերի և միգամածությունների գոյացման ուղիները։

ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.—Դաշնակցությունը հակակոմունիզմի ծառայության մեջ։ Եր., Հայաստան հրատ., 1966, 144 էջ։

Գրականության և այլ նյութերի հիման վրա հեղինակը քննադատել է դաշնակցության պաշտպանած ու պրոպագանդած հակակոմունիզմի կոնցեպցիաները, որոնք տարածված են Արևմուտքում։ Հեղինակը մերկացնում է դաշնակ «տեսաբանների» զառանցանքները՝ թե կոմունիզմը, որպես հասարակական-տնտեսական ֆորմացիա, պատահական երևույթ է. բացահայտում է նրանց դիրքերը պատմագրության ու խաղաղության և այլ հարցերում, մերկացնում նրանց որպես մարքսիզմի վայ-քննադատների։

ԳՐԻԳՈՐՅԱՆ Կ. Ն.—Միքայել Նալբանդյան։ Լենհրատ., 1966, 40 էջ (ռուսերեն)։

Պետրոպավլովսկի բերդի կալանավորները սերիայի այս գրքույկում հեղինակը շարադրել է հեղափոխական-դեմոկրատ գրող, քննադատ, տնտեսագետ-փիլիսոփա Մ. Նալբանդյանի կարճատև, բայց իմաստալից կյանքը, նկարագրել նրա համախոհ գործունեությունը Բելինսկու, Չերնիշևսկու, Հերցենի, Օգարևի հետ, վեր հանել նրա դերը որպես ժողովրդի ազատագրության համար անձնազոհ պայքարողի։

ԴՈՒՆԱԵՎՍԿԻ Ալ. Մ.—Գայի հետքերով։ Ե., Հայաստան հրատ., 1966, 238 էջ։

Արխիվային նյութերի, հարազատների, ընկերների, ժամանակակիցների և զինակիցների հուշերի հիման վրա հեղինակը շարադրել է քաղաքացիական պատերազմների լեգենդար հերոս-հրամանատար, Մ. Տուխաչևսկու և Վ. Կույբիշևի մարտական զինակից Հայկ Բժշկյանի-Գայի հերոսական կյանքը, հեղափոխական և մարտական գործունեությունը, ռազմագիտական աշխատանքը Կարմիր բանակի բուհերում։

ՇՈՒԼՑ Ջ. Վ.— Իմ կյանքը հնդիկների մեջ։ Ե., Հայաստան հրատ., 1966, 390 էջ։

Հեղինակը (1859—1947 թթ.) 20 տարեկանից ապրել է ԱՄՆ-ի հնդիկ ցեղերից մեկի միջավայրում, ամուսնացել այդ ցեղի մի աղջկա հետ և 25 տարի մնացել է նրանց շրջապատում։ Այստեղ նկարագրված են այդ ցեղի կյանքը, սպիտակամորթ վաշխառուների կողմից կողոպտվելը, միջցեղային կռիվները, զբաղմունքները, սովորույթները և այլն։